Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք



# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

3
ՄԱՐՏ
1986 Թ.

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ
ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ
ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ԼՈՒՅՍ Է
ՏԵՍՆՈՒՄ
ԱՄԻՍԸ ՄԵԿ
ԱՆԳԱՄ
ՀԱՅԵՐԵՆ
ԵՎ
ՌՈՒՍԵՐԵՆ

## Բովանդակություն



ՀԱՅԱՍՏԱՆԻ
ԿՈՄԿՈՒՍԻ
ԿԵՆՏԿՈՄԻ
ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

ԵՐԵՎԱՆ

Խմբագրության հասցեն՝

375023, Երևան—23, Օրջոնիկիձեի պողոտա № 2

ՀԵՌԱԽՈՍՆԵՐ

| | |
|---|---|
| գլխավոր խմբագիր | 52—39—98 |
| գլխավոր խմբագրի տեղակալ | 52—99—06 |
| պատասխանատու քարտուղար | 52—99—22 |
| պատասխանատու քարտուղարի տեղակալ | 56—59—93 |

Բաժիններ

| | |
|---|---|
| մարքս-լենինյան տեսության պրոպագանդայի | 52—05—58 |
| կուսակցական կյանք | 52—25—43 |
| սոցիալ-տնտեսական պրոբլեմների | 52—57—56 |
| գիտության և կուլտուրայի | 52—99—34 |
| խմբագրության վարիչ | 53—36—11 |
| գրական աշխատողներ | 52—66—77 |
| | 56—59—94 |






# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ XXVII ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ

1986 թվականի փետրվարի 25-ից մարտի 6-ը Մոսկվայում, Կրեմլի Համագումարների պալատում տեղի ունեցավ Սովետական Միության կոմունիստական կուսակցության XXVII համագումարը:

Համագումարը բացեց ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Մ. Ս. Գորբաչովը, որին պատգամավորները և հյուրերը դիմավորեցին ջերմորեն:

Պատգամավորները միաձայն ընտրում են համագումարի ղեկավար մարմիններ՝ նախագահություն, քարտուղարություն, խմբագրական և մանդատային հանձնաժողովներ:

Հաստատվում է ՍՄԿԿ XXVII համագումարի հետևյալ օրակարգը.

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի հաշվետվությունը և կուսակցության խնդիրները:

ՍՄԿԿ ծրագրի նոր խմբագրության մասին:

ՍՄԿԿ կանոնադրության փոփոխությունների մասին:

Սովետական Միության կոմունիստական կուսակցության XXVII համագումարին ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի Քաղաքական զեկուցումը. զեկուցող՝ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկ. Մ. Ս. Գորբաչով:

ՍՄԿԿ Կենտրոնական վերստուգիչ հանձնաժողովի հաշվետվությունը. զեկուցող՝ կենտրոնական վերստուգիչ հանձնաժողովի նախագահ ընկ. Գ. Ֆ. Սիզով:

ՍՍՀՄ տնտեսական ու սոցիալական զարգացման 1986—1990 թվականների և մինչև 2000 թվականն ընկած հեռանկարի հիմնական ուղղությունների մասին. զեկուցող՝ ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի նախագահ ընկ. Ն. Ի. Ռիժկով:

Կուսակցության կենտրոնական մարմինների ընտրություններ:

Ընդունվում է այն առաջարկությունը, որ առաջին երեք հարցերի առթիվ առանձին զեկուցումներ չտրվեն, այլ դրանց էությունը շարադրվի կուսակցության XXVII համագումարին ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի քաղաքական զեկուցման մեջ:

Սովետական Միության կոմունիստական կուսակցության XXVII համագումարին ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի Քաղաքական զեկուցումով հանդես եկավ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Միխայիլ Սերգեևիչ Գորբաչովը:

Համագումարը լսեց նաև ՍՄԿԿ կենտրոնական վերստուգիչ հանձնաժողովի հաշվետու զեկուցումը, որով հանդես եկավ ՍՄԿԿ կենտրոնական վերստուգիչ հանձնաժողովի նախագահ Գ. Ֆ. Սիզովը:

Այնուհետև համագումարի պատգամավորները ձեռնամուխ եղան ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի՝ կուսակցության XXVII համագումարին ներկայացված Քաղաքական զեկուցման և ՍՄԿԿ կենտրոնական վերստուգիչ հանձնաժողովի հաշվետու զեկուցման քննարկմանը:

Համագումարը կազմեց ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի՝ Սովետական Միության կոմունիստական կուսակցության XXVII համագումարին ներկայացված Քաղաքական զեկուցման, ՍՄԿԿ ծրագրի նոր խմբագրության և ՍՄԿԿ կանոնադրության փոփոխությունների առթիվ բանաձևերի նախագծերի պատրաստման հանձնաժողով:

Բանաձևերի նախագծերի պատրաստման՝ համագումարի կազմած հանձնաժողովի կողմից հանդես եկան. կուսակցության XXVII համագումարին

ներկայացված ՍՄԿԿ Կենտկոմի Քաղաքական զեկուցման առթիվ՝ ընկեր Ե. Կ. Լիգաչովը, ՍՄԿԿ ծրագրի նոր խմբագրության մասին՝ ընկեր Ա. Ն. Յակովլևը, ՍՄԿԿ կանոնադրության փոփոխությունների մասին՝ ընկեր Գ. Պ. Ռազումովսկին:

Համագումարը հավանություն տվեց կուսակցության Կենտրոնական կոմիտեի քաղաքական կուրսին ու պրակտիկ գործունեությանը, Կենտրոնական կոմիտեի՝ համագումարին ներկայացված Քաղաքական զեկուցման բովանդակած դրույթներին, հետևություններին ու խնդիրներին և բոլոր կուսակցական կազմակերպություններին պարտավորեցրեց իրենց աշխատանքում առաջնորդվել դրանցով: Միաձայն բանաձև է ընդունվում Սովետական Միության կոմունիստական կուսակցության XXVII համագումարին ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի ներկայացրած Քաղաքական զեկուցման առթիվ:

Համագումարը միաձայն հաստատեց Սովետական Միության կոմունիստական կուսակցության ծրագրի նոր խմբագրությունը և Սովետական Միության կոմունիստական կուսակցության կանոնադրության տեքստը՝ նրա մեջ մտցված փոփոխություններով:

Ապա համագումարը հաստատեց ՍՄԿԿ կենտրոնական վերստուգիչ հանձնաժողովի հաշվետվությունը:

Միաձայն հաստատվեց ՍՄԿԿ կենտրոնական վերստուգիչ հանձնաժողովի նոր կանոնադրությունը:

Համագումարը կուսակցության Կենտրոնական կոմիտեին հանձնարարեց ՍՄԿԿ կենտրոնական վերստուգիչ հանձնաժողովի հետ համատեղ այդ կանոնադրության հիման վրա մշակել հանրապետական, երկրամասային, մարզային, օկրուգային, քաղաքային ու շրջանային կուսակցական կազմակերպությունների վերստուգիչ հանձնաժողովների համապատասխան կանոնադրություն:

«ՍՍՀՄ տնտեսական ու սոցիալական զարգացման 1986—1990 թվականների և մինչև 2000 թվականն ընկած ժամանակաշրջանի հիմնական ուղղությունների մասին» զեկուցումով համագումարում հանդես եկավ ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի նախագահ ընկեր Նիկոլայ Իվանովիչ Ռիժկովը:

Այնուհետև սկսվեց զեկուցման քննարկումը:

Համագումարը կազմեց հանձնաժողով ՍՍՀՄ տնտեսական և սոցիալական զարգացման 1986—1990 թվականների և մինչև 2000 թվականն ընկած ժամանակաշրջանի հիմնական ուղղությունների մասին նախագծի վերաբերյալ ուղղումների ու լրացումների քննարկման, ինչպես նաև այդ հարցի առթիվ որոշման նախագծի պատրաստման համար:

Քննարկված հարցի առթիվ որոշման նախագիծ պատրաստելու համար համագումարի կազմած հանձնաժողովի կողմից հանդես եկավ ընկեր Լ. Ն. Զայկովը:

Համագումարը միաձայն հաստատեց ՍՍՀՄ տնտեսական ու սոցիալական զարգացման 1986—1990 թվականների և մինչև 2000 թվականն ընկած ժամանակաշրջանի հիմնական ուղղությունները՝ մտցված լրացումներով ու փոփոխություններով, և որոշում է ընդունում տվյալ հարցի առթիվ:

Ի գիտություն է ընդունվում համագումարի քարտուղարության հաղորդումը ՍՄԿԿ XXVII համագումարին հասցեագրված նամակների, դիմումների, առաջարկությունների, դիտողությունների ու բողոքարկումների քննության՝ իր կատարած աշխատանքի մասին: Համագումարը ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեին հանձնարարեց ավարտել այդ աշխատանքը և ընդունեց համապատասխան որոշում:

Ապա համագումարը ձեռնամուխ եղավ օրակարգի հաջորդ կետի քննարկմանը՝ կուսակցության կենտրոնական մարմինների ընտրություններին:

Համագումարի ավարտին ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Մ. Ս. Գորբաչովը հանդես եկավ եզրափակիչ ճառով:

Մ. Ս. Գորբաչովը Սովետական Միության կոմունիստական կուսակցության XXVII համագումարը հայտարարում է փակված:

Համագումարի մասնակիցները ոգևորությամբ երգում են կուսակցական հիմնը՝ «Ինտերնացիոնալը»:

---

# ՍՄԿԿ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՔԱՂԱՔԱԿԱՆ ԶԵԿՈՒՑՈՒՄԸ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ XXVII ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻՆ

## ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Մ. Ս. ԳՈՐԲԱՉՈՎԻ զեկուցումը 1986 թվականի փետրվարի 25-ին

Ընկե՛ր պատգամավորնե՛ր:

Հարգելի հյուրե՛ր:

ՍՄԿԿ XXVII համագումարը հրավիրվել է երկրի, ամբողջությամբ վերցված ժամանակակից աշխարհի կյանքի վճռական բեկման ժամանակաշրջանում: Մենք աշխատանքն սկսում ենք կուսակցության և սովետական ժողովրդի հանդեպ մեր պատասխանատվության խոր ըմբռնման զգացումով: Մեր խնդիրն է լայնորեն, լենինաբար իմաստավորել ներկա ժամանակաշրջանը, մշակել գործողությունների իրատեսական, համակողմանիորեն կշռադատված այնպիսի ծրագիր, որը նպատակների վեհությունը և հնարավորությունների ռեալիզմը, կուսակցության պլանները օրգանապես միացներ յուրաքանչյուր մարդու հույսերի և իղձերի հետ: XXVII համագումարի որոշումները կահմանեն տարիների ու տասնամյակների մեր առաջընթացի, դեպի սովետական սոցիալիստական հասարակության որակապես նոր վիճակ կատարվող առաջընթացի թե՛ բնույթը և թե տեմպերը:

Համագումարը պետք է քննարկի և ընդունի ՍՄԿԿ ծրագրի նոր խմբագրությունը, կուսակցության կանոնադրության փոփոխությունները, ժողովրդական տնտեսության զարգացման հնգամյակի և հեռանկարի հիմնական ուղղությունները: Հազիվ թե հարկ կա ասելու, թե այդ փաստաթղթերը որքան հսկայական նշանակություն ունեն մեր կուսակցության, մեր պետության, մեր ժողովրդի համար: Դրանք պարունակում են ոչ միայն անցած ուղու գնահատականը, հասունացած խնդիրների առաջադրումը, այլև ապագային միտված հայացք: Խոսքն այն մասին է, թե Սովետական Միությունը ինչպիսին կթևակոխի XXI դար, ինչպիսիք կդառնան սոցիալիզմի նկարագիրն ու դիրքերը միջազգային ասպարեզում, ինչպիսին է մարդկության վաղվա օրը:

Կուսակցության ներկայումս գործող ծրագրի ընդունումից հետո անցած ժամանակաշրջանում սովետական հասարակությունը մեծապես առաջ է գնացել իր զարգացման ասպարեզում: Մենք ըստ էության նորից վերաշինեցինք ամբողջ երկիրը, հսկայական տեղաշարժերի հասանք էկոնոմիկայի, մշակույթի, սոցիալական բնագավառում, դաստիարակեցինք նոր հասարակություն կերտողների սերունդներ: Մարդկության համար բացեցինք դեպի տիեզերք տանող ճանապարհը: Ապահովե-

ցինք ռազմաստրատեգիական զուգակշռություն, որն էապես սահմանափակեց իմպերիալիզմի ագրեսիվ պլանները և միջուկային պատերազմ սանձազերծելու նրա հնարավորությունները: Զգալիորեն ամրապնդվեցին մեր հայրենիքի, համաշխարհային սոցիալիզմի դիրքերը միջազգային ասպարեզում:

Երկրի անցած ուղին, նրա տնտեսական, սոցիալական ու մշակութային նվաճումները մարքս-լենինյան ուսմունքի կենսականության համոզիչ հաստատումն են, սոցիալիզմի ընդերքում գտնվող, սովետական հասարակության առաջընթացի մեջ մարմնավորված հսկայական պոտենցիալի հաստատումը: Մենք իրավունք ունենք հպարտանալու այն ամենով, ինչ իրագործվել է այդ տարիներին՝ լարված աշխատանքի և պայքարի տարիներին: **(Ծափահարություններ):**

Ըստ արժանվույն գնահատելով ձեռք բերվածը, ՍՄԿԿ-ի ղեկավարությունն իր պարտքն է համարում կուսակցությանն ու ժողովրդին ազնվորեն ու շիտակ ասել քաղաքական ու պրակտիկ գործունեության մեջ մեր վրիպումների մասին, էկոնոմիկայում և սոցիալ-հոգևոր ոլորտում եղած աննպաստ միտումների մասին, այդպիսի երևույթների պատճառների մասին: Տարիներ շարունակ, և ոչ միայն օբյեկտիվ գործոնների, այլև ամենից առաջ սուբյեկտիվ կարգի պատճառների բերումով, կուսակցական ու պետական մարմինների պրակտիկ գործողությունները ետ էին մնում ժամանակի, հենց կյանքի պահանջներից: Երկրի զարգացման պրոբլեմները ավելի արագ էին կուտակվում, քան լուծվում: Իներտությունը, կառավարման ձևերի ու մեթոդների քարացածությունը, աշխատանքում դինամիզմի իջեցումը, բյուրոկրատիզմի մեծացումը՝ այս ամենը քիչ վնաս չէր հասցնում գործին: Հասարակության կյանքում սկսել էին նկատվել լճացման երևույթներ:

Իրավիճակը պահանջում էր վերափոխումներ, սակայն կենտրոնական մարմիններում, ասենք նաև տեղերում սկսել էր գերիշխել մի յուրօրինակ հոգեբանություն. գործերը բարելավել՝ ոչ մի բան չփոխելով: Բայց այդպես չի լինում, ընկերներ: Ինչպես ասում են՝ մի ակնթարթ հապաղեցիր, մեկ վերստ ետ կմնաս: Չի կարելի խույս տալ հասունացած պրոբլեմների լուծումից: Նմանօրինակ դիրքավորումը չափազանց թանկ է նստում երկրի, պետության, կուսակցության վրա: Եվ եկեք այս մասին ասենք լիաձայն:

Ամբողջ հասակով մեկ ծառացել է այն խնդիրը, թե ինչպես կարելի է ավելի արագ հաղթահարել բացասական երևույթները հասարակության սոցիալ-տնտեսական զարգացման գործում, դրան հաղորդել անհրաժեշտ դինամիզմ և արագացում, առավելագույն չափով դասեր առնել անցյալից, որպեսզի ապագայի լուծումները լինեն սպառիչ կերպով ճշգրիտ ու պատասխանատու, իսկ կոնկրետ գործողությունները՝ նպատակասլաց և արդյունավետ:

Բեկումնային իրավիճակ է ստեղծվել ոչ միայն ներքին գործերում: Այդ իրավիճակը բնորոշ է նաև **արտաքին** գործերին: Ժամանակակից համաշխարհային զարգացման մեջ կատարված փոփոխությունները այնքան խոր ու նշանակալից են, որ պահանջում են նրա բոլոր գործոնների վերաիմաստավորում, կոմպլեքսային վերլուծություն: Միջուկային դիմակայության իրադրությունը պարտավորեցնում է տարբեր սոցիալական սիստեմների, պետությունների ու ռեգիոնների փոխհարաբերությունների նոր մոտեցումներ, եղանակներ ու ձևեր:

Իմպերիալիզմի սանձազերծած սպառազինությունների մրցավազքը հանգեցրել է այն բանին, որ XX դարը համաշխարհային քաղաքականության մեջ ավարտվում է հետևյալ հարցի ներքո. մարդկությունը արդյոք կկարողանա՞ խույս տալ միջուկային վտանգից, թե՞ կգերիշխի առճակատման քաղաքականությունը, որ տանում է դեպի միջուկային կոնֆլիկտի հավանականության մեծացում: Կապիտալի աշխարհը չի հրաժարվել հեգեմոնիզմի գաղափարախոսությունից և քաղաքականությունից, նրա կառավարիչներին դեռևս հանգիստ չի թողնում սոցիալական ռևանշի հույսը, նրանք շարունակում են իրենց սփոփել ուժային գերազանցության պատրանքներով: Նստարվածի սթափ գնահատականները մեծ դժվարությամբ են թափանցում կառավարող դասակարգի մտածողության մեջ եղած նախապաշարումների և կանխակարծությունների զանգվածի միջով: Բայց պատմական պահի բարդությունն ու սրությունը ավելի ու ավելի հրատապ են դարձնում այն խնդիրը, որ միջուկային զենքը



դրվի օրենքից դուրս, լիովին ոչնչացվեն այդ զենքը և մարդկանց զանգվածային բնաջնջման մյուս միջոցները, առողջացվեն միջազգային հարաբերությունները:

Կուսակցության կողմից երկրի ներսում և համաշխարհային ասպարեզում սկզբունքորեն նոր իրավիճակի և հայրենիքի բախտի համար իր պատասխանատվության խոր գիտակցման արտահայտությունը, հասունացած վերափոխումներն իրագործելու նրա կամքի ու վճռականության դրսևորումը եղավ 1985 թվականի ապրիլյան պլենումի առաջադրած՝ **մեր հասարակության սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու հիմնադրույթը:**

Ձևակերպելով երկարաժամկետ, սկզբունքային կարգի խնդիրները, Կենտրոնական կոմիտեն հետևողականորեն առաջնորդվում է մարքսիզմ-լենինիզմով՝ հասարակական զարգացման իրոք գիտական տեսությամբ: Այդ տեսությունը արտահայտում է աշխատավոր մարդկանց արմատական շահերը, սոցիալական արդարության իդեալները: Նրա կենսական ուժը հավերժ երիտասարդ մնալու, մշտապես զարգանալու, նոր փաստերն ու երևույթները, հեղափոխական պայքարի և սոցիալական վերափոխումների փորձը ստեղծագործաբար ընդհանրացնելու մշտական ունակության մեջ է:

Այդ տեսությունը, որով մենք առաջնորդվում ենք, ամենուրեք և կյանքի բոլոր դեպքերի համար պիտանի, քարացած սխեմաների ու դեղատոմսերի հավաքածու դարձնելու ամեն մի փորձ վճռականապես հակասում է մարքսիզմ-լենինիզմի էությանը, ոգուն: «Մարքսը և Էնգելսը, 1917 թվականին գրել է Վ. Ի. Լենինը, իրավացի կերպով ծաղրում էին «ֆորմուլաներ» սերտելն ու սոսկ կրկնելը, ֆորմուլաներ, որոնք ընդունակ են լավագույն դեպքում միայն ուրվագծել այն **ընդհանուր** խնդիրները, որոնք անհրաժեշտաբար կերպարանափոխվում են պատմական պրոցեսի ամեն մի առանձին **ժամանակաշրջանի** տնտեսական և քաղաքական **կոնկրետ** իրադրությամբ»: Ահա, ընկերներ, այն խոսքերը, որոնց շուրջը մեզանից յուրաքանչյուրը պետք է մտորի, որոնցով պետք է զինվի:

Հենց այն **կոնկրետ** տնտեսական ու քաղաքական իրադրությունը, որի մեջ մենք գտնվում ենք, պատմական պրոցեսի հենց այն առանձին **ժամանակաշրջանը,** որով անցնում են սովետական հասարակությունը և ամբողջ աշխարհը, կուսակցությունից, յուրաքանչյուր կոմունիստից պահանջում են ստեղծարարություն, նորարարություն, սովորական դարձած, բայց արդեն իրենց դարն ապրած պատկերացումների շրջանակներից դուրս գալու կարողություն:

Նախահամագումարյան փաստաթղթերի քննարկման ընթացքում մեծ, անկեղծ և կոնստրուկտիվ խոսակցություն տեղի ունեցավ մեր կյանքի և կուսակցական քաղաքականության բոլոր հանգուցային պրոբլեմների շուրջը: Մենք համագումար ենք եկել ամբողջ կուսակցության, ամբողջ ժողովրդի իմաստնությամբ, փորձով հարստացած: Այժմ ավելի լավ է երևում, թե ինչ պետք է անել և ինչ կարգով, ինչ լծակներ գործի դնել, որպեսզի մեր առաջընթացը ձեռք բերի պահանջվող արագացումը:

Այժմ շատ բան, իսկ ըստ էության՝ ամեն ինչ, կախված կլինի նրանից, թե մենք որքան արդյունավետորեն կկարողանանք օգտագործել սոցիալիստական կարգերի առավելություններն ու հնարավորությունները, նրա տնտեսական հզորությունն ու սոցիալական պոտենցիալը, նորացնել հնացած հասարակական ձևերը, աշխատանքի ոճն ու մեթոդները, դրանք համապատասխանեցնել փոփոխված պայմաններին: Մենք միայն այդպես կկարողանանք բազմապատկել մեր երկրի հզորությունը, որակապես նոր մակարդակի բարձրացնել սովետական ժողովրդի նյութական ու հոգևոր կյանքը, մեծացնել համաշխարհային զարգացման վրա սոցիալիզմի՝ որպես հասարակարգի, օրինակի ստեղծարար ներգործությունը:

Մենք վստահորեն ենք նայում ապագային, որովհետև լավ ենք տեսնում մեր խնդիրները և դրանց իրականացման ուղիները: Մենք վստահորեն ենք նայում ապագային, որովհետև հենվում ենք ժողովրդի հուժկու աջակցության վրա: Մենք վստահորեն ենք նայում ապագային, որովհետև գործում ենք հօգուտ սոցիալիստական հայրենիքի, հանուն այն մեծ իդեալների, որոնց անձնվիրաբար ծառայելուն է իրեն նվիրել կոմունիստների կուսակցությունը: **(Երկարատև ծափահարություններ):**

# I.

# ԺԱՄԱՆԱԿԱԿԻՑ ԱՇԽԱՐՀԸ. ՀԻՄՆԱԿԱՆ ՄԻՏՈՒՄՆԵՐԸ ԵՎ ՀԱԿԱՍՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

Ընկերնե՛ր: Կուսակցության ծրագրի նոր խմբագրության նախագծի մեջ տրված է ժամանակակից համաշխարհային զարգացման հիմնական ուղղությունների և առանձնահատկությունների համակողմանի վերլուծությունը: Ծրագիրը նպատակ չի դնում ապագան կանխադիտել նրա կոնկրետ դրսևորումների ողջ բազմազանությամբ: Դա անիմաստ զբաղմունք կլիներ: Բայց նույնքան ճշմարիտ է նաև մի այլ բան: Միշտ, գիտականորեն հիմնավորված քաղաքականություն կարելի է վարել միայն պարզորոշ ըմբռնելով ռեալ իրականության հանգուցային միտումները: Տեղի ունեցողի դիալեկտիկայի մեջ, նրա օբյեկտիվ տրամաբանության մեջ խոր ներթափանցումը, ժամանակի շարժումն արտացոլող ճիշտ հետևություններ անելու կարողությունը ոչ հասարակ, բայց հրամայականորեն անհրաժեշտ գործ է:

Դեռ Հոկտեմբերյան հեղափոխությունից առաջ, ի նկատի ունենալով միմիայն կապիտալիստական տնտեսությունը, Վ. Ի. Լենինը նշել է, որ բոլոր փոփոխությունների միագումարը՝ նրանց բոլոր ճյուղավորություններով, 70 Մարքս անգամ չէին կարող ընդգրկել: Բայց, շարունակել է Վլադիմիր Իլյիչը, մարքսիզմի կողմից «հայտնագործված են այդ փոփոխությունների **օրենքները,** գլխավոր կողմերով և հիմնականում ցույց է տրված այդ փոփոխությունների և դրանց պատմական զարգացման **օբյեկտիվ** տրամաբանությունը...»:

Ժամանակակից աշխարհը բարդ է, բազմազան, դինամիկ, ներթափանցված է հակամարտ միտումներով, լի՝ հակասություններով: Դա ամենաբարդ այլընտրանքների, տագնապների և հույսերի աշխարհ է: Նախկինում երբեք մեր երկրային տունը քաղաքական ու ֆիզիկական այսպիսի գերբեռնվածությունների չէր ենթարկվել: Մարդը բնությունից երբեք չէր գանձել այնքան տուրք և երբեք այնքան խոցելի չէր եղել այն հզորության հանդեպ, որ հենց ինքն է ստեղծել:

Համաշխարհային զարգացումը հաստատում է մարքսիզմ-լենինիզմի այն հիմնարար հետևությունը, որ հասարակության պատմությունը ոչ թե պատահական գումարելիների միագումար է, ոչ թե անկանոն «բրոունյան շարժում», այլ օրինաչափ առաջընթաց պրոցես: Նրա հակասությունները ոչ միայն արտահայտում են հին աշխարհի, այն ամենի նկատմամբ կայացված դատավճիռը, ինչը խանգարում է առաջ ընթանալուն, այլև հանդիսանում են հասարակական առաջադիմության աղբյուրը, շարժիչ ուժը: Առաջադիմություն, որը ծավալվում է պայքարի, անխուսափելի պայքարի պայմաններում, քանի դեռ գոյություն ունեն շահագործում և շահագործողական դասակարգեր:

Մեծ Հոկտեմբերի սկսած ազատագրական հեղափոխությունները որոշում են XX դարի դեմքը: Որքան էլ նշանակալից լինեն գիտության ու տեխնիկայի նվաճումները, հասարակության կյանքի վրա գիտատեխնիկական բուռն առաջընթացի ազդեցությունը, մարդու միայն սոցիալական ու հոգևոր ազատագրումն է նրան դարձնում իրոք ազատ: Եվ ինչպիսիք էլ լինեն այդ ճանապարհի դժվարությունները՝ օբյեկտիվ ու արհեստական, հին աշխարհի կողմից հարուցվող, պատմության ընթացքը անկասելի է: **(Ծափահարություններ):**

Դարի սոցիալական տեղաշարժերը կերպարանափոխում են հետագա հասարակական զարգացման պայմանները: Գործողության մեջ են մտնում տնտեսական, քաղաքական ու գիտատեխնիկական, ներքին ու միջազգային նոր գործոններ: Աճում է պետությունների ու ժողովուրդների փոխկապվածությունը: Այս ամենը յուրաքանչյուր պետության ներկայացնում է հատկապես խիստ պահանջներ, անկախ նրանից՝ խոսքը վերաբերում է արտաքին քաղաքականությանը, տնտեսական ու սոցիալական գործունեությանը, թե հասարակության հոգևոր կերպարանքին:



Մեր ժամանակի առաջընթացը իրավամբ նույնացվում է սոցիալիզմի հետ: **Համաշխարհային սոցիալիզմը** միջազգային հզոր կազմավորում է, նա հենվում է բարձր զարգացած էկոնոմիկայի, գիտական ծանրակշիռ բազայի, ռազմաքաղաքական հուսալի պոտենցիալի վրա: Դա մարդկության ավելի քան մեկ երրորդն է, տասնյակ երկրներ ու ժողովուրդներ, որոնք ընթանում են մարդու և հասարակության ինտելեկտուալ ու բարոյական հարստությունների համակողմանի բացահայտման ուղիով: Առաջացել է սոցիալիստական արդարության սկզբունքների վրա հիմնված նոր ապրելակերպ, որտեղ չկան ո՛չ ճնշողներ, ո՛չ ճնշվողներ, ո՛չ շահագործողներ, ո՛չ շահագործվողներ, որտեղ իշխանությունը պատկանում է ժողովրդին: Նրա տարբերիչ առանձնահատկություններն են՝ կոլեկտիվիզմը և ընկերական փոխօգնությունը, ազատության գաղափարների հաղթանակը, հասարակության յուրաքանչյուր անդամի իրավունքների և պարտականությունների անխզելի միասնությունը, անձի արժանապատվությունը, իսկական հումանիզմը: Սոցիալիզմը ռեալ հնարավորություն է, որը բաց է ողջ մարդկության առջև, մի օրինակ է՝ միտված ապագային: **(Երկարատև ծափահարություններ):**

Սոցիալիզմը ծնունդ է առել և կառուցվել այնպիսի երկրներում, որոնք այն ժամանակվա իրենց տնտեսական ու հասարակական մակարդակով ամենևին էլ առաջավոր չէին, իրարից շատ էին զանազանվում կացութաձևերով, պատմական ու ազգային ավանդույթներով: Նրանցից յուրաքանչյուրը դեպի նոր ֆորմացիա է գնացել իր ուղիով, հաստատելով միևնույն բազիսի իր կոնկրետ դրսևորումներում «անվերջ վարիացիաների ու գրադացիաների» մասին Կ. Մարքսի կանխատեսումը:

Այդ ուղիները հարթ կամ հասարակ չէին: Ծայրահեղորեն դժվար է եղել բարձրացնել հետամնաց կամ քայքայված տնտեսությունը, միլիոնավոր մարդկանց սովորեցնել տարրական գրագիտություն, նրանց տալ օթևան, սնունդ, անվճար բուժօգնություն: Հասարակական խնդիրների նոր լինելն իսկ, իմպերիալիզմի կողմից ռազմական, տնտեսական, քաղաքական, հոգեբանական անընդհատ ճնշումը, պաշտպանության համար հսկայական ջանքեր թափելու անհրաժեշտությունը՝ այս ամենը չէր կարող ազդեցություն չգործել իրադարձությունների ընթացքի, դրանց բնույթի վրա, սոցիալ-տնտեսական ծրագրերի ու վերափոխումների իրագործման տեմպերի վրա: Զերծ չմնացինք նաև սխալներից քաղաքականության մեջ, զանազան կարգի սուբյեկտիվիստական շեղումներից:

Բայց այդպիսին է կյանքը. այն միշտ դրսևորվում է հակասությունների, երբեմն բավականաչափ անակնկալ հակասությունների բազմազանությամբ: Անհամեմատ կարևոր է մի այլ բան. սոցիալիզմը ցուցադրել է հասարակական պրոբլեմները սկզբունքորեն այլ, քան մինչև հիմա, այն է՝ կոլեկտիվիստական հիման վրա լուծելու հնարավորությունը, երկրներին հասցրել է զարգացման ավելի բարձր բնագծերի, աշխատավոր մարդկանց տվել արժանավայել և վստահ կյանք: **(Ծափահարություններ):**

Սոցիալիզմը մշտապես կատարելագործում է հասարակական հարաբերությունները, նպատակասլաց կերպով բազմապատկում ձեռք բերվածը, մեծացնում իր օրինակի ուժն ու համոզչությունը, ցուցադրում ամբողջ կացութաձևի ռեալ հումանիզմը: Դրանով իսկ նա ավելի ու ավելի ամուր պատնեշ է կանգնեցնում պատերազմի ու միլիտարիզմի, ռեակցիայի ու բռնության գաղափարախոսության և քաղաքականության դեմ, մարդատյացության բոլոր ձևերի դեմ, ակտիվորեն նպաստում է սոցիալական առաջընթացին: Նա վերածվել է բարոյական ու նյութական մի հզոր ուժի, ցույց տվել, թե ինչպիսի հնարավորություններ են բացվում ժամանակակից քաղաքակրթության առջև: **(Ծափահարություններ):**

Սոցիալական առաջադիմության ընթացքը սերտորեն կապված է **հակագաղութային** հեղափոխությունների, ազգային-ազատագրական շարժման, շատ պետությունների վերածնման և տասնյակ նորերի առաջացման հետ: Նվաճելով քաղաքական անկախություն, նրանք ծանր պայքար են մղում հետամնացությունը, չքավորությունը, երբեմն անհույս աղքատությունը՝ ստրկական անցյալի ամբողջ ծանր ժառանգությունը, հաղթահարելու համար: Անցյալում լինելով իմպերիալիստական քաղաքականության իրավազուրկ օբյեկտներ, նրանք դուրս են եկել պատմական ստեղծագործության ինքնուրույն ճանապարհ:

Հասարակական առաջընթացը իր արտահայտությունն է գտնում **միջազգային կոմունիստական ու բանվորական շարժման** զարգացման մեջ, արդիականության նոր զանգվածային դեմոկրատական շարժման, այդ թվում հակապատերազմական, հակամիջուկային շարժման ծավալման մեջ: Այդ առաջընթացը ակնբախ է նաև կապիտալիստական աշխարհում, ներառյալ իմպերիալիզմի մետրոպոլիայում՝ ԱՄՆ-ում, քաղաքական ուժերի շերտավորման մեջ: Այստեղ առաջադիմական միտումները ստիպված են իրենց համար ճանապարհ բացել մոնոպոլիստական տոտալիտարիզմի սիստեմի միջով, կրելով կազմակերպված ռեակցիայի, այդ թվում նրա հսկայական պրոպագանդիստական մեքենայի մշտական ճնշումը, մի մեքենա, որը մարդու վրա տեղում է թմրեցնող կեղծ ինֆորմացիայի հեղեղներ:

Մարքսը շահագործողական հասարակության մեջ առաջընթացը նմանեցրել է «հեթանոսական այն գարշելի կուռքին, որը նեկտարը ուզում էր խմել ոչ այլ կերպ, քան սպանվածների գանգերից»: «Մեր ժամանակներում,— գրել է նա,— ամեն ինչ ասես հղի է իր հակադրությունով: Մենք տեսնում ենք, որ մարդկային աշխատանքը կրճատելու և ավելի արգասավոր դարձնելու հրաշալի ուժով օժտված մեքենաները մարդկանց բերում են սով և ուժասպառություն: Հարստության նոր, մինչ այժմ անհայտ աղբյուրները ինչ-որ տարօրինակ, անհասկանալի կախարդանքով վերածվում են աղքատության աղբյուրների: Տեխնիկայի հաղթանակները ասես գնվել են բարոյական դեգրադացման գնով: Թվում է, այն բանի համեմատ, թե մարդկությունն ինչպես է իրեն ենթարկում բնությունը, մարդը դառնում է ուրիշ մարդկանց ստրուկը կամ էլ իր իսկ ստորության ստրուկը: Նույնիսկ գիտության մաքուր լույսը, ըստ երևույթին, չի կարող ճառանչել այլ կերպ, քան տգիտության մռայլ ֆոնի վրա միայն: Մեր բոլոր հայտնագործությունները և մեր ամբողջ առաջընթացը ասես հանգեցնում են նրան, որ նյութական ուժերը օժտվում են ինտելեկտուալ կյանքով, իսկ մարդկային կյանքը, զրկված լինելով իր ինտելեկտուալ կողմից, իջեցվում է հասարակ նյութական ուժի աստիճանին»:

Մարքսի կատարած վերլուծությունը զարմացնում է իր պատմական մասշտաբայնությամբ, դիպուկությամբ և խորությամբ: Քսաներորդ դարի բուրժուական իրականության վերաբերմամբ այդ վերլուծությունը դարձել է թերևս է՛լ ավելի այժմեական, քան տասնիններորդ դարում: Մի կողմից՝ գիտության ու տեխնիկայի արընթաց զարգացումը բացում է բնության ուժերին տիրապետելու, մարդկության կենսապայմանները բարելավելու չտեսնված հնարավորություններ: Իսկ մյուս կողմից՝ «լուսավորյալ» XX դարը պատմության մեջ մտել է իմպերիալիզմի ծնած այնպիսի հետևանքներով, ինչպիսիք են ամենաարյունահեղ պատերազմները, միլիտարիզմի ու ֆաշիզմի մոլեգնումը, ցեղասպանությունը, միլիոնավոր մարդկանց ընչազրկությունը: Ցգիտությունը և խավարամոլությունը կապիտալի աշխարհում գոյակցում են գիտության ու մշակույթի բարձր նվաճումներին: Հենց դա է այն հասարակությունը, որի հետ մենք ստիպված ենք հարևանություն անել, փնտրել համագործակցության և փոխըմբռնման ուղիներ: Այդպես է տնօրինել պատմությունը:

Մարդկության առաջընթացը անմիջականորեն կապված է նաև **գիտատեխնիկական հեղափոխության հետ:** Այդ հեղափոխությունը հասունանում էր աննկատելիորեն, աստիճանաբար, որպեսզի այնուհետև դարի վերջին քառորդում սկզբնավորի մարդու նյութական ու հոգևոր հնարավորությունների վիթխարի բազմապատկում: Երկու կարգի հնարավորություններ: Առկա է ոսակական թռիչքը մարդկության արտադրողական ուժերի ասպարեզում: Բայց նաև ոսակական թռիչք՝ ավերման միջոցների ասպարեզում, ռազմական գործում, որը պատմության մեջ առաջին անգամ մարդուն «օժտել է» երկրագնդի վրա ամբողջ շնչավորը ոչնչացնելու ֆիզիկական ունակությամբ:

Հասարակական-քաղաքական տարբեր սիստեմներում գիտատեխնիկական հեղափոխությունը դրսևորվում է իր տարբեր կողմերով ու հետևանքներով: 80-ական թվականների կապիտալիզմը՝ էլեկտրոնիկայի ու ինֆորմատիկայի, կոմպյուտերների ու ռոբոտների կապիտալիզմը փողոց է շպրտում նորանոր միլիոնավոր մարդկանց, այդ թվում՝ երիտասարդ և կրթված մարդկանց: Հարստությունն ու իշխանությունը է՛լ ավելի է կենտրոնանում սակավաթիվների ձեռքում: Սպառազինությունների մըր-



ցավազքի հետևանքով անասելիորեն ուռճանում է միլիտարիզմը, որը ձգտում է քայլ
առ քայլ տիրանալ իշխանության նաև քաղաքական լծակներին: Նա դառնում է XX
դարի առավել այլանդակ ու վտանգավոր հրեշը, ամենաառաջավոր գիտատեխնիկա-
կան միտքը նրա ջանքերով վերածվում է զանգվածային ոչնչացման զենքի:

Գիտատեխնիկական հեղափոխությունը զարգացող երկրների առջև առանձնակի
սրությամբ է դնում այն հարցը, թե նրանց արդյոք վիճակվա՞ծ է լիովին օգտվելու
գիտության ու տեխնիկայի նվաճումներից, դրանով իսկ ուժեր ձեռք բերելու նեոգա-
ղութատիրության և իմպերիալիստական շահագործման դեմ մղվող պայքարում, թե՞
նրանք այդպես էլ կմնան համաշխարհային զարգացման ծայրամասում: Գիտատեխ-
նիկական հեղափոխությունը առավելագույն հստակությամբ է լուսարկում այն սո-
ցիալ-տնտեսական շատ պրոբլեմների չլուծվածությունը, որոնք խանգարում են առաջ-
ընթացին աշխարհի այդ մասում:

Սոցիալիզմը անհրաժեշտ ամեն ինչ ունի, որպեսզի արդի գիտությունն ու տեխ-
նիկան ի սպաս դնի մարդկանց: Բայց սխալ կլիներ կարծել, թե գիտատեխնիկական
հեղափոխությունը պրոբլեմներ չի դնում սոցիալիստական հասարակության առջև:
Նրա զարգացումը, ինչպես ցույց է տալիս փորձը, կապված է հասարակական հա-
րաբերությունների կատարելագործման, մտածողության վերակառուցման, նոր հո-
գեբանության մշակման, դինամիզմի՝ որպես ապրելակերպի, կեցության նորմի հաստատման հետ: Գիտատեխնիկական հեղափոխությունը հրամայաբար պահանջում
է մշտապես վերանայել, նորացնել կառավարման գոյացած սխեմաները: Այլ խոս-
քով, նա ոչ միայն հեռանկարներ է բացում, այլև բարձրացնում է պահանջկոտու-
թյունը ներքին ու միջազգային կյանքի ամբողջ կազմակերպման նկատմամբ: Գիտա-
տեխնիկական առաջընթացը, բնականաբար, չի կարող փոխել հասարակական զար-
գացման օրենքները, նրա սոցիալական իմաստն ու բովանդակությունը, բայց նա
հսկայական ներգործություն է ունենում աշխարհում կատարվող բոլոր պրոցեսների,
նրա հակասությունների վրա:

Չի կարելի չտեսնել, որ սոցիալ-տնտեսական երկու սիստեմները էապես տար-
բերվում են ծագող պրոբլեմներն իմաստավորելու և դրանք լուծելու թե՛ պատրաս-
տակամությամբ, թե՛ ընդունակությամբ:

Այսպիսին է աշխարհը, որտեղ մենք ապրում ենք երրորդ հազարամյակի շեմին:
Աշխարհ՝ լի հույսերով, քանի որ նախկինում երբեք մարդիկ այսչափ համակողմա-
նիորեն զինված չեն եղել քաղաքակրթության հետագա զարգացման համար: Բայց
և վտանգներով ու հակասություններով ծանրաբեռնված աշխարհ, որն ստիպում է
խոսել պատմության գրեթե ամենատագնապալի ժամանակահատվածի մասին:

Հակասությունների առաջին խումբը, որն առավել կարևոր է մարդկության ճա-
կատագրի տեսակետից, կապված է **երկու սիստեմների պետությունների, երկու ֆոր-
մացիաների փոխհարաբերությունների հետ:** Այդ հակասությունները երկարամյա
անցյալ ունեն: Ռուսաստանում տեղի ունեցած մեծ Հոկտեմբերից, ըստ սոցիալ-դա-
սակարգային հատկանիշի՝ աշխարհի պառակտումից ի վեր սկզբունքային տարբե-
րություններ են դրսևորվել ինչպես տեղի ունեցող իրադարձությունների գնահատա-
կաններում, այնպես էլ համաշխարհային սոցիալական հեռանկարի նկատմամբ
եղած հայացքներում:

Կապիտալիզմը սոցիալիզմի ծնունդն ընդունեց որպես պատմության «սխալ»,
որը պետք է «ուղղվի»: Ուղղվի՝ ինչ գնով էլ որ լինի, ցանկացած եղանակով, չնա-
յելով իրավունքին ու բարոյականությանը. զինված ինտերվենցիայով, տնտեսական
շրջափակումով, քայքայիչ գործունեությամբ, սանկցիաներով ու «պատիժներով»,
ամեն կարգի համագործակցության մերժումով: Բայց ոչ մի բան չկարողացավ խան-
գարել նոր հասարակարգի, նրա գոյատևելու պատմական իրավունքի հաստատմանը:

Այն դժվարությունը, որով կապիտալիստական աշխարհի կառավարող դասա-
կարգերը հանգում են իրողությունների ըմբռնմանը, երկու աշխարհին բաժանող հա-
կասությունների ամբողջ խումբը ուժով լուծելու փորձերի պարբերական կրկնություն-
ները, հասկանալի է, պատահական չեն: Իմպերիալիզմին երկու սիստեմների մրցու-
թյունը ռազմական հակամարտության լեզվի փոխադրել են դրդում նաև ներքին
զսպանակները, նրա սոցիալ-տնտեսական բուն էությունը: Իմպերիալիզմն իր հասա-

րակական բնույթի բերումով մշտապես ագրեսիվ, արկածախնդրական քաղաքականություն է ծնում:

Այստեղ կարելի է ասել դրդապատճառների ամբողջ կոմպլեքսի՝ զենքի փաբրիկատերերի և ռազմաբյուրոկրատական ազդեցիկ խմբավորումների գիշատչական ախորժակի, հումքի աղբյուրների և վճառահանման շուկաների նկատմամբ մոնոպոլիաների շահադիտական շահագրգռվածության, տեղի ունեցող փոփոխությունների հանդեպ բուրժուազիայի սարսափի, վերջապես, սեփական սրվող պրոբլեմները սոցիալիզմի հաշվին լուծելու փորձերի մասին:

Վերջինս առանձնապես հատկանշական է ԱՄՆ-ի իմպերիալիզմին: Միայն կայսերապետական գաղափարախոսությամբ ու քաղաքականությամբ սոցիալիզմը, ՍՍՀՄ-ը առավելագույն աննպաստ արտաքին պայմանների մեջ դնելու ցանկությամբ էր պայմանավորված միջուկային և մյուս սպառազինությունների մրցավազքի սանձազերծումը 1945 թվականից հետո, հենց այն ժամանակ, երբ ֆաշիզմի ու միլիտարիզմի ջախջախումը, թվում էր, ռեալ հնարավորություն է ընձեռում կառուցելու պատերազմներից զերծ աշխարհ, երբ այդ նպատակներով ստեղծվեց միջազգային համագործակցության մեխանիզմ՝ Միավորված ազգերի կազմակերպությունը: Բայց իմպերիալիզմի բնույթը այս անգամ էլ իրենն արեց:

ԱՄՆ-ի մոնոպոլիստական բուրժուազիայի աջ թևը այսօր էլ միջազգային լարվածության սրումը դիտում է որպես ռազմական հատկացումների, համապարփակ հավակնությունների, ուրիշ երկրների գործերին միջամտելու, ամերիկյան աշխատավորների շահերի ու իրավունքների վրա կատարվող հարձակման արդարացում: Դատելով ամեն ինչից, քիչ դեր չի խաղում նաև լարվածությունը դաշնակիցների՝ վրա ճնշում գործադրելու համար օգտագործելու նկատառումը, որպեսզի նրանց դարձնեն առավելագույնս հնազանդ, ենթարկեն Վաշինգտոնի թելադրանքին:

Համատարած հակամարտության, ռազմական առճակատման քաղաքականությունը ապագա չունի: Դեպի անցյալ փախչելը պատասխան չէ գալիքի մարտահրավերներին, այլ ավելի շուտ հուսահատության ակտ է, բայց դրանից նմանօրինակ դիրքորոշումը պակաս վտանգավոր չի դառնում: Թե դա երբ և ինչ չափով կգիտակցեն Վաշինգտոնում՝ ցույց կտան գործերը: Մենք մեր կողմից պատրաստ ենք մեզանից կախված ամեն ինչ անել միջազգային իրադրությունը արմատապես բարելավելու համար: Դրա համար սոցիալիզմը կարիք չունի հրաժարվելու ոչ իր սկզբունքներից, ոչ էլ իր իդեալներից: Նա անփոփոխ հանդես է եկել և հանդես է գալիս հասարակական տարբեր սիստեմների պատկանող պետությունների խաղաղ գոյակցության օգտին: **(Երկարատև ծափահարություններ):**

Ի տարբերություն իմպերիալիզմի, որը փորձում է ուժով կանգնեցնել պատմության ընթացքը, վերադարձնել անցյալը, սոցիալիզմը երբեք իր ապագան սեփական կամքով չի կապել միջազգային պրոբլեմների ռազմական լուծումների հետ: Դա հաստատեց առաջին իսկ մեծ դիսկուսիան, որը մեր կուսակցությունում ծավալվեց մեծ Հոկտեմբերի հաղթանակից հետո: Նրա ընթացքում, ինչպես հայտնի է, վճռականապես մերժվեցին «ձախ կոմունիստների» և տրոցկիստների հայացքները, որոնք պաշտպանում էին «հեղափոխական պատերազմի» տեսությունը, որը, իբր, ի վիճակի էր սոցիալիզմը հասցնել այլ երկրներ: Այդ դիրքորոշումը, ինչպես ընդգծել է Վ. Ի. Լենինը դեռևս 1918 թվականին, «կատարելապես հակառակ կլիներ մարքսիզմին, որը միշտ ժխտել է հեղափոխությունների «առաջմղումը», որոնք զարգանում են հեղափոխություն ծնող դասակարգային հակասությունների սրության հասունանալուն համընթաց» (հ. 35, էջ 478): Մենք այսօր էլ հաստատապես համոզված ենք. դրսից հեղափոխությունն առաջ մղելը, առավել ևս՝ ռազմական միջոցներով, անօգուտ է և անթույլատրելի:

Կապիտալի աշխարհը ճարակած պրոբլեմներն ու ճգնաժամերը ծագում են նրա սեփական ընդերքում, հին հասարակության ներքին հակամարտ հակասությունների օրինաչափ հետևանքն են: Այս իմաստով կապիտալիզմը, զարգանալով, ժխտում է ինքն իրեն: Անզոր լինելով կարգավորելու կապիտալիզմի զարգացման վայրընթաց փուլի պրոբլեմների սրումը, իմպերիալիստական երկրների կառավարող շրջանները դիմում են այնպիսի միջոցների ու մեթոդների, որոնք ակնհայտորեն անընդունակ են փրկելու բուն պատմության կողմից դատապարտված հասարակությանը:



Այսօր գործածության մեջ է դրված սովետական կամ կոմունիստական «սպառնալիքի» առասպելը, որը կոչված է արդարացնել սպառազինությունների մրցավազքը, սեփական ագրեսիվությունը: Բայց ավելի ու ավելի պարզ է դառնում, որ ռազմական ճանապարհին անհնար է գտնել խելամիտ լուծումներ՝ ո՛չ միջազգային, ոչ էլ ներքին: Համաշխարհային զարգացման հեռանկարների նկատմամբ հակադիր մոտեցումների ընդհարումն ու պայքարը առանձնապես բարդ բնույթ են ձեռք բերել: Երբ աշխարհում հսկայական միջուկային մարտապաշարներ են կուտակված, և մասնագետները վիճում են սոսկ այն մասին, թե քանի անգամ կամ քանի տասնյակ անգամ կարելի է ոչնչացնել մարդկությունը, իսկը ժամանակն է սկսել գործնականորեն ետ քաշվել պատերազմի եզրին հավասարակշռվելուց, սարսափի հավասարակշռությունից մոտենալով դեպի երկու սիստեմների պետությունների փոխհարաբերությունների նորմալ, քաղաքակիրթ ձևերը:

Հենց խաղաղությունը պահպանելու ունակ քաղաքականության իրական բովանդակության հարցերի շուրջն էլ, դատելով ամեն ինչից, կծավալվի հիմնական պայքարը առաջիկա տարիներին: Պայքարը բարդ է, բազմապլանային, քանի որ գործ ունենք մի հասարակության հետ, որի ղեկավար շրջանները չեն ուզում սթափ գնահատել աշխարհի իրողություններն ու նրա հեռանկարները, լուրջ հետևություններ անել սեփական և ուրիշի փորձից: Այդ ամենը նրա ներքին «անընկալուն համակարգերի» մաշվածության, սոցիալական զառամության ցուցանիշն է, ինչը նվազեցնում է տիրապետող ուժերի քաղաքականության մեջ խոշոր փոփոխությունների հավանականությունը, բարձրացնում այդ քաղաքականության անխոհեմության աստիճանը:

Ահա թե ինչու ստեղծված իրադրության մեջ այնքան էլ հեշտ չէ կանխատեսել սոցիալիստական և կապիտալիստական երկրների, ՍՍՀՄ-ի և ԱՄՆ-ի հարաբերությունների ապագան: Այստեղ վճռական գործոններ կարող են լինել ուժերի հարաբերակցությունը համաշխարհային ասպարեզում, խաղաղության պոտենցիալի աճն ու ակտիվությունը, միջուկային պատերազմի սպառնալիքին արդյունավետորեն դիմակայելու նրա կարողությունը: Քիչ բան չի կախված նաև իրադրությունը գնահատելու՝ Արևմուտքի կառավարող շրջանների իրատեսության աստիճանից: Բայց վատ է, եթե քաղաքագետները կույր են լինում ոչ միայն աչքով, այլև հոգով: Միջուկային պատերազմի լիակատար անընդունելիության պայմաններում ոչ թե սիստեների առճակատումը, այլ խաղաղ գոյակցությունը պետք է դառնա միջպետական հարաբերությունների օրենքը:

Հակասությունների երկրորդ խումբը **բուն կապիտալիստական աշխարհի ներքին հակասություններն են:** Անցած ժամանակաշրջանը **կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի** խորացման բազում ապացույցներ է տվել: Ժամանակակից կապիտալիզմը, որի շահագործողական բնույթը չի փոխվել, մեծապես տարբերվում է XX դարի սկզբի և նույնիսկ կեսերի կապիտալիզմից: Գիտատեխնիկական հեղափոխության ազդեցությամբ ու նրա ֆոնի վրա է՛լ ավելի է սրվում կոնֆլիկտը վիթխարի չափով աճած արտադրողական ուժերի և հասարակական հարաբերությունների մասնավոր սեփականատիրական բնույթի միջև: Այստեղ նաև գործազրկության աճն է, սոցիալական պրոբլեմների ամբողջ կոմպլեքսի սրումը: Ամենուր թափանցող միլիտարիզմը՝ որպես էկոնոմիկան խթանելու առավել գործածական միջոց: Քաղաքական հաստատությունների, հոգևոր ոլորտի հարանուն ճգնաժամը: Հետադիմության ծանր ճնշումը բոլոր ուղղություններով՝ ներքին ու արտաքին քաղաքականության մեջ, էկոնոմիկայի և մշակույթի, մարդկային հանճարի նվաճումների օգտագործման ասպարեզում: Պահպանողականության ավանդական ձևերը տեղը զիջում են ավտորիտար միտումներին:

Հատկապես պետք է ասել կապիտալիզմի ճգնաժամի մի այնպիսի վտանգավոր դրսևորման մասին, ինչպիսին հակակոմունիզմն է և հակասովետիզմը: Դա միայն արտաքին քաղաքականությունը չէ: Իմպերիալիզմի ժամանակակից սիստեմում դա նաև ներքին քաղաքականության կարևորագույն ուղղությունն է, այն ամեն առաջավորի և առաջադիմականի վրա ճնշում գործադրելու միջոցը, որ ապրում և պայքարում է կապիտալի երկրներում, աշխարհի ոչ սոցիալիստական մասում:

Ճիշտ է, որ ընդհանուր ճգնաժամի ներկա փուլը ևս իր հետ կապիտալիզմի բացարձակ լճացում չի բերում, չի բացառում նրա էկոնոմիկայի աճի, գիտատեխնիկա-

կան նոր ուղղությունների յուրացման հնարավորությունները: Այն «թույլ է տալիս» կրնկրետ տնտեսական, ռազմական, քաղաքական, այլ դիրքերի պահպանում, իսկ ինչ-որ տեղամասերում՝ նույնիսկ սոցիալական ռևանշի, նախկինում կորցրածը վերադարձնելու հնարավորություն: Բայց կապիտալիզմը, չունենալով աշխատավոր զանգվածների շահերն արտահայտող պոզիտիվ նպատակներ ու կողմնորոշիչներ, ներկայումս բախվում է իր հակասությունների բոլոր խմբերի աննախադեպ միահյուսման, փոխադարձ ուժեղացման, սոցիալական և այլ կարգի փակուղիների այնպիսի քանակի, ինչպիսին նա չի իմացել իր զարգացման բոլոր դարերի ընթացքում:

Սրվում են նախ և առաջ **աշխատանքի և կապիտալի** հակասությունները: 60—70-ական թվականներին, տնտեսական նպաստավոր իրավիճակի պայմաններում, բանվոր դասակարգին, աշխատավորներին հաջողվեց հասնել իրենց դրության որոշ բարելավման: Բայց 70-ական թվականների կեսերից հաճախակի դարձած տնտեսական ճգնաժամերն ու արտադրության հերթական տեխնոլոգիական վերակառուցումը փոխեցին իրադրությունը, կապիտալին թույլ տվեցին անցնելու հակահարձակման, աշխատավորներին զրկելու նրանց սոցիալական նվաճումների զգալի մասից: Կենսամակարդակի մի շարք ցուցանիշներով աշխատավորները նետվեցին շատ տարիներ ետ: Ամբողջ ետպատերազմյան ժամանակաշրջանի համար ռեկորդային է գործազրկությունը: Նկատելիորեն վատթարանում է գյուղացիների և ֆերմերության վիճակը. որոշ տնտեսություններ սնանկանում են, նրանց նախկին տերերը համալրում են վարձու աշխատանքով ապրող մարդկանց շարքերը: Մյուսները ստրկական կախման մեջ են ընկնում գյուղատնտեսական խոշոր մոնոպոլիաներից ու բանկերից: Խորանում, է՛լ ավելի ապշեցուցիչ է դառնում սոցիալական շերտավորումը: Օրինակ, ԱՄՆ-ում ամենաունևոր ընտանիքների մեկ տոկոսը այնքան հարստություն ունի, որը գրեթե մեկուկես անգամ գերազանցում է ունեցվածքային բուրգի ստորին մասում գտնըվող ընտանիքների 80 տոկոսի միագումար հարստությունը:

Իմպերիալիզմի կառավարող շրջանները չեն կարող չհասկանալ, որ նման վիճակը հղի է սոցիալական պայթյուններով, քաղաքական ապակայունացմամբ: Բայց դա նրանց քաղաքականությունը ավելի կշռադատված չի դարձնում: Ընդհակառակը, վերջին տարիներս ամբողջությամբ վերցված հաղթող են դուրս գալիս տիրապետող դասակարգի առավել անհաշտ հետադեմ խմբավորումները: Այդ ժամանակաշրջանը հատկանշվել է աշխատավորների իրավունքների վրա մոնոպոլիաների ձեռնարկած առանձնապես կենտրոնացված ու կատաղի հարձակմամբ:

Օգտագործվում է կապիտալիզմի կուտակած միջոցների ամբողջ զինանոցը: Հալածանքի և տնտեսական ահաբեկման են ենթարկվում արհմիությունները: Հակաբանվորական օրենքներ են մտցվում: Հետապնդվում են ձախ, ամեն տեսակ առաջադիմական ուժերը: Նորմ է դարձել մարդկանց մտքերի վիճակի և վարքագծի մըշտական վերահսկումը, իսկ ավելի ճիշտ ասած, լրտեսումը: Աննախադեպ մասշտաբներ է ընդունել անհատապաշտության, գոյության պայքարում ուժեղի իրավունքի, բարոյազանցության, դեմոկրատական ամեն ինչի հանդեպ ատելության նպատակամղված արմատավորումը:

Թե այսուհետև ինչպես կընթանա աշխատանքի և կապիտալի արմատական հակասության զարգացումը, ինչ հետևություններ կարվեն ստեղծված իրադրությունից, ցույց կտան ապագան, իրենց իրավունքների, սոցիալական առաջադիմության համար աշխատավորների պայքարի ընթացքը: Բայց չի կարելի չասել կապիտալիստական որոշ երկրներում քաղաքականության, ամբողջ ներքին իրադրության հետագա էական աջացման լուրջ վտանգի մասին նաև միջազգային հարաբերությունների համար: Նման շրջադարձի հետևանքները դժվար կանխատեսելի են, դրանց վտանգավորությունը չի կարելի թերագնահատել:

Դարի վերջին տասնամյակները հատկանշվել են **միջիմպերիալիստական հակասությունների** նոր բռնկումներով, դրանց նոր ձևերի և ուղղությունների ի հայտ գալով: Կապիտալիզմի հակասությունների այդ խումբը չվերացրին ո՛չ դասակարգային մոտիկությունը, ո՛չ ուժերի միավորման շահագրգռվածությունը, ո՛չ ռազմական, տնտեսական կամ քաղաքական ինտեգրացումը, ո՛չ գիտատեխնիկական հեղափոխությունը: Վերջինս, անշուշտ, արագացրեց կապիտալիստական արտադրության ինտերնացիոնալացման պրոցեսը, ուժեղացրեց ինչպես կապիտալիզմի երկրների մակարդակների համահարթումը, այնպես էլ զարգացման թռիչքաձևությունը: Գիտատեխնիկական առաջընթացի հողի վրա սրված մրցակցությունը է՛լ ավելի անխնա է հարվածում ետ մնացողներին: Կապիտալիստական վերարտադրության պայմանների զգալի բարդացումը, ճգնաժամային պրոցեսների բազմազանությունը, միջազգային մրցակցության սրվելը առանձնակի լարվածություն ու համառություն են հաղորդել իմպերիալիստական մրցակցությանը: Համաշխարհային շուկայում առևտրատնտեսական պայքարը մղվում է «հայրենական» պետական մոնոպոլիստական կապիտալիզմների հզորությանը է՛լ ավելի ուժգնորեն ապավինելու, բուրժուական պետության առավել ագրեսիվ և շահամոլ դերի պայմաններում:

Արագ թափ առավ **տարազգային մոնոպոլիստական կապիտալը:** Այն փոխարինում և մոնոպոլացնում է արտադրության ամբողջ ճյուղեր կամ ոլորտներ, ինչպես առանձին երկրների, այնպես էլ ամբողջությամբ վերցված համաշխարհային տնտեսության մասշտաբով: 80-ական թվականների սկզբին տարազգային կորպորացիաներին բաժին էր ընկնում կապիտալիստական աշխարհի արդյունաբերական արտադրության ավելի քան մեկ երրորդը, արտաքին առևտրի կեսից ավելին, նոր տեխնիկայի ու տեխնոլոգիայի պատենտների մոտ 80 տոկոսը:

Տարազգային կորպորացիաների միջուկը կազմում են ամերիկյան կորպորացիաները: Նրանց ստեղծած արտասահմանյան ձեռնարկությունների համալիրը օգտագործում է բանվորների ու ծառայողների մի լրացուցիչ բանակ, որն իր թվով հավասար է բուն ԱՄՆ-ի վերամշակող արդյունաբերության մեջ զբաղվածների կեսին: Այդ համալիրը ներկայումս ապահովում է տարեկան մոտ 1,5 տրիլիոն դոլար ընդհանուր արժողությամբ ապրանքների արտադրությունն ու սպասարկումները, ինչը համապատասխանում է ԱՄՆ-ի համախառն արտադրանքի գրեթե 40 տոկոսին:

ԱՄՆ-ի «երկրորդ էկոնոմիկայի» չափերը կրկնակի-եռակի գերազանցում են արևմտաեվրոպական այնպիսի առաջատար տերությունների էկոնոմիկան, ինչպիսիք են ԳՖՀ-ն, Ֆրանսիան, Անգլիան, զիջելով միայն Ճապոնիային: Ներկայումս ԱՄՆ-ի տարազգային խոշորագույն մոնոպոլիաները մի-մի կայսրություն են, որոնց տնտեսական գործունեության մասշտաբները կարելի է համեմատել ամբողջ պետությունների համախառն ազգային արտադրանքի հետ:

Առաջացել և արագորեն ձգվում է հակասությունների մի նոր հանգույց՝ **տարազգային կորպորացիաների և հասարակության քաղաքական կազմակերպության ազգային-պետական ձևի միջև:** Տարազգային կորպորացիաները խարխլում են ինչպես զարգացող, այնպես էլ զարգացած կապիտալիստական երկրների սուվերենությունը: Նրանք ակտիվորեն օգտագործում են պետական-մոնոպոլիստական կարգավորումը, երբ դա իրենց ձեռնտու է: Եվ անողոք կերպով կոնֆլիկտի մեջ են մտնում նրա հետ, եթե բուրժուական կառավարությունների գործողություններում անգամ աննշան սպառնալիք են տեսնում իրենց շահույթների դեմ: Բայց, ընդսմին, ամերիկյան տարազգային գերմոնոպոլիաները, որպես կանոն, ակտիվորեն են կատարում պետական հեգեմոնիզմի, այդ երկրի կառավարող ուժերի կայսերապետական նկրտումները իրագործողների դերը:

Ակնհայտ և թաքնված հակասություններով լի են **ժամանակակից իմպերիալիզմի երեք հիմնական կենտրոնների՝** ԱՄՆ-ի, Արևմտյան Եվրոպայի և Ճապոնիայի **փոխհարաբերությունները:** Մերձավորագույն մրցակիցների նկատմամբ, տնտեսական, ֆինանսական, տեխնոլոգիական գերազանցությունը, որ ԱՄՆ-ը ուներ ընդհուպ մինչև 60-ական թվականների վերջը, լուրջ փորձության ենթարկվեց: Արևմտյան Եվրոպային և Ճապոնիային հաջողվեց ինչ-որ բանում նեղել ամերիկյան խնամակալին: Նրանք Միացյալ Նահանգներին մարտահրավեր են նետում ամերիկյան գերիշխանության նաև այնպիսի ավանդական ոլորտում, ինչպիսին նորագույն տեխնիկան է:

Վաշինգտոնը դաշնակիցներին մշտապես կոչ է անում վառոդը չվատնել երկպառակությունների վրա: Բայց ժամանակակից իմպերիալիզմի երեք կենտրոնները ինչպե՞ս հավաքել մի տանիքի տակ, եթե հենց իրենք՝ ամերիկացիները, ձեռնածություն անելով դոլարով ու տոկոսադրույքներով, դեմ չեն իրենց էկոնոմիկան սնելու Արևմտյան Եվրոպայի և Ճապոնիայի հաշվին: Իսկ իմպերիալիզմի երեք կենտրոն-

ների դիրքորոշումների ինչ-որ չափով համաձայնեցումը ամենից հաճախ ամերիկյան ճնշման կամ բացահայտ թելադրանքի հետևանք է լինում, հետապնդում նախ և առաջ հենց իր՝ ԱՄՆ-ի շահերն ու նպատակները: Դա իր հերթին հանգեցնում է ոչ թե հակասությունների հաղթահարման, այլ սրման:

Կարծես թե ավելի ու ավելի շատ են սկսում խորհել այդպիսի պատճառականհետևանքային կապի շուրջ: Առաջին անգամ արևմտաեվրոպական մի շարք երկրների կառավարություններում, սոցիալ-դեմոկրատական և լիբերալ կուսակցություններում, լայն հասարակայնության շրջանում բարձրաձայն բանավիճում են. իսկ ամերիկյան ներկայիս քաղաքականությունը արդյոք համընկնո՞ւմ է սեփական անվտանգության մասին Արևմտյան Եվրոպայի պատկերացումների հետ, ԱՄՆ-ը արդյոք շատ հեռու չի՞ գնում «առաջատարի» իր հավակնություններով: Միացյալ Նահանգների պարտնյորները կարող էին համոզվել, այն էլ ոչ մեկ անգամ, որ ուրիշի ակնոցը չի փոխարինի սեփական աչքերին:

Կասկած չկա, որ կենտրոնախույս և կենտրոնաձիգ միտումների հակամարտությունը, որպես ուժերի հարաբերակցության փոփոխությունների հետևանք, իմպերիալիզմի սիստեմում կշարունակվի նաև առաջիկայում: Դժվար է սպասել, թե արդի աշխարհի ռեալ պայմաններում երեք «ուժի կենտրոնների» տնտեսական, ռազմաքաղաքական և մյուս ընդհանուր շահերի ստեղծված կոմպլեքսը կարող է խախտվել: Բայց այդ կոմպլեքսի սահմաններում Վաշինգտոնը չի կարող ականջալել մրցակից դաշնակիցների անտրտունջ հնազանդություն ամերիկյան թելադրանքին, առավել ևս ի վնաս իրենց սեփական շահերի:

Ներկա ժամանակաշրջանի միջիմպերիալիստական հակասությունների յուրահատկությունը նաև այն է, որ առաջիկա տասնամյակներին կարող է գոյանալ նրանց մի այլ փոխդասավորություն, իրենց զգալ կտան կապիտալիստական նոր «ուժի կենտրոնները»: Դա, անշուշտ, կհանգեցնի հակասությունների զանգվածի հետագա մեծացման, նրանց է՛լ ավելի սերտ միահյուսման ու սրման:

**Հակասությունների նոր, բարդ ու շարժունակ կոմպլեքս է ձևավորվել իմպերիալիզմի և զարգացող երկրների ու ժողովուրդների միջև:** Նախկին գաղութների և կիսագաղութների ազատագրվելը քաղաքական և գաղափարական ուժեղ հարված էր կապիտալիստական սիստեմին: Այդ սիստեմը այն տեսքով, ինչպես որ նա գոյացել էր տասնիններորդ դարում և գրավել քսաներորդ դարի կեսը, դադարեց գոյություն ունենալուց: Մարդկության մեծամասնությունը կազմող ժողովուրդների կյանքում սոցիալ-տնտեսական վերափոխումների դանդաղ, դժվարին, բայց անկասելի պրոցես է տեղի ունենում, պրոցես, որը սկզբունքային քիչ փոփոխություններ չբերեց, բայց և քիչ դժվարությունների էլ չբախվեց:

Քաղաքական խուսավարության, խոստումների ու կաշառքների, ռազմական սպառնալիքների և ահաբեկումների, իսկ հաճախ էլ ազատագրված երկրների ներքին գործերին ուղղակի միջամտելու ճանապարհով կապիտալիզմին շատ բանով հաջողվեց փրկել տնտեսական կախվածության նախկինում ստեղծված հարաբերությունները: Այդ հիմքի վրա իմպերիալիզմը կարողացավ ստեղծել և կարգավորել նեոգաղութատիրական շահագործման ամենանրբացված սիստեմը, իր հետ ավելի սերտորեն շաղկապել ազատագրված պետությունների զգալի մասին:

Դրա հետևանքները ողբերգական են: Զարգացող երկրները, որտեղ ավելի քան երկու միլիարդ մարդ է ապրում, փաստորեն դարձել են աղքատության համատարած ռեգիոն: 80-ական թվականների սկզբներին ամբողջությամբ վերցված ազատագրված երկրներում բնակչության մեկ շնչի հաշվով եկամուտների մակարդակը 11 անգամ ցածր էր, քան զարգացած կապիտալիստական երկրներում: Վերջին երեք տասնամյակների ընթացքում այդ խզումը ոչ թե կրճատվում է, այլ աճում: Եվ բանը միայն համեմատական աղքատությունը չէ: Խոսքը անգրագիտության ու խավարի, խրոնիկական թերսնման ու սովի, մանկական ահավոր մահացության, հարյուր միլիոնավոր մարդկանց վնասող համաճարակների մասին է:

Նման վիճակը քաղաքակիրթ մարդկության խայտառակությունն է: Դրա մեղավորը իմպերիալիզմն է: Ոչ միայն պատմության՝ ամբողջ մայրցամաքներում գաղութային ավարառության, ժառանգություն մնացած անասելի հետամնացության



տեսակետից, այլև հավասարապես այսօրվա գործելակերպի տեսակետից: Միայն վերջին տասնամյակներին զարգացող երկրներից ԱՄՆ-ի կորպորացիաների կորզած շահույթները քառակի գերազանցել են դրանց ներդրումները: Իսկ Լատինական Ամերիկայի և Կարիբյան ավազանի ռեգիոնում ԱՄՆ-ի մոնոպոլիաների շահույթները այդ նույն ժամանակամիջոցում ներդրված գումարները գերազանցել են ավելի քան ութ անգամ:

Կարելի է առանց չափազանցության պնդել, որ իմպերիալիզմի սիստեմը շարունակում է գոյատևել զգալի չափով զարգացող երկրներին կողոպտելու, նրանց ամենաանխնա շահագործելու հաշվին: Դրա ձևերն ու մեթոդները փոխվում են, բայց էությունը մնում է նույնը: Օրինակ, ԱՄՆ-ի ազգային եկամտի մի բավականին զգալի մասը գոյանում է այդ աղբյուրների հաշվին: Զարգացող երկրները շահագործվում են իմպերիալիստական բոլոր պետությունների կողմից, բայց ԱՄՆ-ի իմպերիալիզմը, անտարակույս, դա անում է առավելագույն անամոթությամբ: Ոչ համարժեք փոխանակումը, անիրավահավասար առևտուրը, մեքենայություններն ու զեղչադրույքների հետ կապված կամայականությունը, տարազգային կորպորացիաների պոմպը գործում են միևնույն ուղղությամբ: Դրանք է՛լ ավելի են խորացնում ոմանց չքավորությունն ու աղքատությունը, մեծացնում մյուսների հարստությունը, ուժեղացնում բևեռացումը համաշխարհային կապիտալիստական տնտեսության մեջ:

Զարգացող երկրների աղետալի դրությունը համաշխարհային խոշորագույն պրոբլեմ է: Ասիայի, Աֆրիկայի, Լատինական Ամերիկայի շատ կոնֆլիկտների բուն ակունքները հենց դրա մեջ են և ոչ թե որևէ այլ բանում: Այդպիսին է ճշմարտությունը, ինչքան էլ որ իմպերիալիստական տերությունների կառավարող շրջանները հնարամտություն գործադրեն «Մոսկվայի ձեռքի» վերաբերյալ՝ արդարացնելով իրենց նեոգաղութատիրական քաղաքականությունը, համապարփակ հավակնությունները:

Վերցնենք պարտքի պրոբլեմը: Ամեն տարի զարգացող երկրներից արտահանվող շահույթների ծավալի հետ զուգակցվելով, կուտակված պարտքը նշանակում է մի բան՝ նրանց զարգացման հեռանկարների նեղացում, առանց այդ էլ ծանրագույն սոցիալական, տնտեսական և այլ պրոբլեմների հետագա սրման անխուսափելիություն:

Գոյություն ունեցող պայմաններում այդ երկրները, իհարկե, չեն կարող վերադարձնել պարտքերը: Նման իրավիճակը, եթե արդարացի լուծում չգտնվի, սոցիալ-տնտեսական և քաղաքական ամենալուրջ հետևանքներով է հղի միջազգային հարաբերությունների համար: Չի կարելի ասել, թե իմպերիալիստական կառավարող շրջանները չեն տեսնում այստեղ թաքնված վտանգը: Բայց նրանց բոլոր հոգսերը հանգում են մի բանի՝ իրենց հարստացման ներկայիս սիստեմը ինչպե՞ս փրկել զարգացող երկրների ժողովուրդների շահագործման և գերշահագործման հաշվին:

Անտարակույս է նաև մի այլ բան: Այդ երկրների՝ մեկ տրիլիոնի հասնող պարտքի և վերջին տասնամյակում ԱՄՆ-ի ռազմական ծախսերի ավելի քան մեկ տրիլիոն աճի միջև, անշուշտ, պատճառական կապ կա: Զարգացող պետություններից ամեն տարի կորզվող ավելի քան 200 միլիարդ դոլարը և ԱՄՆ-ի վերջին տարիների ռազմական բյուջեի փաստորեն նույնքան ծավալը ևս պատահական զուգադիպություն չեն: Ուստի միլիտարիզմը անմիջականորեն շահագրգռված է նեոգաղութատիրական գերշահագործման սիստեմի պահպանմամբ ու խստացմամբ:

Ակնհայտ է նաև այն, որ կապիտալիզմի հակասությունների սրման, նրա տիրապետության ոլորտի նեղացման պայմաններում նեոգաղութատիրությունը դառնում է այն միջոցների ավելի ու ավելի կարևոր աղբյուրը, որոնք մոնոպոլիստական կապիտալի համար բուրժուական առաջատար պետություններում սոցիալական խուսավարման, սոցիալական լարվածության մեղմացման, աշխատավորների որոշ խավերին կաշառելու հնարավորություն են ապահովում: Դա, հիրավի, եզակի աղբյուր է. զարգացած կապիտալիստական երկրներում աշխատանքի մեկ ժամվա վարձը գերազանցում է, երբեմն՝ մի քանի անգամ, Ասիայի, Աֆրիկայի, Լատինական Ամերիկայի պետությունների բանվորների օրվա վաստակը:

Այդ ամենը չի կարող անվերջ շարունակվել: Հասկանալի է, չի կարելի հրաշքների վրա հույս դնել. իրադրությունը ինքնըստինքյան չի շտկվի: Ռազմական ուժը, որին







խարհային հանրության փոխկախվածության ուժեղացող միտումի զուգակցումն է արդի զարգացման ռեալ դիալեկտիկան: Հենց այդպես՝ հակադրությունների պայքարով, դժվարությամբ, որոշ չափով ասես շոշափելով է ձևավորվում հակասական, բայց **փոխադարձաբար կախյալ, շատ առումներով ամբողջական աշխարհը:**

Կոմունիստները միշտ էլ սոցիալական առաջընթացի ուղիները պատկերացրել են դրանց ամբողջ նեղքին բարդությամբ ու հակասականությամբ հանդերձ: Բայց (և դրանում է կոմունիստական աշխարհայացքի գլխավոր տարբերությունը) այդ պրոցեսների կենտրոնում անփոփոխ կանգնած են մարդը, նրա շահերն ու հոգսերը: Մարդկային կյանքը, նրա համակողմանի բացահայտման հնարավորությունները, նշում էր Վ. Ի. Լենինը, ամենամեծ արժեքն են, հասարակական զարգացման շահերը բարձր են ամեն ինչից: ՍՄԿԿ-ն դրան է կողմնորոշված իր պրակտիկ գործունեությամբ: **(Երկարատև ծափահարություններ):**

Մենք ելնում ենք այն բանից, որ ժամանակակից պայմաններում պայքարի գլխավոր ուղղությունը արժանավայել, հիրավի մարդկային նյութական ու հոգևոր կենսապայմանների ստեղծումն է բոլոր ժողովուրդների համար, մեր մոլորակի բնակելիության ապահովումը, հոգատար վերաբերմունքը նրա հարստությունների նկատմամբ: Եվ առաջին հերթին նրա գլխավոր հարստության՝ հենց մարդու, նրա հնարավորությունների նկատմամբ: Ահա այստեղ էլ հենց մենք առաջարկում ենք մրցել կապիտալիզմի սիստեմի հետ: Մրցել կայուն խաղաղության պայմաններում: **(Ծափահարություններ):**

# II.

## ԵՐԿՐԻ ՍՈՑԻԱԼ-ՏՆՏԵՍԱԿԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ԱՐԱԳԱՑՈՒՄԸ՝ ՍՏՐԱՏԵԳԻԱԿԱՆ ԿՈՒՐՍ

Ընկերնե՛ր: Ապրիլյան պլենումում առաջ քաշելով երկրի սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու ստրատեգիան, ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն դրանով իսկ պատմական նշանակություն ունեցող որոշում ընդունեց: Այն արժանացավ կուսակցության, ամբողջ ժողովրդի լայն պաշտպանությանը և դրվում է համագումարի քննարկմանը:

Մենք ի՞նչ ենք հասկանում արագացում ասելով: Առաջին հերթին տնտեսական աճի տեմպերի բարձրացում: Բայց ոչ միայն դա: Նրա էությունը աճի նոր որակն է. արտադրության ըստ ամենայնի ինտենսիվացումը՝ գիտատեխնիկական առաջընթացի, էկոնոմիկայի կառուցվածքային վերափոխման, կառավարման, աշխատանքի կազմակերպման ու խթանման արդյունավետ ձևերի հիման վրա:

Արագացման կուրսը չի հանգեցվում վերափոխումների տնտեսական բնագավառում: Այն նախատեսում է սոցիալական ակտիվ քաղաքականության իրականացում, սոցիալիստական արդարության սկզբունքի հետևողական հաստատում: Արագացման ստրատեգիան ենթադրում է հասարակական հարաբերությունների կատարելագործում, քաղաքական և գաղափարախոսական ինստիտուտների աշխատանքի ձևերի ու մեթոդների նորացում, սոցիալիստական դեմոկրատիայի խորացում, իներցիայի, լճացման ու պահպանողականության, այն ամենի վճռական հաղթահարում, ինչը կասեցնում է հասարակական առաջընթացը:

Գլխավորը, որը պետք է ապահովի մեր հաջողությունը, դա մասսաների կենդանի ստեղծագործությունն է, սոցիալիստական կարգերի հսկայական հնարավորությունների և առավելությունների մաքսիմալ օգտագործումը:

Մի խոսքով, ընկերներ, երկրի սոցիալ-տնտեսական զարգացման արագացումը մեր բոլոր՝ մոտակա ու հեռանկարային, տնտեսական ու սոցիալական, քաղաքական



ու գաղափարախոսական, ներքին և արտաքին պրոբլեմների բանալին է: Միայն այդ ճանապարհով կարող է և պետք է ձեռք բերվի սովետական հասարակության որակական նոր վիճակը:

## ա) ՍՈՑԻԱԼ-ՏՆՏԵՍԱԿԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ԱՐԴՅՈՒՆՔՆԵՐՆ ՈՒ ԴՐԱ ԱՐԱԳԱՑՄԱՆ ԱՆՀՐԱԺԵՇՏՈՒԹՅՈՒՆԸ

Ընկերնե՛ր: Մեր համագումարում կուսակցության ծրագրային խնդիրների առաջադրումն ու քննարկումը թելադրում են երկրի զարգացման արդյունքների գնահատման նկատմամբ մասշտաբային մոտեցման անհրաժեշտությունը: ՍՄԿԿ-ի երրորդ ծրագրի ընդունումից հետո անցած քառորդ դարում Սովետական Միությունը տպավորիչ հաջողությունների է հասել: Յոթնապատիկ ավելացել են ժողովրդական տնտեսության հիմնական արտադրական ֆոնդերը: Կառուցվել են հազարավոր ձեռնարկություններ, ստեղծվել նոր ճյուղեր: Ազգային եկամուտը աճել է գրեթե 4 անգամ, արդյունաբերական արտադրությունը՝ 5 անգամ, գյուղատնտեսականը՝ 1,7 անգամ:

Եթե նախքան պատերազմը և ետպատերազմյան առաջին տարիներին ԱՄՆ-ի էկոնոմիկայի մակարդակը դժվար հասանելի էր թվում, ապա արդեն 70-ական թվականներին գիտատեխնիկական ու տնտեսական պոտենցիալով մենք էապես մոտեցանք նրան, իսկ որոշ կարևորագույն արտադրատեսակների արտադրությամբ՝ գերազանցեցինք:

Այդ նվաճումները ժողովրդի հսկայական ջանքերի արգասիքն են: Դրանք հնարավորություն տվեցին զգալիորեն բարձրացնելու սովետական մարդկանց բարեկեցությունը: Քառորդ դարում բնակչության մեկ շնչի հաշվով ռեալ եկամուտներն ավելացան 2,6 անգամ, սպառման հանրային ֆոնդերը՝ ավելի քան 5 անգամ: Կառուցվեց 54 միլիոն բնակարան, որը հնարավորություն ընձեռեց բարելավելու ընտանիքների մեծամասնության բնակարանային պայմանները: Իրականացվեց անցումը ընդհանուր միջնակարգ կրթության: Քառակի աճեց բուհ ավարտած անձանց թիվը: Հանրահայտ են գիտության, բժշկության, մշակույթի հաջողությունները: Նվաճումների համայնապատկերը լիակատար չի լինի, եթե չասենք սոցիալական, ազգամիջյան հարաբերությունների բնագավառում կատարված խոր տեղաշարժերի, դեմոկրատիայի հետագա զարգացման մասին:

Դրա հետ մեկտեղ, 70-ական թվականներին ժողովրդական տնտեսության մեջ սկսեցին մեծանալ դժվարությունները, նկատելիորեն նվազեցին տնտեսական աճի տեմպերը: Դրա հետևանքով չլուծված մնացին ՍՄԿԿ-ի ծրագրով առաջադրված էկոնոմիկայի զարգացման խնդիրները, և նույնիսկ իններորդ ու տասներորդ հնգամյակների ավելի ցածր առաջադրանքները: Ոչ լիովին հաջողվեց իրականացնել նաև այդ տարիների համար նախատեսված սոցիալական ծրագիրը: Գիտության ու կրթության, առողջապահության և բնակչության կուլտուր-կենցաղային սպասարկման նյութական բազան ետ մնաց:

Իհարկե, գործերի վիճակի վրա անդրադառնում էին նաև մեզանից անկախ որոշ գործոններ: Բայց դրանք չէին վճռականը: Գլխավորն այն է, որ մենք ժամանակին քաղաքական գնահատական չտվեցինք տնտեսական իրավիճակի փոփոխմանը, չգիտակցեցինք էկոնոմիկան զարգացման ինտենսիվ մեթոդների, ժողովրդական տնտեսության մեջ գիտատեխնիկական առաջընթացի նվաճումների ակտիվ օգտագործման փոխադրելու ամբողջ սրությունն ու անհետաձգելիությունը: Այդ առթիվ կոչերն ու խոսակցությունները քիչ չէին, բայց գործերը փաստորեն տեղից չէին շարժվում:

Էկոնոմիկան իներցիայով շարունակում էր զարգանալ զգալի չափով էքստենսիվ հիման վրա, կողմնորոշվում էր դեպի արտադրության մեջ աշխատանքային և նյու-

թական լրացուցիչ ռեսուրսների ներգրավում: Որպես հետևանք, լրջորեն նվազեցին աշխատանքի արտադրողականության աճի տեմպերը և արդյունավետության մի քանի այլ ցուցանիշներ: Նոր շինարարության հաշվին գործը շտկելու փորձերը սրեցին հաշվեկշռվածության պրոբլեմը: Հսկայական ռեսուրսներ ունեցող ժողովրդական տնտեսությանն առջև ծառացավ դրանց պակասը: Խզում գոյացավ հասարակական պահանջմունքների և արտադրության ձեռք բերված մակարդակի միջև, վճարունակ պահանջարկի և դրա նյութական հագեցման միջև:

Ու թեև վերջին ժամանակներս ջանքեր էին գործադրվում, բայց վիճակը լրիվ շտկել չհաջողվեց: Տասնմեկերորդ հնգամյակում արդյունաբերության և գյուղատնտեսության արտադրանքի տեսակների մեծ մասի արտադրությունը չհասավ ՍՄԿԿ XXVI համագումարի նախատեսած բնագծերին: Լուրջ հապաղում թույլ տրվեց մեքենաշինության, նավթի ու ածխի արդյունաբերության, էլեկտրատեխնիկայի, սև մետալուրգիայի և քիմիայի, կապիտալ շինարարության ասպարեզում: Չապահովվեցին արդյունավետության աճի, բնակչության կենսամակարդակի բարձրացման հիմնական ցուցանիշների առաջադրանքները:

Այս ամենից, ընկերներ, մենք պետք է ամենալուրջ դասեր քաղենք:

Դրանցից **առաջինը** կարելի է անվանել ճշմարտության դաս: Անցյալի սթափ վերլուծությունը հարթում է ապագայի ուղին, իսկ սուր անկյունները երկչոտ կերպով շրջանցող թերատ ճշմարտությունը արգելակում է ռեալ քաղաքականության մշակումը, խանգարում մեր առաջընթացին: «Մեր ուժը,— ասել է Վ. Ի. Լենինը,— ճշմարտությունն ասելն է»: **(Երկարատև ծափահարություններ):** Հենց դրա համար էլ կուսակցության ծրագրի նոր խմբագրության մեջ Կենտրոնական կոմիտեն անհրաժեշտ համարեց մեկ անգամ ևս ասել 70-ական թվականներին և 80-ական թվականների սկզբներին դրսևորված բացասական պրոցեսների մասին: Ուստի դրանց մասին մենք այսօր խոսում ենք նաև համագումարում:

**Մյուս դասը** վերաբերում է պրակտիկ գործողությունների մեջ նպատակամետությանը և վճռականությանը: Այնպիսի հսկայական տնտեսությունը, ինչպիսին մերն է, ինտենսիվ ուղու փոխադրելը հասարակ գործ չէ, պահանջում է ոչ քիչ ջանքեր, ժամանակ և մեծագույն պատասխանատվություն: Բայց սկսելով վերափոխումները, չի կարելի սահմանափակվել կիսատ-պռատ միջոցառումներով: Հարկավոր է գործել հետևողականորեն ու եռանդագին, կանգ չառնելով ամենահամարձակ քայլերի առջև:

**Եվս մեկ դաս,** կարելի է ասել, գլխավոր դասը: Ամեն մի գործի հաջողությունը վճռական չափով որոշվում է այն բանով, թե դրան որքան ակտիվորեն ու գիտակցաբար են մասնակցում մասսաները: Ընտրված ուղու ճշմարտության մեջ աշխատավորության լայն խավերին համոզելը, նրանց **բարոյապես** և նյութապես շահագրգռելը, կադրերի հոգեբանությունը վերակառուցելը մեր աճի արագացման կարևորագույն պայմաններն են: Առաջընթացն այնքան արագ կլինի, որքան բարձր լինեն կարգապահությունը և կազմակերպվածությունը, հանձնարարված աշխատանքի համար, դրա արդյունքների համար յուրաքանչյուրի պատասխանատվությունը:

**Այսօր կուսակցության, ամբողջ ժողովրդի առաջնահերթ խնդիրն է՝ վճռականորեն հաղթահարել անբարենպաստ միտումները էկոնոմիկայի զարգացման մեջ, նրան անհրաժեշտ դինամիկություն հաղորդել, ասպարեզ բացել մասսաների նախաձեռնության ու ստեղծագործության, հիրավի հեղափոխական վերափոխումների համար:**

Այլ ճանապարհ չկա: Առանց էկոնոմիկայի արագացված աճի սոցիալական ծրագրերը կմնան բարի ցանկություններ, իսկ դրանք, ընկերներ, անհետաձգելի բնույթի ծրագրեր են: Սովետական մարդիկ պետք է կարճ ժամկետներում զգան պարենային պրոբլեմի արմատական լուծման, բարձրորակ ապրանքների և ծառայությունների նկատմամբ եղած պահանջմունքների բավարարման, բժշկական սպասարկման, բնակկենցաղային պայմանների, շրջակա միջավայրի պահպանության բարելավման նպատակով գործադրվող ընդհանուր ջանքերի արդյունքները:

Սոցիալ-տնտեսական զարգացման արագացումը թույլ կտա ծանրակշիռ ավանդ ներդնել համաշխարհային սոցիալիզմի ամրապնդման մեջ, ավելի բարձր աստիճանի կհասցնի համագործակցությունը եղբայրական երկրների հետ: Այդ արագացումը զգալիորեն կընդլայնի զարգացող երկրների ժողովուրդների, կապիտալիստական աշխարհի պետությունների հետ տնտեսական կապերի մեր հնարավորությունները:



Այլ կերպ ասած, արագացման կուրսի կենսագործումը հեռուն գնացող հետևանքներ կունենա մեր հայրենիքի բախտի համար: **(Ծափահարություններ):**

## բ) ՏՆՏԵՍԱԿԱՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՀԻՄՆԱԿԱՆ ՈՒՂՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

Ընկերնե՛ր: ՍՄԿԿ ծրագրի և հիմնական ուղղությունների նախագծերում սահմանված են տնտեսական ու սոցիալական զարգացման գլխավոր բնագծերը: Հարյուրամյակի վերջին ազգային եկամուտը պետք է մեծացվի գրեթե երկու անգամ՝ արտադրական պոտենցիալի կրկնապատկմամբ և դրա որակական վերափոխմամբ հանդերձ: Աշխատանքի արտադրողականությունը կաճի 2,3—2,5 անգամ, ազգային եկամտի էներգատարությունը կնվազի 1,4 անգամ և մետաղատարությունը՝ գրեթե 2 անգամ: Դա կնշանակի կտրուկ շրջադարձ դեպի արտադրության ինտենսիվացում, որակի և արդյունավետության բարձրացում:

Նախատեսվում է հետագայում այդ պրոցեսների խորացման հիման վրա անցում կատարել դեպի բարձրագույն կազմակերպվածության և արդյունավետության էկոնոմիկա՝ բազմակողմանիորեն զարգացած արտադրողական ուժերով, հասուն սոցիալիստական արտադրական հարաբերություններով, կարգաբերված տնտեսական մեխանիզմով: Սա է մեր ստրատեգիական գիծը:

Որպես այդ գծի իրականացման գլխավոր միջոցներ, ինչպես դա ընդգծվել է 1985 թվականի հունիսին ՍՄԿԿ Կենտկոմում տեղի ունեցած խորհրդակցությունում, հանդես են գալիս գիտատեխնիկական առաջընթացը, հասարակության արտադրողական ուժերի արմատական վերափոխումը: Նախկին նյութատեխնիկական հիմքի վրա անհնար է հասնել արմատական փոփոխությունների: Մենք ելքը տեսնում ենք գիտության ու տեխնիկայի նորագույն նվաճումների բազայի վրա, գիտատեխնիկական առաջադիմության ավանգարդային ուղղություններում առաջանցման, տնտեսական մեխանիզմի, կառավարման համակարգի վերակառուցման հիման վրա ժողովրդական տնտեսության խոր վերակառուցման մեջ:

### 1. Իրականացնել ժողովրդական տնտեսության վերակառուցում գիտատեխնիկական առաջադիմության հիման վրա

ՍՄԿԿ-ն գիտատեխնիկական և սոցիալ-տնտեսական խոշորագույն վերափոխումների իրականացման հսկայական փորձ ունի: Բայց որքան էլ դրանք նշանակալից լինեն, մեր աշխատանքը անցյալում իր մասշտաբներով ու բարդությամբ չի կարող համեմատվել այն բանի հետ, ինչ պետք է արվի առաջիկա ժամանակաշրջանում ժողովրդական տնտեսության վերակառուցման համար:

Դրա համար ի՞նչ է հարկավոր:

**Նախ և առաջ՝ փոխել ստրուկտուրային և ինվեստիցիոն քաղաքականությունը:** Փոփոխությունների էությունն է՝ ուշադրության կենտրոնը քանակական ցուցանիշներից տեղափոխել որակի և արդյունավետության վրա, միջանկյալ արդյունքներից՝ վերջնական արդյունքների, արտադրական ֆոնդերի ընդլայնումից՝ դրանց նորացման, վառելիքահումքային ռեսուրսների մեծացումից՝ դրանց օգտագործման բարելավման վրա, գիտատար ճյուղերի, արտադրական և սոցիալական ինֆրակառուցվածքի արագացված զարգացման վրա:

Այդ ուղղությամբ խոշոր քայլ պետք է արվի ընթացիկ հնգամյակում: Նախատեսված է արտադրության վերակառուցմանը և տեխնիկական վերազինմանը հատ-

կացնել ավելի քան 200 միլիարդ ռուբլի կապիտալ ներդրումներ՝ ավելի շատ, քան նախորդ տասը տարում: Ծավալները փոքր չեն, այնուհանդերձ, պլանային և տըն-տեսական մարմինները պետք է շարունակեն այդ նպատակների համար լրացուցիչ հնարավորությունների որոնումը:

Ըստ ստրատեգիական ուղղությունների մշակված են խոշոր կոմպլեքսային ծրա-գրեր, սկսվել է դրանց իրականացումը: Ավելի դինամիկորեն կզարգանան գիտա-տեխնիկական առաջընթացը որոշող, տնտեսական արագ հասույթը և սոցիալական անհետաձգելի պրոբլեմների լուծումն ապահովող ճյուղերը: Դրանց արագացված զարգացման վրա են կենտրոնացվում ֆինանսական, նյութական, գիտական և աշ-խատանքային զգալի ռեսուրսներ:

Հասկանալի է, որ վերակառուցման արդյունավետությունը, տնտեսական աճի տեմպերը վճռական չափով կախված են **մեքենաշինությունից**: Հենց այստեղ են նյութականացվում հիմնարար գիտատեխնիկական գաղափարները, ստեղծվում աշ-խատանքի նոր գործիքներ, մեքենաների համակարգեր, որոնք որոշում են առաջըն-թացը ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերում: Այստեղ են դրվում դեպի սկզբունքորեն նոր, ռեսուրսախնայիչ տեխնոլոգիաները լայն կերպով դուրս գալու հիմքերը, աշխատանքի արտադրողականության և արտադրանքի որակի բարձրաց-ման հիմքերը:

Համագումարի պատգամավորները գիտեն, որ ՍՄԿԿ Կենտկոմը և ՍՍՀՄ Մի-նիստրների խորհուրդը վերջերս որոշում ընդունեցին մեքենաշինության հետագա զարգացման մասին: Ըստ էության դա ինդուստրիայի կարևորագույն հատվածի արդիականացման համապետական ծրագիր է: Ստեղծված է դրա կառավարման միասնական մարմին: Մեքենաշինական համալիրի առջև խնդիր է դրված արդեն տասներկուերորդ հնգամյակի վերջին շեշտակիորեն բարձրացնել մեքենաների, սար-քավորումների, սարքերի տեխնիկատնտեսական մակարդակն ու որակը: Ճյուղի նո-րացմանը հատկացվում են 1,8 անգամ ավելի կապիտալ ներդրումներ, քան նախորդ հինգ տարում:

Կոնկրետ ի՞նչ ենք մենք սպասում այդ ծրագրի իրականացումից: Ավելի քան 40 տոկոսով կավելանա մեքենաների և սարքավորումների թողարկումը, կբարելավվեն դրանց որակական բնութագրերը: Նոր սերունդների տեխնիկայի հարանուն հոսքը պայմաններ կստեղծի ժողովրդական տնտեսության արմատական վերազինման, նրա արդյունավետության աճի համար: Դրա շնորհիվ մենք կկարողանանք մեկ տարվա հաշվով տնտեսել մոտավորապես 12 միլիոն մարդու աշխատանք, ավելի քան հարյուր միլիոն տոննա վառելիք, ստանալ շատ միլիարդավոր ռուբլու արդյունք: Միայն «ԴՈՆ—1500» կոմբայնի կիրառումը, ինչպես ցույց են տալիս հաշվարկները, հնարավորություն կտա զգալիորեն կրճատել հացահատիկահավաք մեքենաների հա-մակազմը, ազատել մոտ 400 հազար մեխանիզատորների, միլիոնավոր տոննաներով պակասեցնել հացահատիկի կորուստները:

Տեխնիկական վերակառուցման տեմպերի վրա հսկայական ազդեցություն կգոր-ծեն արտադրության լայն էլեկտրոնացումը և կոմպլեքսային ավտոմատացումը: Սահ-մանված են ժամանակակից կոմպյուտերային տեխնիկայի մշակման ու մասսայական յուրացման, էլեմենտային բազայի զարգացման կոնկրետ առաջադրանքներ: Ինդուս-տրիալ հիմքի վրա է դրվում էլեկտրոնային հաշվիչ մեքենաների և կառավարման ավտոմատացված համակարգերի ծրագրային ապահովումը: ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայում ստեղծված է ինֆորմատիկայի ու հաշվողական տեխնիկայի բաժան-մունք, որը միավորում է այն ինստիտուտներն ու կոնստրուկտորական բյուրոները, որոնց վրա է դրված այդ բնագավառում կատարվող աշխատանքների գիտական ապահովումը:

Վառելիքաէներգետիկ համալիրի արմատական վերակառուցման գաղափարով է տոգորված էներգետիկ ծրագիրը: Այդ ծրագրում շեշտը դրված է էներգախնայիչ տեխնոլոգիաների կիրառման, գազով ու ածխով հեղուկ վառելիքի փոխարինման, նավթի ավելի խոր վերամշակման վրա: Առաջավոր տեխնոլոգիաների յուրացում է նախատեսված նաև արդյունահանող արդյունաբերության մեջ՝ ածխի բաց և ջրային հանույթ, նավթի սարքավորումների մակարդակի և հուսալիության բարձրացում, ավ-տոմատացված համակարգերի համատարած ներդրում: Ընթացիկ հնգամյակում կգոր-



ծարկվեն երկուսուկես անգամ ավելի շատ ատոմային էլեկտրակայանների կարողու-թյուններ, քան նախորդ հնգամյակում, ինչպես նաև կիրականացվի ջերմակայանների հնացած ագրեգատների մասսայական փոխարինում:

Շատ բան պետք է արվի մետալուրգիայում և քիմիական ինդուստրիայում, դրանք ավելի արտադրողական սարքավորումներով հագեցնելու ասպարեզում: Սկըզ-բունքորեն նոր և բարելավված կոնստրուկցիոն և այլ առաջադիմական նյութերի թո-ղարկումը կարագացնի էլեկտրոնիկայի, մեքենաշինության, շինարարության և ժողո-վըրդական տնտեսության այլ ճյուղերի զարգացումը:

Կուսակցությունը հսկայական նշանակություն է տալիս արտադրական ինֆրա-կառուցվածքի, առաջին հերթին տրանսպորտի ու կապի տեխնիկական վերազինմանը: Առաջնահերթ զարգացում կստանան թեթև արդյունաբերությունը և արդյունաբերա-կան մյուս այն ճյուղերը, որոնք աշխատում են անմիջականորեն բնակչության պա-հանջմունքների բավարարման ասպարեզում: Դրանց համար թողարկվող առաջա-դիմական սարքավորումների արտադրության մեջ ներգրավված են արդյունաբերու-թյան ոչ միայն մասնագիտացված, այլև ուրիշ ճյուղեր:

Տեխնիկական վերակառուցում մենք չենք կարող իրականացնել առանց կապի-տալ շինարարության արմատական բարելավման: Իսկ դա պահանջում է ինդուս-տրիալ ու կազմակերպական նոր մակարդակի բարձրացնել ամբողջ շինարարական համալիրը, առնվազն երկու անգամ կրճատել ինվեստիցիոն ցիկլը ինչպես ձեռնար-կությունները վերակառուցելիս, այնպես էլ նոր օբյեկտներ կառուցելիս: Այլևս չի կարելի հաշտվել շինարարության դանդաղ տեմպերի հետ, որի պատճառով սառեց-վում են հսկայական միջոցներ, արգելակվում է գիտատեխնիկական առաջընթացը ժողովրդական տնտեսության մեջ:

Սրանք բոլորը, ընկերներ, իրենց ծավալով ու նշանակությամբ վիթխարի խըն-դիրներ են, որոնց լուծումը վերջին հաշվով կորոշի պլանների կատարման բախտը, մեր աճի տեմպերը: Յուրաքանչյուր ճյուղ, յուրաքանչյուր ձեռնարկություն պետք է ունենա արտադրության անընդհատ նորացման հստակ ծրագիր: Հետևաբար, էակա-նապես բարձրանում է պլանային ու տնտեսական մարմինների պատասխանատվու-թյունը նախատեսվածի կատարման համար: Դրան պետք է նպատակամղված լինի նաև կուսակցական կազմակերպությունների գործունեությունը:

Առանձնապես կարևոր է թույլ չտալ ցուցամոլություն, գործի էության փոխարի-նում թերավարտ լուծումներով: Տագնապ են հարուցում բնավ ոչ եզակի փաստերը, երբ մինիստրություններն ու գերատեսչությունները վերակառուցման դրոշի տակ կառուցում են նոր օբյեկտներ, դրանք լցնելով հնացած սարքավորումներով, մշակում են թանկարժեք նախագծեր, որոնք չեն ապահովում արտադրության ելքը դեպի տեխնիկատնտեսական բարձրագույն ցուցանիշներ:

Ահա այդպիսի մոտեցման մի վկայություն: Ներկայումս ընթանում է Բրյանսկի մեքենաշինական գործարանի վերազինումը, որը ջերմաքարշերի շարժիչներ է թողար-կում: Նախատեսվում է դրա վրա ծախսել մոտ 140 միլիոն ռուբլի, որի կեսն արդեն իրացված է: Իսկ ի՞նչ արդյունք կտա կարողությունների նորացումը: Պարզվում է, որ առաջադիմական տեխնոլոգիաների կիրառում չի նախատեսված, բանվորների թիվն արդեն ավելացել է գրեթե հազարով, ընկել է ֆոնդահատույցը: Իսկ գլխավորն այն է, որ պատրաստվում են նոր կարողություններում թողարկել հնացած շարժիչ, չնայած մշակվել և փորձարկում է անցել ավելի արդյունավետ մոդելը:

Ինչպե՞ս հասկանալ ծանր մեքենաշինության մինիստրության և հաղորդակցու-թյան ճանապարհների մինիստրության ղեկավարների բռնած դիրքը: Ըստ երևույթին, որոշ ընկերներ չեն ըմբռնել իրենց առջև ծառացած խնդիրների ողջ խորությունն ու կարևորությունը: Նման օրինակները արժանի են ամենախիստ դատապարտման, որպես վերակառուցման և գիտատեխնիկական առաջընթացի արագացման կուսակ-ցության կուրսի խափանում: Այդ կարգի երևույթներին պետք է մոտենալ ամենայն խստությամբ:

Վերակառուցման անհրաժեշտությունը նոր խնդիրներ է առաջադրում **գիտու-թյանը**: ՍՄԿԿ-ն հետևողականորեն կիրականացնի գիտության նյութատեխնիկական բազայի ըստ ամենայնի ամրապնդման գիծը, պայմաններ կստեղծի գիտնականների արգասավոր գործունեության համար: Բայց երկիրը իրավունք ունի նրանցից ակնկա-

լելու տեխնիկայի ու տեխնոլոգիայի զարգացման մեջ իրոք հեղափոխական փոփո-
խություններ ապահովող հայտնագործություններ և գյուտեր:
Վերջին ժամանակներս նախատեսված են գիտահետազոտական հիմնարկների
աշխատանքի արդյունավետությունը բարձրացնելու կարևոր միջոցառումներ: Դրանք՝
վերաբերում են գիտնականների աշխատանքի խթանման հարցերին, գիտության և
արտադրության փոխգործակցության նոր ձևերին: Վերջերս որոշում ընդունվեց միջ-
ճյուղային գիտատեխնիկական համլիրների ստեղծման մասին, որոնց մեջ ընդգրկ-
ված են գլխադաս հզոր ինստիտուտներ, այդ թվում ակադեմիական ինստիտուտներ,
նախագծային-կոնստրուկտորական կազմակերպություններ և փորձնապրդյունաբե-
րական արտադրություններ:
Միջոցներ են ձեռնարկվում նաև ճյուղային գիտահետազոտական ինստիտուտ-
ների աշխատանքն ակտիվացնելու, գիտատեխնիկական առաջընթացի արագացման
մեջ նրանց ավանդը մեծացնելու համար: Սակայն այդ պրոցեսը անթույլատրելիորեն
դանդաղ է ընթանում: Շատ ինստիտուտներ մնում են որպես մինիստրությունների
ապարատի շարունակություն, հաճախ հանդես են գալիս գերատեսչական շահերի
փաստաբանների դերում, խրվել են հնամոլության և թղթարարության մեջ: Հու-
նիսյան խորհրդակցությունում սրությամբ դրվեց գիտությունը պրակտիկային մոտեց-
նելու, ճյուղային ինստիտուտները արտադրական և գիտաարտադրական միավորում-
ների մեջ ընդգրկելու հարցը: Պետք է պարզել, թե ովքեր են հակադրվում դրան,
թե այստեղ ինչ դիրք են բռնել մինիստրություններն ու նրանց կուսակցական կոմի-
տեները, թե նրանք ինչպես են արձագանքում կյանքի պահանջներին:
Հարկավոր է ավելի արդյունավետորեն օգտագործել նաև բուհերի գիտական
պոտենցիալը: Այստեղ է կենտրոնացված երկրի գիտամանկավարժական աշխատող-
ների ավելի քան 35 տոկոսը, այդ թվում գիտությունների դոկտորների մոտավորա-
պես կեսը, իսկ նրանք կատարում են գիտական հետազոտությունների տասը տո-
կոսից ոչ ավելին: Համապատասխան գերատեսչությունները պետք է մշակեն ու ներ-
կայացնեն արտադրության հետ բուհական գիտության կապի ամրապնդման վերա-
բերյալ առաջարկություններ: Պետք է դրանց մեջ հաշվի առնել նաև գիտական հեր-
թափոխի պատրաստման շահերը: Ինչպես որ չի կարող լինել կենդանի անտառ
առանց մանրանտառի, այնպես էլ աներևակայելի է իսկական գիտնականը առանց
աշակերտների: Խոսքը վերաբերում է գիտության, ուրեմն և մեր երկրի ապագային:
Ուսուցման առաջին տարիներից իսկ ուսանողները պետք է ներգրավվեն հետազո-
տական աշխատանքում, մասնակցեն արտադրության մեջ դրա արդյունքների ներ-
դրմանը: Միայն այսպես կարելի է դաստիարակել իսկական գիտնականներ, ստեղ-
ծագործաբար մտածող մասնագետներ:
Մի խոսքով, ընկերներ, գիտության շրջադարձը դեպի ժողովրդական տնտեսու-
թյան կարիքները անհրաժեշտ է իրականացնել ավելի եռանդագին: Բայց նույնքան
կարևոր են նաև արտադրության շրջադարձը դեպի գիտություն, արտադրության
առավելագույն ընկալունակությունը գիտատեխնիկական նվաճումների նկատմամբ:
Ցավոք, գիտական շատ հայտնագործություններ, խոշոր գյուտեր տարիներով, իսկ
երբեմն տասնամյակներով գործնական կիրառություն չեն գտնում: Բերեմ օրինակներ:
Անմաշվելիության էֆեկտը, որը հայտնագործել են սովետական գիտնականները
երեք տասնամյակ առաջ, թույլ տվեց ստեղծելու սկզբունքորեն նոր քսանյութեր,
որոնք բազմապատիկ մեծացնում են մեքենաների ու մեխանիզմների շփման հան-
գույցների երկարակեցությունը և խիստ պակասեցնում աշխատանքային ծախսում-
ները: Այս հայտնագործությունը, որը բազմամիլիոն ռուբլիների տնտեսում է տալիս,
մինչև օրս լայնորեն չի կիրառվում ՍՍՀՄ նավթավերամշակման և նավթաքիմիական
արդյունաբերության մինիստրության, մի շարք այլ մինիստրությունների ու գերատես-
չությունների որոշ ղեկավարների պահպանողականության պատճառով:
ՍՍՀՄ ավտոմոբիլային արդյունաբերության մինիստրության և պլանավորող
մարմինների մեղքով մոտ տասը տարի է, ինչ մասսայական կիրառություն չի գտնում
հակաշփման լցանյութով առանցքակալի գյուտը, որը շահագործման ամենածանր
պայմաններում բարձրացնում է մեխանիզմների հուսալիությունը և անխափան աշ-
խատանքը: Հաստոցաշինական և գործիքաշինական արդյունաբերության մինիստրու-



թյունը անթույլատրելիորեն ձգձգել է աշխարհում նմանը չունեցող բարձրամոմենտ
հիդրոշարժիչների արտադրությունը, որոնք թույլ են տալիս իրականացնել հանքային
և այլ սարքավորումների լայն հիդրոֆիկացում, մի քանի անգամ բարձրացնել աշ-
խատանքի արտադրողականությունը և բարելավել աշխատապայմանները:
Այս ցանկը, ցավոք, կարելի է շարունակել: Նորի նկատմամբ նման վերաբեր-
մունքի հիմքում հաճախ ընկած են գիտնականների առանձին խմբերի ամբիցիան,
«ուրիշի» գյուտերի նկատմամբ գերատեսչական անբարյացակամությունը, դրանց
ներդրման գործին արտադրության աշխատողների ոչ շահամետ մոտեցումը: Գաղտ-
նիք չէ նաև այն, որ նույնիսկ գյուտերի հայտերի քննարկումը երբեմն ձգձգվում է
տարիներով, վերածվում «տառապանքի ուղիների»:
Մենք չենք կարողանա գիտատեխնիկական առաջընթացի արագացման առա-
ջադրված խնդիրները լուծել, եթե չգտնենք այնպիսի լծակներ, որոնք ապահովեն
առաջնությունը միայն այն հետազոտական հիմնարկների, արդյունաբերական ձեռ-
նարկությունների, որոնց կոլեկտիվները ակտիվորեն են ներդնում ամեն նորն ու
առաջավորը, գտնում բարձրորակ և արդյունավետ արտադրատեսակների արտա-
դրության ուղիներ:
Մեզ մոտ արդեն կուտակված է գիտության ոլորտում տնտեսական մեխանիզմի
կատարելագործման, արտադրության հետ նրա փոխգործակցության որոշակի փորձ:
Հարկավոր է ուշադրությամբ վերլուծել այդ փորձը և առանց ձգձգելու արմատավո-
րել, գիտական կոլեկտիվների և առանձին աշխատողների նյութական խրախուսումը
սերտորեն շաղկապելով գիտատեխնիկական պրոբլեմների լուծման մեջ նրանց ներ-
դրած ռեալ ավանդի հետ:
Նորի ներդրման նկատմամբ վերաբերմունքը պետք է փոխեն էկոնոմիկայի
կառավարման բոլոր օղակները: Սա վերաբերում է թե ՍՍՀՄ պետպլանին, որը
պետք է ավելի համարձակորեն անցնի գիտատեխնիկական առաջընթացի համընդ-
գրկող պլանավորման, և թե ՍՍՀՄ գիտության ու տեխնիկայի պետական կոմիտեին,
որի աշխատանքի վերակառուցումը անչափ դանդաղ է ընթանում: Հիմնարար հետա-
զոտություններին, այդ հիման վրա ձեռք բերված արդյունքները արտադրության մեջ
ներդնելուն պետք է ավելի մեծ ուշադրություն նվիրեն ՍՍՀՄ գիտությունների ակա-
դեմիան, մինիստրություններն ու գերատեսչությունները: Սա յուրաքանչյուր գիտնա-
կանի, ինժեների, կոնստրուկտորի, ձեռնարկության ղեկավարի սրբազան պարտա-
կանությունն է:
Անհրաժեշտ է նոր խնդիրների հետ ավելի սերտորեն շաղկապել նաև մեր ար-
**տաքին տնտեսական գործունեությունը:** Փոխշահավետ տնտեսական կապերի նկատ-
մամբ մոտեցումը պետք է լինի խոշորամասշտաբ, ապագային միտված: Այդպիսի
քաղաքականություն են մշակել ՏՓԽ-ի մասնակից երկրները: Դա ենթադրում է
նրանց տնտեսական փոխհարաբերություններում գերազանցապես առևտրական կա-
պերից անցնել ավելի խոր մասնագիտացման ու կոոպերացման՝ արտադրության,
նախ և առաջ մեքենաշինության մեջ, համատեղ միավորումների, գիտաարտադրա-
կան համալիրների ստեղծման:
Մեզ մոտ ոչ քիչ գերատեսչություններ ու կազմակերպություններ են պատաս-
խանատու արտաքին տնտեսական կապերի այս կամ այն ոլորտի համար, բայց
նրանք միշտ չէ, որ աշխատում են ներդաշնակորեն: Առաջադրելով մեր զարգացման
արագացման համար արտաքին տնտեսական գործունեության ակտիվ օգտագործ-
ման խնդիրը, մենք նկատի ունենք քայլ առ քայլ իրականացնել արտաքին առև-
տրական շրջանառության ստրուկտուրայի վերակառուցում, առավել արդյունավետ
բնույթ հաղորդել արտահանությանը և ներմուծմանը:

## 2. Պարենային պրոբլեմի լուծումը առաջնահերթ խնդիր

Ընկերնե՛ր: Այն խնդիրը, որ մենք պետք է լուծենք ամենակարճ ժամանակա-
միջոցում, երկրի լրիվ ապահովումն է պարենով: Սրան է ուղղված կուսակցության

Արտադրությունը զարգացնել, շահույթներն ու եկամուտներն ավելացնել, աշխատանքը խթանել է հարկավոր հիմնականում սեփական միջոցների հաշվին: **(Ծափահարություններ):** Պետք է լրջորեն փոխվի բանկային վարկավորման պրակտիկան այն հաշվով, որպեսզի խթանվի կոլտնտեսությունների ու սովխոզների գործունեության մակարդակի բարձրացումը:

Ինչպես տեսնում եք, ընկերներ, գյուղում տնտեսավարման պայմանները արմատապես փոխվում են: Իսկ դա պահանջում է լրջորեն փոխել ագրոարդյունաբերական համալիրի ղեկավարման ոճն ու մեթոդները: Պետք է հրաժարվել գյուղի արտադրական գործունեությանը անձեռնհաս միջամտություն ցույց տալուց: Մենք իրավունք ունենք սպասելու, որ ՍՍՀՄ պետագրոարդը, նրա տեղական մարմինները ամեն ինչ կանեն, որպեսզի ձեռնարկվող միջոցներից երկիրը ստանա ծանրակշիռ հատույց: **(Ծափահարություններ):**

## 3. Էկոնոմիկայի կառավարումը՝ նոր պահանջների մակարդակին

Ընկերնե՛ր: Էկոնոմիկայի ասպարեզում նոր խնդիրների լուծումը անհնար է առանց տնտեսական մեխանիզմի խոր վերակառուցման, կառավարման ամբողջական, արդյունավետ ու ճկուն համակարգի ստեղծման, որը թույլ տա ավելի լրիվ իրացնել սոցիալիզմի հնարավորությունները:

Տնտեսական կառավարումը, և դա ակներև է, մշտական կատարելագործման կարիք ունի: Բայց այժմ իրավիճակն այնպիսին է, որ մասնակի բարելավումներով սահմանափակվել չի կարելի. անհրաժեշտ է արմատական ռեֆորմ: Ռեֆորմի իմաստն այն է, որ մեր ամբողջ արտադրությունը գործնականորեն ենթարկենք հասարակական պահանջմունքներին, մարդկանց կարիքների բավարարմանը, կառավարումը նպատակամղենք արդյունավետության և որակի բարձրացմանը, գիտատեխնիկական առաջադիմության արագացմանը, ժողովրդական տնտեսության յուրաքանչյուր օղակում և առաջին հերթին աշխատավորական կոլեկտիվներում աշխատանքի արդյունքներով՝ աշխատողների շահագրգռության, նախաձեռնության ու սոցիալիստական ձեռներեցության զարգացմանը:

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն, նրա քաղբյուրոն սահմանել են տնտեսական մեխանիզմի վերակառուցման հիմնական ուղղությունները: Մենք խնդիր ենք դնում.

— բարձրացնել էկոնոմիկայի կենտրոնացված ղեկավարման ներգործունությունը, ուժեղացնել կենտրոնի դերը կուսակցության տնտեսական ստրատեգիայի հիմնական նպատակների իրականացման, ժողովրդական տնտեսության զարգացման տեմպերի ու համամասնությունների, նրա հաշվեկշռվածության որոշման մեջ: Միաժամանակ պետք է հաղթահարվի ստորադաս տնտեսական օղակների օպերատիվ գործունեությանը կենտրոնի միջամտության պրակտիկան.

— վճռականորեն ընդլայնել միավորումների ու ձեռնարկությունների ինքնուրույնության սահմանները, բարձրացնել նրանց պատասխանատվությունը առավել մեծ վերջնական արդյունքների ձեռքբերման գործում: Դրա համար նրանց փոխադրել իսկական տնտհաշվարկի, ինքնափոխհատուցելիության և ինքնաֆինանսավորման, կոլեկտիվների եկամուտների մակարդակը ուղղակի կախման մեջ դնել աշխատանքի արդյունավետությունից.

— ժողովրդական տնտեսության բոլոր մակարդակներում անցնել ղեկավարման տնտեսագիտական մեթոդների, դրա համար վերակառուցել նյութատեխնիկական մատակարարումը, կատարելագործել գնագոյացման, ֆինանսավորման ու վարկավորման համակարգը, մշակել հակածախսումային ազդու խթաններ.

— կառավարմանը տալ արդիական կազմակերպական կառուցվածքներ, հաշվի առնելով արտադրության կենտրոնացման, մասնագիտացման ու կոոպերացման միտումները: Խոսքը վերաբերում է փոխկապակցված ճյուղերի համալիրների, գիտատեխնիկական միջճյուղային կենտրոնների, տնտեսական միավորումների, տերիտորիալ-արտադրական կազմավորումների բազմապիսի ձևերի ստեղծմանը.



— ապահովել տնտեսության ճյուղային և տերիտորիալ կառավարման օպտիմալ զուգակցում, հանրապետությունների և ռեգիոնների կոմպլեքսային տնտեսական ու սոցիալական զարգացում, միջճյուղային ռացիոնալ կապերի կարգավորում.

— իրականացնել կառավարման համակողմանի դեմոկրատացում, կառավարման մեջ բարձրացնել աշխատավորական կոլեկտիվների դերը, ուժեղացնել վերահսկողությունը ներքևից, հաշվետու լինելն ու հրապարակայնությունը տնտեսական մարմինների աշխատանքում:

Անկասկած, ընկերներ, մենք կանգնած ենք սոցիալիստական տնտեսական մեխանիզմի ամենալուրջ վերակառուցման առջև: Դրա իրականացումն սկսվել է: Ագրոարդյունաբերական համալիրի աշխատանքի ուղղության մասին արդեն ասվեց: Կատարելագործվում է մեքենաշինական համալիրի կառավարումը: Ինդուստրիայի ձեռնարկությունները փոխադրվում են հիմնականում կառավարման երկօղակ համակարգի: Տնտեսավարման նոր մեթոդները, որոնք ստուգված են փորձնականորեն, այս տարվանից մուտք են գործել ամբողջ արդյունաբերական արտադրանքի կեսը թողարկող ձեռնարկությունների ու միավորումների կյանքը: Սկսված է այդ մեթոդների ներդրումը կենցաղային սպասարկման ոլորտում, շինարարության մեջ, տրանսպորտում: Ավելի ու ավելի լայն կիրառություն են ստանում աշխատանքի կազմակերպման ու խթանման կոլեկտիվ ձևերը, տնտեսական կապալը:

Սակայն մենք գտնվում ենք սոսկ ճանապարհի սկզբին: Մեր երկրի պայմաններում, որը հսկայական ու բարդ էկոնոմիկա ունի, տնտեսական մեխանիզմի վերակառուցման համար ժամանակ ու եռանդուն ջանքեր են պահանջվում: Կարող են լինել դժվարություններ, մենք երաշխավորված չենք նաև վրիպումներից, բայց այնուամենայնիվ այժմ գլխավորն է նպատակասլաց կերպով, քայլ առ քայլ առաջ ընթանալ ընտրված ուղղությամբ, կուտակված փորձի հիման վրա լրացնելով ու կատարելագործելով տնտեսական մեխանիզմը, վերացնելով իր դարն ապրած կամ իրեն չարդարացրած ամեն ինչ: **(Երկարատև ծափահարություններ):**

Հաջողությունը շատ բանով կախված կլինի **կենտրոնական տնտեսական մարմինների և առաջին հերթին ՍՍՀՄ պետպլանի գործունեության վերակառուցումից:** ՍՍՀՄ պետպլանը կոչված է իրականում դառնալու երկրի իսկական գիտատնտեսական շտաբը՝ ազատված ընթացիկ տնտեսական հարցերից: Մենք այդ աշխատանքն սկսել ենք: Ստեղծվում են միջճյուղային համալիրների ղեկավարման նոր մարմիններ, օպերատիվ կառավարման ֆունկցիաների հիմնական մասը դրվում է անմիջականորեն ձեռնարկությունների ու միավորումների վրա: Պետպլանը, մյուս տնտեսական գերատեսչությունները պետք է կենտրոնանան պլանավորման հեռանկարային հարցերի վրա, էկոնոմիկայի համամասնական ու հաշվեկշռված զարգացման ապահովման, ստրուկտուրային քաղաքականության վարման, ժողովրդական տնտեսության յուրաքանչյուր բջջի մեջ առավել բարձր վերջնական արդյունքներ ձեռք բերելու համար տնտեսական պայմանների ու խթանների ստեղծման վրա: Լուրջ բարելավման կարիք ունի վիճակագրության գործը:

Վերջին ժամանակներս թուլացել է **ֆինանսա-վարկային ներգործությունը էկոնոմիկայի վրա:** Ֆինանսական համակարգը անբավարար է ազդում էկոնոմիկայի արդյունավետության բարձրացման վրա: Մեծ մասշտաբների է հասել եկամուտների վերաբաշխման անընդունելի պրակտիկան, երբ ետ մնացող ձեռնարկությունների, մինիստրությունների, ռեգիոնների վնասները ծածկվում են շահութաբեր աշխատողների հաշվին: Սա խախտում է տնտհաշվարկը, ծնում խնամառուականություն, կողմնորոշում դեպի կենտրոնից օգնություն ցույց տալու անվերջ պահանջներ: Իր իսկական նշանակությունը կորցրել է վարկը:

«Մեր ամեն կարգի արմատական ռեֆորմները դատապարտված են անհաջողության,— նշել է Վ. Ի. Լենինը,— եթե մենք հաջողություն չունենանք ֆինանսական քաղաքականության մեջ»: Ելնելով դրանից, պետք է արմատապես փոխել ֆինանսա-վարկային մարմինների աշխատանքի բովանդակությունը, կազմակերպումն ու մեթոդները: Նրանց կարևորագույն խնդիրն է ոչ թե ձեռնարկությունների գոր-

ծունեության մանրախնդիր կանոնակարգումը, այլ տնտեսական խթանումը, դրամաշրջանառության, տնտհաշվարկի ամրապնդումը, որը հենց ամենալավ վերահըսկիչն է: Ամեն ինչ պետք է կախման մեջ դրվի վերջնական արդյունքից: Ակներևաբար հասունացել է շրջանառու հարկի գանձման, շահույթից և մյուս մուտքերից բյուջեին հատկացվող վճարումների պրակտիկայի կատարելագործման հարցը: Դրանց չափերը և վճարման կարգը պետք է ավելի ակտիվորեն ներգործեն արտադրության ծախքերը նվազեցնելու, արտադրանքի որակը բարձրացնելու և նրա իրացումն արագացնելու վրա:

Տնտեսական և սոցիալական քաղաքականության ակտիվ գործիք են կոչված դառնալու **գները**: Պետք է իրականացվի գների համակարգի՝ որպես միասնական ամբողջության, պլանաչափ վերակառուցում՝ ի շահ գործուն տնտեսական հաշվարկի կարգավորման և բնակչության ռեալ եկամուտների բարձրացման խնդիրներին համապատասխան: Պետք է գներին ավելի մեծ ճկունություն հաղորդել, դրանց մակարդակը շաղկապել ոչ միայն ծախսումների, այլև ապրանքների սպառողական հատկությունների, արտադրանքի էֆեկտիվության հետ, հասարակական պահանջմունքների ու բնակչության պահանջարկի և արտադրվող արտադրանքի հաշվեկշռըվածության աստիճանի հետ: Նախատեսվում է ավելի լայնորեն օգտագործել լիմիտային և պայմանագրային գները:

Լուրջ կատարելագործման կարիք ունի նաև **նյութատեխնիկական մատակարարման** համակարգը: Այն պետք է վերածվի ճկուն տնտեսական մեխանիզմի, ժողովրդական տնտեսությանն օգնի աշխատելու համաչափ ու կայուն կերպով: Պետմատի ուղղակի խնդիրն է՝ ակտիվորեն նպաստել պայմանագրային հիման վրա արտադրողների և սպառողների միջև ուղղակի տևական կապերի հաստատմանը, մատակարարումների կարգապահության ամրապնդմանը: Պետք է զարգացնել արտադրամիջոցների մեծածախ առևտուրը:

Վերջին հաշվով այն ամենը, ինչ մենք անում ենք կառավարման ու պլանավորման կատարելագործման, կազմակերպական ստրուկտուրաների վերակառուցման ուղղությամբ, նպատակ ունի պայմաններ ստեղծել **տնտեսական համակարգի հիմնական օղակի՝ միավորման, ձեռնարկության արդյունավետ աշխատանքի** համար:

Ինչպես ցույց է տալիս վերլուծությունը, անցկացվող էքսպերիմենտի արդյունքները կարող էին և զգալիորեն լավ լինել, եթե մի կողմից՝ դրանց համապատասխաներ ճյուղային մինիստրությունների ու կենտրոնական տնտեսական գերատեսչությունների աշխատանքի վերակառուցումը, որոնք առաջվա պես չեն հրաժարվում ձեռնարկությունների իրավունքները սահմանափակելու փորձերից, իսկ մյուս կողմից՝ արդյունավետության աճի խթանները հասցված լինեն յուրաքանչյուր տեղամաս, բրիգադ, աշխատատեղ: Սրա վրա պետք է հատուկ ուշադրություն դարձնել:

Ի վերջո, ժամանակն է վերացնել մինիստրությունների ու գերատեսչությունների կողմից ձեռնարկությունների մանրախնդիր խնամակալության պրակտիկան: Իրենց գործունեության մեջ մինիստրությունները պետք է ուշադրությունը կենտրոնացնեն տեխնիկական քաղաքականության հարցերի, ներճյուղային համամասնությունների, իրենց ճյուղերի բարձրորակ արտադրանքի նկատմամբ ժողովրդական տնտեսության պահանջմունքների բավարարման վրա: Հարկավոր է ձեռնարկություններին ու կազմակերպություններին իրավունք տալ ինքնուրույն իրացնելու արտապլանային արտադրանքը, չօգտագործված հումքն ու նյութերը, սարքավորումները և այլն: Այդ բանը պետք է օրինականացվի նաև բնակչության հետ փոխհարաբերություններում: Մի՞թե խելացի բան է ոչնչացնել կամ աղբանոց նետել այն, ինչը կարող է պետք գալ տնային տնտեսության, բնակարանների, ավտոտնակների, այգեգործական տնակների շինարարության մեջ:

Դժվար է գերագնահատել տնտեսական **նորմատիվների** դերը: Նախապես գիտենալով պլանավորվող ժամանակաշրջանի պայմանները՝ արտադրանքի մատակարարման առաջադրանքները, գները, շահույթից բյուջե կատարվող մասհանումները, աշխատավարձի ֆոնդերի գոյացման նորմատիվները, խթանման տնտհաշվարկային ֆոնդերը, ձեռնարկությունների կոլեկտիվները կկարողանան ստեղծագործաբար, առանց վախի բացահայտել ռեզերվները, մշակել այնպիսի պլաններ, որոնք ապահո-



վեն արտադրության աճի ավելի արագ տեմպեր, նրա արդյունավետության զգալի բարձրացում: Ընդ որում հարկավոր է ձեռնարկություններին հնարավորություն տալ ՎԱԶ-ի և Սումիի մեքենաշինական գործարանի օրինակով ինքնուրույն վաստակել արտադրության ընդլայնման, տեխնիկական նորացման համար անհրաժեշտ միջոցներ:

Առանձնապես կարևոր է մեծացնել ձեռնարկությունների ու կազմակերպությունների ինքնուրույնությունը ժողովրդական սպառման ապրանքների արտադրության ու սպասարկման ոլորտում: Նրանց խնդիրն է՝ զգայուն կերպով արձագանքել սպառողների պահանջմունքներին: Այդ ուղղությամբ էլ վերակառուցում ենք տնտեսական մեխանիզմը թեթև արդյունաբերության մեջ: Խիստ սահմանափակվում է այդ ճյուղի ձեռնարկությունների համար վերևից հաստատվող առաջադրանքների շրջանակը, նրանց պլանները պայմանագրերի հիման վրա կկազմվեն նախ և առաջ առևտրական կազմակերպությունների հետ, որոնք իրենց հերթին պետք է պատասխան տան բնակչության ռեալ պահանջարկին իրենց պատվերների համապատասխանության համար: Այլ կերպ ասած, գլխավորը կլինի ոչ թե ապրանքների համախառն արտադրանքը, այլ դրանց քանակը, տեսականին ու որակը, այն, ինչը և պետք է մարդկանց: **(Երկարատև ծափահարություններ)**: Բացի դրանից, նախատեսվում է ստեղծել թեթև արդյունաբերության ապրանքների պատրաստման և իրացման միջճյուղային արտադրական և արդյունաբերական-առևտրական միավորումներ, ֆիրմային առևտրի ընդլայնում:

Ժամանակն է լուծելու նաև մի այսպիսի հարց: Հարկավոր է, որ ձեռնարկությունների աշխատավարձի ֆոնդի չափը անմիջականորեն շաղկապված լինի նրանց արտադրանքի իրացումից ստացվող եկամուտների հետ: Դա կօգնի բացառելու ոչ պիտանի, ցածրորակ արտադրանքի արտադրությունն ու մատակարարումը, ինչպես ասում են՝ պահեստի համար աշխատանքը: Ի դեպ, այդպիսի մոտեցումը պետք է կիրառել ոչ միայն թեթև արդյունաբերության մեջ: Մենք չենք կարող այլևս հաշտվել այն բանի հետ, որ ոչ պիտանի արտադրանք թողարկող ձեռնարկությունների աշխատողները ապրում են առանց առանձնակի հոգսերի, լիովին ստանալով թե՛ աշխատավարձը, թե՛ պարգևավճարը, թե՛ մյուս բարիքները: Եվ իսկապես, մենք ինչու պետք է վարձատրենք այն աշխատանքը, որի տված արտադրանքը ոչ ոք չի վերցնում: Այսպես թե այնպես, այդ ամենը մեր դեմ է շրջվում, ընկերներ: Այդ մասին չպետք է մոռանալ: **(Ծափահարություններ)**:

Խելամիտ մոտեցում է պահանջում նաև **խոշոր, միջին և մանր ձեռնարկությունների** ռացիոնալ զուգորդման հարցը: Ինչպես ցույց է տալիս փորձը, ոչ մեծ, տեխնիկապես լավ հագեցված ձեռնարկությունները շատ դեպքերում ունեն իրենց առավելությունները: Դրանք կարող են ավելի արագ և ավելի ճկունորեն հաշվի առնել տեխնոլոգիական նորույթները, պահանջարկի փոփոխությունները, ավելի օպերատիվորեն բավարարել մանր սերիական և հատով արտադրանքի նկատմամբ պահանջը, ավելի լավ օգտագործել ազատ աշխատանքային ռեսուրսները հատկապես փոքր քաղաքներում:

Վերակառուցման ևս մեկ էական կողմի՝ պլանավորման և կառավարման մեջ տերիտորիալ մոտեցումն ուժեղացնելու մասին: Սա առանձնապես կարևոր է այնպիսի լայնարձակ, իր պայմաններով բազմազան և բազմազգ երկրի համար, ինչպիսին մերն է: Կուսակցական կոնֆերանսներում, միութենական հանրապետությունների կոմկուսների համագումարներում արդարացիորեն քննադատվեցին այն մինիստրությունների ու գերատեսչությունների գործողությունները, որոնք անտեսում են ռեգիոնների պայմաններն ու պահանջմունքները, որի հետևանքով անհամամասնություններ են առաջանում էկոնոմիկայի մեջ:

Այս առնչությամբ ստացվում են նաև առաջարկություններ: Ըստ երևույթին արժե մտածել շինարարության, միջճյուղային արտադրությունների, սոցիալական և արտադրական ինֆրակառուցվածքների, լայն սպառման առարկաներ արտադրող շատ ձեռնարկությունների կառավարման ասպարեզում ագրոարդի օրինակով հանրապետական և տեղական մարմինների իրավունքների ընդլայնման մասին: **(Ծափահարություններ)**: Հարկավոր է ավելի մեծ տերիտորիալ ուղղվածություն տալ ՍՍՀՄ պետպլանի ու մինիստրությունների գործունեությանը: Ուսումնասիրման է

արժանի ըստ խոշոր տնտեսական շրջանների ժողովրդական տնտեսության կառավարման հարցը։

Մոտակա և հեռավոր հեռանկարի մեր պլանները զգալի չափով կապված են Սիբիրի և Հեռավոր Արևելքի բնական հարստությունների յուրացման հետ։ Սա շատ կարևոր գործ է և դրան պետք է վերաբերվել պետականորեն, ապահովելով ռեգիոնների զարգացման կոմպլեքսայնությունը։ Առանձնակի ուշադրություն պետք է նվիրել մարդկանց արգասավոր աշխատանքի և լիարժեք կյանքի համար այստեղ անհրաժեշտ պայմանների ստեղծմանը։ Այսօր սա գլխավոր հարցն է, և առաջադրված խնդիրների կատարումը կախված է նրանից, թե այն ինչպես կլուծվի։

Մեր համագումարում պետք է ուշադրությունը հրավիրել Ռուսաստանի ոչ սևահողային գոտու հետագա սոցիալ-տնտեսական զարգացման խնդիրների վրա։ Ընդգծեմ երկու հանգամանք. ՍՄԿԿ Կենտկոմն ու սովետական կառավարությունը հատուկ որոշումներ են ընդունել ոչ սևահողային գոտու գյուղատնտեսության վերելքի վերաբերյալ, և դրանք պետք է կատարվեն անշեղորեն ու լրիվ ծավալով։ Սա՝ առաջին, իսկ երկրորդը, անհրաժեշտ է, որ տեղական կուսակցական, սովետական ու տնտեսական մարմինները, աշխատավորական կոլեկտիվները շատ ավելի մեծ ուշադրություն նվիրեն այստեղ կուտակված պոտենցիալի և հատկացվող ռեսուրսների արդյունավետ օգտագործմանը։

Կառավարման տերիտորիալ սկզբունքի ամրապնդումը պահանջում է բարձրացնել տնտեսական ղեկավարման մակարդակը յուրաքանչյուր հանրապետությունում, մարզում, քաղաքում, շրջանում։ Հաճախ տեղերից ստացվում են այնպիսի առաջարկություններ, որոնք հարկ եղածին պես մշակված չեն, թելադրված են ոչ թե ժողովրդատնտեսական, այլ, ավելի շուտ, խնամառուական, իսկ երբեմն էլ պատվախնդրական շահերով, որոնք էկոնոմիկան ներքաշում են կապիտալատար և սակավարդյունավետ նախագծերի մեջ։ Ամենուրեք չէ, որ պատշաճ ուշադրություն է նվիրվում արտադրության արդյունավետության բարձրացմանը։ Ղազախստանում, օրինակ, հիմնական արտադրական ֆոնդերի մեկ միավորից «վերցվում է» մեկ երրորդով պակաս ազգային եկամուտ, քան միջին հաշվով ժողովրդական տնտեսության մեջ։ Թուրքմենիայում հանրային աշխատանքի արտադրողականությունը 15 տարվա ընթացքում առհասարակ չի բարձրացել։ Հարկ կլինի մտածել այն մասին, թե սոցիալական կարիքների համար հատկացվող ռեսուրսների ծավալները ինչպես ավելի սերտորեն շաղկապել ռեգիոնալ էկոնոմիկայի արդյունավետության հետ։ **(Ծափահարություններ)։**

Ընկերնե՛ր։ Տնտեսական մեխանիզմի ամեն մի վերակառուցում, ինչպես հայտնի է. սկսվում է գիտակցության վերակառուցումից, մտածողության ու պրակտիկայի ստեղծված ստերեոտիպներից հրաժարվելուց, նոր խնդիրների հստակ ըմբռնումից։ Իսկ դա առաջին հերթին վերաբերում է մեր տնտեսական կադրերի, կառավարման կենտրոնական օղակների աշխատողների գործունեությանը։ Նրանց մեծ մասը լավ է պատկերացնում և ակտիվորեն պաշտպանում է կուսակցության նախաձեռնությունները, համարձակորեն ձեռք զարկում բարդ խնդիրներին, որոնում և գտնում է դրանց լուծման լավագույն ուղիները։ Նման դիրքավորումը համակողմանի պաշտպանության է արժանի։ Բայց դժվար է հասկանալ նրանց, ովքեր սպասողական դիրք են բռնում կամ, Գոգոլի հերոսի նման, որն ամեն կարգի անիրագործելի նախագծեր էր կազմում, փաստորեն ոչինչ չեն անում ու չեն փոխում։ Այս կարգի աշխատողների դիրքավորման հետ հաշտություն չի սպասվում։ Մեր ճանապարհները պարզապես տարբեր են։ Առավել ևս տարբեր են նրանց հետ, ովքեր հույս ունեն, թե ամեն ինչ տեղը կընկնի և կընթանա հին հունով։ Այդպիսի բան չի լինի, ընկերներ։ **(Բուռն ծափահարություններ)։**

Էկոնոմիկայի և տնտեսական մեխանիզմի վերակառուցման աշխատանքում, ինչպես երբեք, կարևոր է գիտության վրա հենվելը։ Ելնելով կյանքի պահանջներից՝ հարկավոր է նորովի նայել որոշ տեսական պատկերացումների ու կոնցեպցիաների։ Դա վերաբերում է այնպիսի խոշոր պրոբլեմների, ինչպիսիք են արտադրողական ուժերի ու արտադրական հարաբերությունների փոխգործողությունը, սոցիալիստական սեփականությունն ու նրա իրացման տնտեսական ձևերը, ապրանքադրամական հարաբերությունները, ցենտրալիզմի ու տնտեսական կազմակերպությունների ինքնուրույնության զուգորդումը և այլն։



Պրակտիկան ցույց է տվել այն պատկերացումների սնանկությունը, որոնց համաձայն սոցիալիստական պայմաններում **արտադրողական ուժերի բնույթին արտադրական հարաբերությունների համապատասխանությունը** ապահովվում է ասես ավտոմատ կերպով։ Կյանքում ամեն ինչ ավելի բարդ է։ Այո, սոցիալիստական արտադրական հարաբերությունները արտադրողական ուժերի զարգացման լայն ասպարեզ են բացում։ Բայց դրա համար այդ հարաբերությունները պետք է մշտապես կատարելագործվեն։ Իսկ դա նշանակում է, որ պետք է ժամանակին նկատել տնտեսավարման հնացած մեթոդները և դրանք փոխարինել նորերով։

Ներկայումս գործող արտադրական հարաբերությունների ձևերը, տնտեսավարման և կառավարման համակարգը հիմնականում ձևավորվել են էկոնոմիկայի էքստենսիվ զարգացման պայմաններում։ Դրանք աստիճանաբար հնացել են, սկսել են կորցնել խթանիչ դերը, իսկ որոշ բաներում էլ՝ վերածվել արգելակի։ Այժմ մենք ձգտում ենք փոխել տնտեսական մեխանիզմի ուղղվածությունը, հաղթահարել նրա ծախսողական բնույթը, նպատակամղել դեպի որակի և արդյունավետության բարձրացում, գիտատեխնիկական առաջադիմության արագացում, մարդկային գործոնի դերի ուժեղացում։ Սա գլխավորն է, որ իրականում կնշանակեր սոցիալիստական արտադրական հարաբերությունների հետագա կատարելագործում և նոր ասպարեզ կբացեր արտադրողական ուժերի զարգացման համար։

Այստեղ մեզ չպետք է ետ կանգնեցնեն հնացած պատկերացումները, առավել ևս՝ նախապաշարումները։ Եթե, օրինակ, անհրաժեշտ է և արդարացված ինչ-որ դիրեկտիվ ցուցանիշների փոխարեն կիրառել տնտեսական նորմատիվներ, ապա դա նշանակում է ոչ թե նահանջ պլանային ղեկավարման սկզբունքներից, այլ նրա մեթոդների ու ձևերի փոփոխում միայն։ Նույն բանը կարելի է ասել նաև միավորումների ու ձեռնարկությունների ինքնուրույնության, ձեռներեցության ու պատասխանատվության ուժեղացման, նրանց՝ որպես սոցիալիստական ապրանքարտադրողների դերի բարձրացման անհրաժեշտության մասին։

Ցավոք, տարածում է ստացել այն դիրքավորումը, երբ տնտեսական մեխանիզմի ամեն մի փոփոխության մեջ սոցիալիզմի սկզբունքներից համարյա նահանջ են տեսնում։ Այս կապակցությամբ կցանկանայի ընդգծել հետևյալը. կառավարումը, ինչպես նաև սոցիալիստական արտադրական հարաբերությունների ամբողջ սիստեմը կատարելագործելու բարձրագույն չափանիշը պետք է լինի սոցիալ-տնտեսական արագացումը, գործնականում սոցիալիզմի ամրապնդումը։ **(Երկարատև ծափահարություններ)։**

Մեծ հրատապություն են ձեռք բերում **սոցիալիստական սեփականության պրոբլեմները՝** որպես մեր հասարակարգի հիմքի։ Սոցիալիստական սեփականությունը հարուստ բովանդակություն ունի, ներառում է արտադրության միջոցների և արդյունքների օգտագործման նկատմամբ մարդկանց, կոլեկտիվների, ճյուղերի, երկրի ռեգիոնների փոխհարաբերությունների բազմակողմանի համակարգը, տնտեսական շահերի մի ամբողջ գամմա։ Հարաբերությունների այդ բարդ կոմպլեքսը պահանջում է որոշակի զուգորդություն և մշտական կարգավորում, առավել ևս, որ այն գտնվում է շարժման մեջ։ Խորապես չիմաստավորելով այդ հարաբերությունները տեսական առումով, մենք չենք կարող գտնել նաև գործնական ճիշտ լուծումներ, հետևաբար և՝ ժամանակին մշակել սոցիալիստական սեփականության նկատմամբ իրոք տնտեսատիրոջ վերաբերմունքի ձևավորման միջոցներ։

Մենք պետք է բարձրացնենք աշխատավորների շահագրգռությունը ժողովրդական հարստության ավելի լավ օգտագործման ու բազմապատկման նկատմամբ։ Ինչպե՞ս լուծել այդ խնդիրը։ Միամիտ կլիներ պատկերացնել, թե իբր տնտեսատիրոջ զգացում կարելի է դաստիարակել խոսքերով։ Սեփականության նկատմամբ վերաբերմունքը ձևավորվում է նախ և առաջ այն ռեալ պայմաններով, որոնցում գտնվում է մարդը՝ արտադրության կազմակերպման, աշխատանքի արդյունքների բաշխման և օգտագործման վրա նրա ազդեցության հնարավորություններով։ Պրոբլեմը, այսպիսով, էկոնոմիկայի մեջ սոցիալիստական ինքնակառավարման հետագա խորացումն է։

Հանրային սեփականության օգտագործման ասպարեզում պետք է վճռականորեն բարձրացնել աշխատավորական կոլեկտիվների դերը: Կարևոր է անշեղորեն կենսագործել այն սկզբունքը, որի համաձայն ձեռնարկություններն ու միավորումները լիովին պատասխանատու են իրենց աշխատանքի անվնասաբերության համար, իսկ պետությունը պատասխանատվություն չի կրում նրանց պարտավորությունների համար: Հենց սա է տնտհաշվարկի էությունը: Չի կարելի երկրի տեր լինել առանց իր գործարանում կամ կոլտնտեսությունում, արտադրամասում կամ ֆերմայում իսկական տեր լինելու: Աշխատավորական կոլեկտիվը պարտավոր է պատասխան տալ ամեն ինչի համար, հոգ տանել հանրային հարստության ավելացման մասին: Դրա բազմապատկումը, ինչպես նաև կորուստները պետք է անդրադառնան կոլեկտիվի յուրաքանչյուր անդամի եկամուտների մակարդակի վրա: **(Ծափահարություններ):**

Եվ, իհարկե, հարկավոր է հուսալի պատնեշ կանգնեցնել հանրային սեփականությունից անաշխատ եկամուտներ կորզելու ամեն տեսակ փորձերի դեմ: Չէ որ մեզանում չեն վերացվել «թոցնողները», որոնք հանցագործություն չեն համարում ձեռնարկություններից կրել-տանել այն ամենը, ինչ ձեռքներն է ընկնում, ասենք, նաև ամեն կարգի կաշառակերներն ու գոփողները, որոնք չեն խորշում իրենց պաշտոնական դիրքն օգտագործել շահադիտական նպատակներով: Թե՛ նրանց, թե՛ մյուսների նկատմամբ հարկավոր է գործադրել օրենքի ամբողջ ուժը, հասարակական դատապարտման ամբողջ ուժը: **(Երկարատև ծափահարություններ):**

Ուշադրության է արժանի նաև սոցիալիստական սեփականության հարաբերությունների կարգավորման այնպիսի հրատապ պրոբլեմ, ինչպիսին է ճյուղերի ու ռեգիոնների շահերի նկատմամբ համաժողովրդական շահերի պարտադիր գերադասության ապահովումը: Մինիստրություններն ու գերատեսչությունները, տերիտորիալ մարմինները ոչ թե արտադրամիջոցների սեփականատերեր են, այլ միայն պետական կառավարման հաստատություններ, որոնք հասարակության առաջ պատասխանատու են ժողովրդական սեփականության արդյունավետ օգտագործման համար: Եվ մենք չենք կարող թույլ տալ, որ գերատեսչականությունն ու տեղայնությունը խանգարեն սոցիալիստական սեփականության առավելությունների իրացմանը: **(Ծափահարություններ):**

Մենք կոոպերատիվ սեփականության հարցում ևս լիակատար պարզության կողմն ենք: Այն ամենևին էլ չի սպառել իր հնարավորությունները սոցիալիստական արտադրության ասպարեզում, մարդկանց պահանջմունքների ավելի լավ բավարարման գործում: Շատ կոլտնտեսություններ, այլ կոոպերատիվ կազմակերպություններ գործերի արդյունավետ վարման օրինակներ են տալիս: Եվ այնտեղ, ուր անհրաժեշտություն կա, հարկավոր է ըստ ամենայնի պաշտպանել կոոպերատիվ ձեռնարկությունների ու կազմակերպությունների ստեղծումն ու զարգացումը: Դրանք պետք է լայն տարածում գտնեն արտադրանքի արտադրության ու վերամշակման, բնակարանային ու այգեբանջարանոցային շինարարության մեջ, կենցաղային սպասարկման և առևտրի ոլորտում:

Ժամանակն է հաղթահարել նաև նախատրամադրվածությունը **ապրանքադրամական հարաբերությունների** նկատմամբ, էկոնոմիկայի պլանային ղեկավարման պրակտիկայում դրանց թերագնահատումը: Մարդկանց շահագրգռության, արտադրության արդյունավետության բարձրացման վրա դրանց ակտիվ ներգործության կարևորության ժխտումը թուլացնում է տնտհաշվարկը, ուրիշ անցանկալի հետևանքներ առաջացնում: Եվ ընդհակառակը, սոցիալիստական հիմքի վրա ապրանքադրամական հարաբերությունների առողջ գործառությունը ընդունակ է ստեղծել այնպիսի իրադրություն, տնտեսավարման այնպիսի պայմաններ, երբ նրա արդյունքներն ամբողջովին կախված են կոլեկտիվի աշխատանքի որակից, ղեկավարների հմտությունից ու ձեռներեցությունից:

Այսպիսով, ընկերներ, մենք պարտավոր ենք նորից ու նորից գնահատել ստեղծված վիճակը և վճռականորեն վերակառուցել այն, ինչ հնացել է, սպառել իրեն: Կուսակցական ակտիվի, բոլոր կադրերի կողմից այդ խնդրի խոր ըմբռնումը, լայն



զանգվածների կողմից դրա գիտակցումը հաջողության անհրաժեշտ պայմանն է, տնտեսական նոր մեխանիզմի, կառավարման ամբողջ համակարգի ստեղծման բացառիկ պատասխանատու գործի մեկնակետը: **(Ծափահարություններ):**

## 4. Տնտեսական աճի ռեզերվները՝ գործողության մեջ

Ընկերնե՛ր: Կուսակցությունը մշակել է ժողովրդական տնտեսության մեջ խոր վերափոխումների ստրատեգիա և ձեռնամուխ եղել դրանց իրագործմանը: Դրանք, անտարակույս, թույլ կտան արագացնել էկոնոմիկայի զարգացումը: Բայց դա քիչ ժամանակ չի պահանջի, իսկ աճի տեմպերի արագացմանը մենք պետք է հասնենք առանց հապաղելու, արդեն այսօր: Տասներկուերորդ հնգամյակի յուրահատկությունն էլ հենց այն է, որ գիտատեխնիկական նոր բազայի վրա ժողովրդական տնտեսության վերազինումը իրականացվի առաջընթացի տեմպերը միաժամանակ արագացնելու պայմաններում:

Այստեղից բխում է մեր բոլոր ռեզերվների առավելագույնս մոբիլիզացման անհրաժեշտությունը, և ավելի խելամիտ է սկսել նրանցից, որոնք խոշոր ծախսումներ չեն պահանջում, բայց տալիս են արագ ու շոշափելի արդյունք: Խոսքը կազմակերպական-տնտեսական և սոցիալ-հոգեբանական գործոնների, ստեղծված արտադրական պոտենցիալի ավելի լավ օգտագործման, աշխատանքի խթանման ներգործության բարձրացման, կազմակերպվածության ու կարգապահության ամրապնդման, անտնտեսվարության հաղթահարման մասին է: Մեզանում ռեզերվները ձեռքի տակ են, շահագրգռության, սրտացավ տնօրինման դեպքում դրանք մեծ հատույց կտան:

Նայեցեք գործող կարողություններին: Երկրում հիմնական արտադրական ֆոնդերը անցել են մեկուկես տրիլիոն ռուբլուց, բայց ամենուրեք չէ, որ դրանք պատշաճ կերպով են օգտագործվում: Դա վերաբերում է մի շարք ճյուղերի՝ մեքենաշինությանը, ծանր արդյունաբերությանը, էներգետիկային, գյուղատնտեսությանը: Առանձնապես տագնապ է պատճառում այն, որ ֆոնդերի առավել ակտիվ մասը՝ մեքենաները, սարքավորումը, հաստոցները հաճախ պարապուրդ են տալիս կամ թերբեռնված են աշխատում: Մետաղամշակման մեջ, օրինակ, մետաղահատ հաստոցներն օգտագործվում են մեկ հերթափոխից փոքր-ինչ ավելի: Ընդհանուր առմամբ կարողությունների ոչ լրիվ բեռնվածության պատճառով երկիրը տարեկան պակաս է ստանում միլիարդավոր ռուբլիների արդյունաբերական արտադրանք: Պլանային ու տնտեսական մարմինները, ձեռնարկությունների կոլեկտիվները պետք է հնարավոր ամեն բան անեն, որպեսզի ստեղծված կարողությունները գործեն նախագծային մակարդակով: Միայն ծանր արդյունաբերության մեջ դա թույլ կտար գրեթե կրկնապատկել արտադրանքի աճի տեմպերը:

Մեզ խանգարում է նաև կոոպերացված մատակարարումների թույլ կարգապահությունը: Մի տեղում դրանց խախտումը ալիքի նման տարածվում է ամբողջ ժողովրդական տնտեսության մեջ, նվազեցնում էկոնոմիկայի արդյունավետությունը: Նկատելի վնաս է հասցնում նաև արտադրության անհամաչափությունը: Գաղտնիք չէ, որ շատ ձեռնարկություններ ամսվա սկզբին ավելի շատ պարապուրդ են տալիս, քան աշխատում: Փոխարենը վերջում սկսում է գրոհայնությունը և, որպես հետևանք՝ արտադրանքի ցածր որակ: Հարկավոր է արմատախիլ անել այդ հին հիվանդությունը: Կոոպերացված մատակարարումների խստիվ կատարումը թե՛ աշխատավորական կոլեկտիվների պարտականությունն է և թե կառավարման բոլոր օղակների: Մենք չենք կարող նախատեսվածին հասնել, եթե կարգուկանոն չհաստատենք պլանավորման ու մատակարարման գործում, անհրաժեշտ ռեզերվներ չստեղծենք, բոլոր մակարդակներում չբարձրացնենք նյութական պատասխանատվությունը անկարգապահության ու խոտանի համար:

Ռեզերվները մեծ են նաև աշխատանքային ռեսուրսների օգտագործման ասպարեզում: Որոշ տնտեսական աշխատողներ պատճառ են բռնում աշխատուժի պա-

կասը: Կարծում եմ, մեծ մասամբ այդ բողոքներն անհիմն են: Եթե խորամուխ լինենք, ապա կարելի է նկատել, որ աշխատուժի դեֆիցիտ չկա: Փոխարենն առկա է աշխատանքի արտադրողականության ցածր մակարդակ, դրա ոչ բավարար բարձր կազմակերպում, անարդյունավետ խթանում: Դրան ավելացնել է պետք նաև պլանային և տնտեսական մարմինների չհիմնավորված որոշումները, որոնք ավելորդ աշխատատեղերի ստեղծում են թույլ տալիս: Լավ հայտնի է, որ մեր որոշ ձեռնարկություններ, կոնստրուկտորական բյուրոներ, հետազոտական ինստիտուտներ աշխատանքի նույն ծավալի դեպքում զգալիորեն շատ աշխատակիցներ ունեն, քան նմանօրինակ կազմակերպություններն արտասահմանում:

Հենց որ ձեռնարկություններում սկսում են լրջորեն զբաղվել աշխատանքի կազմակերպումն ու խթանումը բարելավելու գործով, բարձրացնել կարգապահությունն ու պահանջկոտությունը, ի հայտ են գալիս ռեզերվներ, որոնց մասին առաջ մտքներովն իսկ չէին անցկացրել: Դրա համոզիչ հաստատումն է շչոկինյան մեթոդի, աշխատատեղերի ատեստավորման կիրառումը: Բելոռուսիայի երկաթուղայինները, անցնելով աշխատանքի վարձատրության, պարտականությունների համատեղման նոր համակարգի, կարճ ժամանակամիջոցում այլ ճյուղերի համար ազատեցին մոտ 12 հազար աշխատողներ:

Եվ, իհարկե, ավելի մեծ ուշադրություն պետք է նվիրել արտադրության մեքենայացմանն ու ավտոմատացմանը: Այդ հարցը լուծելիս պարտադիր չէ սպասել, թե երբ են որևէ տեղ նախագծելու և կառուցելու այս կամ այն մեքենան կամ հարմարանքը: Շատ բան կարելի է անել սեփական ուժերով: Դրան ձեռնամուխ եղան, օրինակ, Զապորոժիեի մարզում և կարողացան երեք տարում արդյունաբերության մեջ ձեռքի աշխատանքներով զբաղվածների թիվը կրճատել 9, իսկ շինարարության մեջ՝ 15 տոկոսով: Կարծում եմ, որ մյուս մարզերում, երկրամասերում ու հանրապետություններում հնարավորությունները պակաս չեն: Կարևոր է միայն զբաղվել դրանով՝ համառորեն ու շահամետ կերպով, հիշելով այն մարդկանց մասին, ովքեր ստիպված են աշխատել ձեռքով, հիշելով արտադրանքի արտադրության վրա կատարվող ծախսումների կրճատման մասին:

Առհասարակ, ընկերներ, էկոնոմիկայի ռեզերվները հսկայական են: Դրանցից շատերի օգտագործմանը մենք դեռ ինչպես հարկն է ձեռնամուխ չենք եղել: Տարբեր մակարդակների ղեկավարների զգալի մասի հոգեբանությունը ձևավորվել է ռեսուրսների առատության պայմաններում: Նման հարստությունը շատերին է երևս տվել, հանգեցրել վատնողության: Բայց վիճակը վաղուց փոխվել է: Չկա աշխատուժի նախկին ներհոսը, մենք սկսել ենք թանկ վճարել յուրաքանչյուր տոննա նավթի, հանքաքարի, ածխի հանույթի և փոխադրման համար: Այս փաստերի առաջ չի կարելի աչք փակել, դրանց հետ պետք է հաշվի նստել: Եվ տնտեսել ամեն ինչում ու ամենուրեք՝ արտադրությունում և կենցաղում, անտարբեր չանցնել անտնտեսվարության ու վատնողության կողքով: **(Ծափահարություններ):** Արդեն այս տարի մենք պետք է ազգային եկամտի գրեթե ամբողջ աճն ապահովենք աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին՝ նվազեցնելով նրա նյութատարությունն ու էներգատարությունը:

Դա հեշտ խնդիրներից չէ, բայց այն միանգամայն կարելի է լուծել: Առավել ևս, երբ երկրում կուտակվել է ռեսուրսների նկատմամբ խնայողական վերաբերմունքի փորձ, բայց այն դանդաղ է տարածվում: Կուսակցական, կոմերիտական, արհմիութենական կազմակերպությունները պետք է մշտապես իրենց տեսադաշտում պահեն խնայողության հարցերը, պաշտպանեն նրանց, ովքեր տնտեսում և ռացիոնալ կերպով են ծախսում հումքը, էլեկտրաէներգիան, վառելիքը: Հարկավոր է այնպիսի հաստատուն կարգ սահմանել, որ ռեսուրսների գերածախսը լինի ոչ ձեռնտու, իսկ խնայողությունը շոշափելիորեն վարձատրվի: **(Ծափահարություններ):**

Հատկապես կցանկանայի առանձնացնել **արտադրանքի որակի** պրոբլեմը: Քիչ է ասել, թե դա մեր անմիջական և խոշոր ռեզերվն է: Առանց բարձր որակի այսօր անհնար է արագացնել գիտատեխնիկական առաջադիմությունը: Կոնստրուկտորական թերացումների, տեխնոլոգիայից կատարված նահանջների, անորակ նյութերի օգտագործման, վատ հարդարման պատճառով մենք նյութական ու բարոյական մեծ



կորուստներ ենք կրում: Տուժում են մեքենաների ու սարքերի ճշգրտությունն ու հուսալիությունը, բնակչության՝ ապրանքների ու սպասարկման պահանջմունքի բավարարումը: Անցյալ տարի ձեռնարկություններին են վերադարձվել կամ ցածր սորտերի են իջեցվել միլիոնավոր մետրերով գործվածք, միլիոնավոր զույգ կաշվե կոշիկ, ժողովրդական սպառման ուրիշ շատ ապրանքներ: Վնասը զգալի է՝ փչացվել է հումք, արժեզրկվել հարյուր հազարավոր բանվորների աշխատանք: Անհրաժեշտ է ձեռնարկել արմատական միջոցներ, որոնք բացառեն խոտան արտադրանքի, ցածրորակ ապրանքների թողարկումը: Դրա համար պետք է կիրառել նյութական և վարչական ներգործության ամբողջ ուժը, օգտագործել մեր օրենքները: Ըստ երևույթին, անհրաժեշտություն կա նաև հատուկ օրենք ընդունել արտադրանքի որակի մասին:

Վերջերս ՍՄԿԿ Կենտկոմը դիմեց կուսակցական կոմիտեներին, սովետական ու տնտեսական մարմիններին, արհմիութենական ու կոմերիտական կազմակերպություններին, բոլոր աշխատավորներին՝ կոչ անելով առավելագույն ջանքեր գործադրել արտադրանքի որակն արմատապես բարելավելու համար: Այդ խնդիրը պետք է դառնա յուրաքանչյուր կոմունիստի, յուրաքանչյուր սովետական մարդու, բոլոր նրանց գործը, ովքեր հարգում են իրենց աշխատանքը, ովքեր անտարբեր չեն ձեռնարկության, ճյուղի պատվի, մեր հայրենիքի պատվի նկատմամբ: **(Երկարատև ծափահարություններ):**

Առաջիկայում մենք շատ աշխատանք ունենք անելու՝ պատասխանատու, լարված աշխատանք: Հնգամյակի առաջին տարին համառ աշխատանքի, յուրաքանչյուր ղեկավարի և աշխատավորական կոլեկտիվի գործնական քննության տարի է: Մենք պարտավոր ենք դիմանալ այդ քննությանը, արտադրության մեջ ներգրավել էկոնոմիկայի բոլոր ռեզերվները, ամրապնդել հետագա վերափոխումների հիմքը:

Առաջադրված նպատակին հասնելու վճռական պայմանը սովետական մարդկանց աշխատասիրությունն ու տաղանդն է: Մնում է այդ մեծ ուժը հմտորեն կազմակերպել, նրան ճիշտ ուղղություն տալ: Եվ այստեղ դժվար է գերագնահատել սոցիալիստական մրցության դերը: Այն պետք է նպատակամղված լինի աշխատանքի որակի բարձրացմանը, տնտեսմանն ու խնայողությանը, յուրաքանչյուր կոլեկտիվում, յուրաքանչյուր աշխատատեղում նախատեսված բնագծերին հասնելուն: Ոգևորությունն ու անճող վարպետությունը եղել են և, մենք վստահ ենք, այսուհետև ևս կլինեն մեր հուսալի հենարանը: **(Ծափահարություններ):**

## Գ) ՍՈՑԻԱԼԱԿԱՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՀԻՄՆԱԿԱՆ ՈՒՂՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

Ընկերնե՛ր: Մեր կուսակցության ուշադրության կենտրոնում միշտ եղել են սոցիալական քաղաքականության հարցերը, մարդու նկատմամբ հոգատարությունը:

Սոցիալական ոլորտն ընդգրկում է դասակարգերի ու սոցիալական խմբերի, ազգերի ու ազգությունների շահերը, հասարակության ու անհատի հարաբերությունները, աշխատանքի ու կենցաղի, առողջության ու ժամանցի պայմանները: **Հենց այդ ոլորտում են իրացվում աշխատավորների կենսական շահերը շոշափող տնտեսական գործունեության արդյունքները, մարմնավորվում սոցիալիզմի բարձրագույն նպատակները: Հենց այստեղ է առավել լայնորեն ու ակնբախորեն դրսևորվում սոցիալիստական հասարակարգի մարդասիրական բնույթը, այդ հասարակարգի որակական տարբերությունը կապիտալիզմից:**

Սոցիալիզմը վերացրեց սոցիալական անարդարության գլխավոր աղբյուրը՝ մարդու կողմից մարդու շահագործումը, արտադրամիջոցների նկատմամբ անհավասարությունը: Սոցիալական արդարությունն ընդգրկում է սոցիալիստական հասարակության հարաբերությունների բոլոր կողմերը: Այն արտահայտվում է ռեալ ժողովրդական հարաբերությունների բոլոր կողմերը: Այն արտահայտվում է ռեալ ժողովրդավարության մեջ, ազատության մեջ և օրենքի առջև բոլոր քաղաքացիների հավասարության մեջ, ազգերի փաստական իրավահավասարության, անհատի նկատմամբ հարգանքի, նրա բազմակողմանի զարգացման համար պայմանների ստեղծման մեջ: Դա նաև սո-

ցիալական լայն երաշխիքներն են՝ աշխատանքով ապահովվածությունը, կրթության, մշակույթի, բժշկական սպասարկման ու բնակարանի մատչելիությունը, հոգատարությունը զառամյալների, մայրության ու մանկության նկատմամբ:

Սոցիալական արդարության սկզբունքի խստիվ կիրառումը ժողովրդի միասնության, հասարակության քաղաքական կայունության, զարգացման դինամիզմի կարևոր պայմանն է:

Բայց կյանքը, ինչպես ասում են, տեղում կանգնած չէ, և մենք պետք է նորովի նայենք սոցիալական ոլորտի հետագա զարգացմանը, լրիվ ծավալով գնահատենք նրա հարաճուն նշանակությունը: Դրան են մեզ պարտավորեցնում կուսակցության մշակած սոցիալ-տնտեսական արագացման գլխավոր կուրսը, մեր կուսակցության ծրագրային նպատակը՝ հասնել հասարակության բոլոր անդամների լիակատար բարեկեցության և ազատ, բազմակողմանի զարգացման:

Սոցիալական հարցերի նկատմամբ մեզանից ավելի մեծ ուշադրություն են պահանջում նաև անցյալի դասերը: Կուսակցության Կենտրոնական կոմիտեն գտնում է, որ կենտրոնի և տեղական մարմինների կողմից թույլ է տրվել երկրի սոցիալ-կուլտուրական ոլորտի նյութական բազայի հասունացած պրոբլեմների թերագնահատում: Դրա հետևանքով, ըստ էության, ձևավորվել է այդ ոլորտի զարգացման համար ռեսուրսների առանձնացման մնացորդային սկզբունքը: Տեխնոկրատական մոտեցումների հայտնի հակումը թուլացրել է ուշադրությունը արտադրության սոցիալական կողմի, կենցաղի, ժամանցի նկատմամբ, ինչը չէր կարող չհանգեցնել աշխատանքի արդյունքներով աշխատավորների շահագրգռության նվազման, կարգապահության թուլացման և այլ բացասական երևույթների:

Մեզ համար ամենևին էլ միևնույնը չէ, թե ինչ ուղիներով ու միջոցներով է ձեռք բերվում նյութական և հոգևոր կյանքի բարելավումը, ինչ սոցիալական հետևանքների է այն հանգեցնում: Եթե սկսում են ի հայտ գալ մասնավոր սեփականատիրական, խնամառուական տրամադրություններ, համահարթման միտումներ, ուրեմն ինչ-որ բան ճիշտ չէ մեր աշխատանքի ուղիների ու միջոցների ընտրության գործում և շտկման կարիք ունի: Նախահամագումարյան փաստաթղթերի քննարկման ընթացքում կոմունիստներն ու անկուսակցականներն անհանգստությամբ էին խոսում աշխատանքի ու սպառման չափի վերահսկողության թուլացման, սոցիալիստական արդարության պահանջների խախտման փաստերի մասին, անաշխատ եկամուտների դեմ պայքարի ուժեղացման անհրաժեշտության մասին: Չի կարելի չտեսնել այդ հարցերի լրջությունն ու նշանակալիությունը: **(Ծափահարություններ):**

Մի խոսքով, զարգացման ձեռք բերված մակարդակը, նոր խնդիրների մասշտաբները առաջադրում են այնպիսի երկարաժամկետ, խորապես կշռադատված, ամբողջական, ուժեղ սոցիալական քաղաքականության պահանջ, որն ընդգրկեր հասարակական կյանքի բոլոր կողմերը: Անհրաժեշտ է, որ պլանավորման ու կառավարման մարմինները, կենտրոնական և տեղական տնտեսական կազմակերպությունները վճռական շրջադարձ կատարեն դեպի սոցիալական ոլորտի պահանջմունքները:

Սոցիալական քաղաքականության խնդիրները հանգամանորեն բնութագրված են կուսակցության ծրագրի և Հիմնական ուղղությունների նախագծերում: Թույլ տվեք կանգ առնել դրա իրականացման մի քանի հարցերի վրա:

## 1. Անշեղորեն բարձրացնել ժողովրդի բարեկեցությունը, հետևողականորեն հաստատել սոցիալական արդարությունը

Երկրի սոցիալ-տնտեսական զարգացման հեռանկարային պլաններում նախատեսվում է **ժողովրդի բարեկեցությունը բարձրացնել որակապես նոր աստիճանի:** Առաջիկա 15 տարում կենսապայմանների բարելավմանը տրամադրվելիք ռեսուրսների ծավալը ենթադրվում է կրկնապատկել: Բնակչության մեկ շնչին ընկնող ռեալ



եկամուտները բարձրացնել 1,6—1,8 անգամ: Տասներկուերորդ հնգամյակում եկամուտների բարձրացումը կընդգրկի միլիոնավոր մարդկանց: Հսկայական միջոցներ են ուղղվում բնակարանային և սոցիալ-կուլտուրական շինարարության ընդլայնմանը: Այսպիսիք են պլանները: Բայց պետք է ասել գլխավորի մասին. այդ պլանները իրողություն կդառնան միայն սովետական յուրաքանչյուր մարդու լարված ու արդյունավետ աշխատանքի դեպքում: Յուրաքանչյուրի՝ ինչ աշխատատեղում էլ որ նա աշխատելիս լինի, ինչ պոստ էլ որ նա գրավելիս լինի: Ինչ որ մենք ինքներս անենք, այն էլ կունենանք, այնպես էլ կապրենք: **(Երկարատև ծափահարություններ):**

Սոցիալիստական վերափոխումներն արմատապես փոխել են թե աշխատանքի նշանակությունը, թե աշխատանքի նկատմամբ բանվորական և գյուղացիական զանգվածների վերաբերմունքը: Դա առանձնապես ցայտուն է դրսևորվում սոցիալիստական մրցության մասսայական զարգացման մեջ: Հենվելով հարստագույն փորձի վրա, կուսակցությունը մտադիր է այսուհետև նույնպես զարգացնել այդ ավանդույթները, ձևավորել աշխատանքի՝ որպես հասարակական ամենաառաջնագույն պարտքի, նկատմամբ գիտակցական, ստեղծագործական վերաբերմունք:

Հաշվետու-ընտրական ժողովներում, կոնֆերանսներում կոմունիստները ճիշտ կերպով առաջադրեցին ոչ միայն բարոյական խրախուսման ձևերի կատարելագործման, այլև նյութական խթանման վճռական բարելավման, այդ կարևոր գործում պատշաճ կարգուկանոնի հաստատման հարցը: Արդարացիորեն մատնանշվում էր այսպես կոչված «կլորացման», անաշխատ փողերի վճարման, չվաստակած պարգևների ստացման, աշխատավարձի «երաշխավորված» այնպիսի չափերի սահմանման անթույլատրելիությունը, որոնք կապված չեն աշխատողի աշխատանքային ավանդի հետ: Այս առթիվ հարկավոր է միանգամայն որոշակիորեն ասել. երբ լավ աշխատողի ու անփույթ աշխատողի աշխատանքը վարձատրվում է միատեսակ, ապա դա մեր սկզբունքների կոպիտ խախտում է: Եվ, ամենից առաջ, սոցիալիզմի հիմնական՝ «Յուրաքանչյուրից՝ ըստ ընդունակությունների, յուրաքանչյուրին՝ ըստ աշխատանքի» սկզբունքի անթույլատրելի աղավաղում է, սկզբունք, որի մեջ ամփոփված է նոր հասարակարգի սոցիալական արդարության էությունը:

Հարկավոր է, որ աշխատավարձի բնագավառում պետության քաղաքականությունը ևս ապահովի աշխատավարձի խստիվ կախվածությունը աշխատանքի քանակից ու որակից: Այդ բանի հաշվառմամբ, արտադրական ճյուղերում բանվորների և ծառայողների դրույքների ու ռոճիկների տասներկուերորդ հնգամյակի համար նախատեսվող բարձրացումը առաջին անգամ տեղի կունենա հիմնականում ձեռնարկությունների վաստակած միջոցների հաշվին և այդ միջոցների սահմաններում: **(Ծափահարություններ):** Նման կարգն ավելի ակտիվորեն կներգործի տեխնիկական առաջադիմության արագացման, արտադրության արդյունավետության բարձրացման վրա: Ոչ արտադրական ոլորտում դրույքներն ու ռոճիկները կբարձրանան կենտրոնացված աղբյուրների հաշվին: Անցյալ տարի սկսվեց բժիշկների և առողջապահության մյուս աշխատողների աշխատավարձի փուլ առ փուլ բարձրացումը: 1987 թվականին նախատեսվում է ավարտել ժողովրդական կրթության աշխատողների դրույքների ու աշխատավարձերի ավելացումը և ձեռնամուխ լինել կուլտուրայի աշխատողների աշխատավարձի բարձրացմանը: Միջոցառումներ են իրականացվում Արևելյան Սիբիրի և Հեռավոր Արևելքի մի շարք շրջաններում բանվորների ու ծառայողների աշխատավարձի չափերում առավելությունների ընդլայնման նպատակով:

Աշխատավորների բազմաթիվ առաջարկություններում բարձրացվում է արդարության սկզբունքի իրականացման գործում սպառման հանրային ֆոնդերի դերի հարցը: Արդեն այժմ դրանց ընկնում է օգտագործվող նյութական բարիքների և սպասարկումների մեկ երրորդ մասը: Մենք ելնում ենք այն բանից, որ դրանք ամենևին էլ բարեգործական ֆոնդեր չեն: Դրանք կարևոր դեր են խաղում այն բանում, որ հասարակության բոլոր անդամները հավասարապես ապահովված լինեն կրթության ու մշակույթի մատչելիությամբ, երեխաների դաստիարակության համահավասար պայմաններով, որ հեշտացվի բոլոր նրանց կյանքը, ովքեր այս կամ այն հանգամանքների բերումով միանվագ կամ մշտական օգնության կարիք ունեն: Միաժամանակ դա նաև որակյալ, բարեխիղճ աշխատանքի խրախուսման, խթանման մի-

ջոց է: Կուսակցությունը մտադիր է այսուհետև էլ վարել հանրային ֆոնդերի հետագա աճի և ավելի արդյունավետ օգտագործման գիծը: Տասներկուերորդ հնգամյակում դրանց ծավալը կմեծանա 20—23 տոկոսով:

Սոցիալիստական պետության կարևոր ֆունկցիան պայքարն է անաշխատ եկամուտների դեմ: Այսօր մենք պետք է խոստովանենք, որ վերահսկողության թուլացման հետևանքով և մի շարք այլ պատճառներով հայտնվել են մարդկանց խմբեր, որոնք ունեն պարզորոշ արտահայտված սեփականատիրական ձգտումներ, հասարակական շահերի նկատմամբ արհամարհական վերաբերմունք:

Աշխատավորները արդարացիորեն դնում են այդպիսի երևույթներն արմատախիլ անելու հարցը: Կենտրոնական կոմիտեն լիովին պաշտպանում է այդ պահանջները: **(Երկարատև ծափահարություններ):** Անհրաժեշտ է համարված արդեն առնմոտ ժամանակներս իրականացնել լրացուցիչ միջոցառումներ՝ ուղղված պորտաբույծների, սոցիալիստական սեփականության հափշտակողների, կաշառակերների դեմ, նրանց դեմ, ովքեր բռնել են մեր կարգերի աշխատավորական բնույթին խորթ ուղի: **(Ծափահարություններ):**

Պետք է լավ քննել նաև հարկային քաղաքականության կատարելագործման, այդ թվում՝ ժառանգության պրոգրեսիվ հարկի վերաբերյալ առաջարկությունները:

Բայց, անաշխատ եկամուտների առաջն առնելով, չի կարելի թույլ տալ, որ ստվեր ընկնի նրանց վրա, ովքեր ազնիվ աշխատանքով են լրացուցիչ վաստակ ստանում: Ավելին, պետությունը կնպաստի բնակչության պահանջարկի բավարարման և սպասարկման մատուցման տարբեր ձևերի զարգացմանը: Հարկավոր է ուշադրությամբ քննության առնել անհատական-աշխատանքային գործունեության կարգավորման առաջարկությունները: Իհարկե, աշխատանքի նման տեսակները պետք է լիովին համատեղվեն սոցիալիստական տնտեսավարման սկզբունքների հետ, հենվեն կամ կոոպերատիվ սկզբունքների, կամ սոցիալիստական ձեռնարկությունների հետ կնքված պայմանագրերի վրա: Հասարակությունը, բնակչությունը դրանից միայն կշահեն: **(Ծափահարություններ):**

Բաշխման հարաբերությունների կատարելագործման բոլոր ջանքերը սակավարդյունավետ կլինեն, իսկ ժողովրդի բարեկեցության բարձրացման խնդիրը՝ չկատարված, եթե մենք չկարողանանք **շուկան հագեցնել բազմազան ապրանքներով ու սպասարկումներով:** Դրան էլ նպատակամղված է ժողովրդական սպառման ապրանքների արտադրության ու սպասարկման ոլորտի զարգացման կոմպլեքսային ծրագիրը:

Ընթացիկ հնգամյակում պետք է ապահովվեն սպառման առարկաների արտադրության, մանրածախ ապրանքաշրջանառության աճի ավելի բարձր տեմպեր, զգալիորեն բարելավվի առևտրի ու հասարակական սննդի կազմակերպումը: Ծանր արդյունաբերության ճյուղերի առջև խնդիր է դրված արդյունաբերական ապրանքների արտադրության մեջ ներգրավել բոլոր ձեռնարկությունները, թեթև և սննդի արդյունաբերության համար ապահովել բարձրորակ նյութերի ու սարքավորումների թողարկում:

Պահանջվում է որքան կարելի է արագ ստեղծել սպասարկման ժամանակակից ոլորտ: Դա կենտրոնական կազմակերպությունների խնդիրն է, բայց ոչ պակաս, իսկ գուցե և ավելի շատ՝ միութենական հանրապետությունների մինիստրների խորհուրդների, տեղական իշխանության բոլոր մարմինների խնդիրը: Պետք է վճռական միջոցներ ձեռնարկվեն սպասարկումների պահանջարկի և դրանց առաջարկի միջև եղած խիստ անհամամասնությունը վերացնելու համար: Նախ և առաջ այն սպասարկումների, որոնք կապված են տնային աշխատանքի հեշտացման, բնակարանների բարեկարգման ու նորոգման, տուրիզմի, ավտոսպասարկման հետ, որոնց նկատմամբ պահանջմունքը հատկապես արագ է աճում: Աշխատավորների առաջարկությունները հաշվի առնելով, մենք դիմել ենք կոլեկտիվ այգեգործության լայն զարգացման: Գործը տեղից շարժվել է: Բայց այս աշխատանքը պետք է շարունակել՝ վերացնելով բոլոր արհեստական խոչընդոտները:

**Բնակարանային պրոբլեմի** սոցիալական նշանակալիությունն ու սրությունն էլ կանխորոշում են դրա նկատմամբ մեր վերաբերմունքի լրջությունը: Մինչև 2000 թվականը յուրաքանչյուր ընտանիքի առանձին բնակարանով կամ տնով ապահո-



վելն ինքնըստինքյան վիթխարածավալ, բայց իրագործելի խնդիր է: Ընթացիկ հնգամյակում և հատկապես հաջորդ հնգամյակներում կմեծանան բնակարանային շինարարության և բնակարանային ֆոնդի վերակառուցման մասշտաբները: Անհրաժեշտ է ըստ ամենայնի խրախուսել կոոպերատիվ և անհատական բնակարանների շինարարությունը: Այստեղ բնակարանային շինարարության ընդլայնման մեծ ռեզերվներ կան: Ճիշտ են վարվում այնտեղ, որտեղ պաշտպանում են երիտասարդական համալիրների կառուցումը: Երիտասարդների շահագրգռությունն ու եռանդը կարող են շատ բան անել նաև այդ առումով:

Քիչ չի խոսվում բնակարանների բաշխման պրակտիկան լրջորեն բարելավելու անհրաժեշտության մասին: Այդ հարցերը պետք է լուծվեն լայն դեմոկրատական հիմքի վրա, գտնվեն մշտական հասարակական վերահսկողության ներքո: Ուշադրության են արժանի այն առաջարկությունները, որ արդարացի փոփոխություններ մտցվեն բնակվարձի համակարգի մեջ՝ այն սերտորեն շաղկապելով ամբողջ զբաղեցված տարածության չափերի ու որակի հետ: Շատ դժգոհությունների տեղիք է տալիս բնակարանային շինարարության ցածր որակը: Այս կապակցությամբ անհրաժեշտ է մշակել այնպիսի միջոցառումներ, որոնք խթանեին այդ շինարարության որակի էական բարձրացումը, ինչպես նաև մեր քաղաքների ու գյուղերի հատակագծման, բարեկարգման ճարտարապետության բարելավումը:

Ընկերնե՛ր: Սոցիալական ոլորտում որակական տեղաշարժերն անհնար են առանց **աշխատանքի բովանդակության մեջ խոր վերափոխումներ կատարելու:** Այստեղ հիմնական դերը կոչված է խաղալու ժողովրդական տնտեսության տեխնիկա- խիստ նվազեցնել ձեռքի աշխատանքի բաժինը, իսկ մինչև 2000 թվականը այն կան վերակառուցումը՝ մեքենայացումը, ավտոմատացումը, կոմպյուտերացումն ու ռոբոտացումը, որը, ուզում եմ սա հատկապես ընդգծել, պետք է ունենա հստակ սոցիալական ուղղվածություն: Արդեն ընթացիկ հնգամյակում նախատեսվում է արտադրական ոլորտում պակասեցնել 15—20 տոկոսով, ձեռքի գործողություններից ազատել միլիոնավոր մարդկանց: Գիտատեխնիկական հեղափոխության պայմաններում աշխատանքի հետագա վերափոխումները բարձր պահանջներ են ներկայացնում մարդկանց կրթական և պրոֆեսիոնալ պատրաստությանը: Ըստ էության, օրակարգի հարց է դարձել **շարունակական կրթության միասնական համակարգի ստեղծման** խնդիրը:

Կենտրոնական կոմիտեն վերջին տարիներս կարևոր քայլեր է ձեռնարկել այդ ուղղությամբ: Սկսված է **հանրակրթական և պրոֆեսիոնալ դպրոցի** ռեֆորմը: Պետք է ասել, որ ռեֆորմով նախատեսված միջոցառումների իրականացման տեմպերն ու խորությունը դեռ չեն կարող բավարարել մեզ: Գործի շահերը պահանջում են ավելի խորը դնել ժամանակակից արտադրության գիտական հիմունքների, նրա ինտենսիվացման առաջատար ուղղությունների ուսումնասիրումը: Եվ, որ առանձնապես անհետաձգելի է, ապահովել սովորողների կոմպյուտերային գրագիտությունը: Մի խոսքով, անհրաժեշտ է ավելի լրիվ իրականացնել արտադրողական աշխատանքի հետ ուսուցման միավորման լենինյան սկզբունքը, ավելի վճռականորեն ձգտել ուսուցման արդյունավետության բարձրացմանը, ինքնուրույն կյանքին ու աշխատանքին երիտասարդության նախապատրաստության արմատական բարելավմանը, նոր հասարակության գիտակից կառուցողների դաստիարակմանը:

Կուսակցությունն առաջադրում է **բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթության վերակառուցման** խնդիրը: Վերջին տարիներին մասնագետների թողարկման աճը չի ուղեկցվել նրանց պատրաստության որակի պատշաճ բարձրացմամբ: Լրջորեն ետ է մնացել բարձրագույն դպրոցի նյութական բազան: Զգալի բարելավման կարիք ունի ինժեներատեխնիկական կադրերի օգտագործման պրակտիկան:

Այժմ նախապատրաստված են առաջարկություններ ստեղծված վիճակը փոխելու նպատակով: Հասարակության շահերը պահանջում են բարձրացնել ինժեներային աշխատանքի հեղինակությունը: Պետք է վերանայվի բարձրագույն ու միջնակարգ մասնագիտական կրթության կառուցվածքը, ապահովվի հիմնավոր տեսական գիտելիքների և գործնական ունակությունների տիրապետող մասնագետների պատրաստումը ժամանակակից մակարդակով: Ըստ երևույթին, նոր ձևով պետք է կա-

ռուցել բարձրագույն ու միջնակարգ մասնագիտական դպրոցի փոխհարաբերությունները ժողովրդական տնտեսության ճյուղերի հետ, ուժեղացնել նրանց փոխադարձ շահագրգռությունը կադրերի ուսուցման ու վերապատրաստման մակարդակի բարձրացման, արտադրության մեջ նրանց օգտագործման արմատական բարելավման գործում:

Յուրաքանչյուր մարդու համար, նաև հասարակության համար չկա ավելի արժեքավոր բան, քան առողջությունը: **Մարդկանց առողջության պահպանումը և ամրապնդումը** առաջնակարգ կարևորության գործ է: Առողջության պրոբլեմները մենք պետք է դիտենք սոցիալական լայն դիրքերից: Դա որոշվում է նախ և առաջ աշխատանքի ու կենցաղի պայմաններով, բարեկեցության մակարդակով: Եվ, իհարկե, հսկայական նշանակություն ունի ժողովրդական առողջապահությունը: Անհրաժեշտ է որքան կարելի է ավելի արագորեն, ընդ որում՝ ամենուրեք, բավարարել բնակչության պահանջմունքները բարձրորակ բուժպրոֆիլակտիկ օգնությամբ ու դեղամիջոցներով: Իսկ այս ամենը նորովի է առաջադրում առողջապահության նյութատեխնիկական բազայի, հասունացած գիտական, կազմակերպական և կադրային շատ պրոբլեմների լուծման հարցը: Իհարկե, կպահանջվեն ոչ քիչ միջոցներ, և մենք պետք է գտնենք դրանք:

Վաղուց և ճիշտ է ասված, որ առողջությունը դեղատնից չես գնի: Գլխավորը մարդու ապրելակերպն է, մասնավորապես այն, թե նա որքանով խելամտորեն և արդյունավետ է օգտագործում իր ազատ ժամանակը: Դրա համար հնարավորություններ կան, բայց խիստ կաղում է գործի կազմակերպական կողմը: Շատ բան կախված է հասարակական նախաձեռնությունից, բնակչության ինքնագործունեությունից, բայց քաղաքներում և գյուղերում, աշխատավորական կոլեկտիվներում հաճախ սպասում են ցուցումների և ապավինում վերևի օգնությանը: Ինչո՞ւ ենք մենք վատ օգտագործում այն, ինչ արդեն կա մեր տրամադրության տակ՝ պալատները, ակումբները, ստադիոնները, զբոսայգիները և ուրիշ շատ բան: Ինչո՞ւ սովետները, արհմիությունները, կոմերիտմիությունը ինչպես հարկն է չզբաղվեն այս հարցերով: Ինչո՞ւ շարժում չծավալել ըստ բնակության վայրի պարզագույն մարզահրապարակների ու մարզադահլիճների ավելի ակտիվ շինարարության համար: Վերջապես, ինչո՞ւ չկազմակերպել կոոպերատիվ հիմունքներով մարզական, տուրիստական և այլ ակումբներ:

Երկրում պայքար է ծավալվել հարբեցողության և ալկոհոլիզմի դեմ: Հանուն հասարակության և մարդու առողջության մենք դիմեցինք վճռական միջոցների, պայքար սկսեցինք այն ավանդույթների դեմ, որ առաջացել և արմատավորվել էին դարերով: Չհրապուրվելով ձեռք բերվածով, կարելի է ասել, որ կոնծաբանությունը դուրս է մղվել արտադրությունից, այն ավելի է պակասել հասարակական վայրերում: Առողջանում է մթնոլորտը ընտանիքներում, կրճատվել է արտադրական տրավմատիզմը, ամրապնդվել կարգուկանոնը: Բայց պետք է այսուհետև էլ մեծ, հաստատակամ, բազմազան աշխատանք տանել՝ հաստատված սովորույթների մեջ վերջնական բեկում ապահովելու համար: Այստեղ ոչ մի զիջողություն չպետք է լինի: **(Երկարատև ծափահարություններ):**

Մեր առջև սրությամբ է ծառանում **բնության պահպանության և նրա ռեսուրսների ռացիոնալ օգտագործման** խնդիրը: Սոցիալիզմը արտադրության իր պլանային կազմակերպմամբ և հումանիստական աշխարհայացքով կարող է ներդաշնակություն մտցնել հասարակության և բնության փոխհարաբերությունների մեջ: Մեզ մոտ արդեն այդ ուղղությամբ իրականացվում է միջոցառումների համակարգ, տրամադրվում են միջոցներ և՝ ոչ քիչ: Կան նաև գործնական արդյունքներ:

Եվ, այնուամենայնիվ, մի շարք ռեգիոններում բնական միջավայրի վիճակը տագնապ է հարուցում: Եվ հասարակայնությունը, մեր գրողները ճիշտ են դնում հողի, նրա ընդերքի, լճերի ու գետերի, բուսական և կենդանական աշխարհի նկատմամբ հոգատար վերաբերմունքի հարցը:

Բնության պահպանության գործում աններելիորեն դանդաղ են օգտագործվում գիտատեխնիկական նվաճումները: Նոր ձեռնարկությունների կառուցման և գործողների վերակառուցման նախագծերում դեռևս կիրառվում են հնացած լուծումներ, թույլ են ներդրվում անթափոն և սակավաթափոն տեխնոլոգիական պրոցեսները:



Օգտակար հանածոները վերամշակելիս ստացվող զանգվածի գերակշիռ մասը թափոնի է վերածվում՝ աղտոտելով շրջակա միջավայրը: Այստեղ անհրաժեշտ են տնտեսական, իրավական, դաստիարակչական բնույթի ավելի վճռական միջոցներ: Մենք բոլորս, այսօր ապրողներս, բնության համար պատասխանատու ենք սերունդների առջև, պատմության առջև: **(Ծափահարություններ):**

## 2. Սոցիալ-դասակարգային և ազգային հարաբերությունների կատարելագործումը

Ընկերնե՛ր: Մարքս-լենինյան կուսակցության համար կենսականորեն կարևոր նշանակություն ունի **դասակարգերի, հասարակական խմբերի փոխհարաբերությունների** պրոբլեմների վերլուծությունը: Կոմունիստական կուսակցությունը, իր քաղաքականության մեջ մանրակրկիտ հաշվի առնելով այդ շահերի ընդհանրությունն ու առանձնահատկությունները, ապահովում է հասարակության ամուր միասնությունը, նրա առավել կարևոր ու բարդ խնդիրների հաջող լուծումը:

Սովետական հասարակության մեջ ավանգարդային տեղը պատկանում է բանվոր դասակարգին: Բանվոր դասակարգը սոցիալիստական արտադրության համակարգում ունեցած իր դիրքի, քաղաքական փորձի, բարձր գիտակցականության ու կազմակերպվածության, աշխատանքային և քաղաքական ակտիվության շնորհիվ համախմբում է մեր հասարակությունը, առաջատար դեր խաղում սոցիալիզմի կատարելագործման, կոմունիստական շինարարության ասպարեզում: **(Երկարատև ծափահարություններ):** Բանվոր դասակարգի, գյուղացիության, մտավորականության դաշինքի ամրապնդման նկատմամբ մշտական հոգատարությունը Սովետական Միության կոմունիստական կուսակցության քաղաքականության անկյունաքարն է: Հենց այստեղ են տնտեսական ու սոցիալական այն խնդիրների արագ լուծման համար ուժերը համակենտրոնացնելու մեր հնարավորությունները, որ մենք այժմ առաջադրում ենք:

Բայց սոցիալիստական հասարակության միասնությունը ամենևին էլ հասարակական կյանքի համահարթում չէ: Սոցիալիզմը զարգացնում է մարդկանց շահերի, պահանջմունքների, ընդունակությունների ամբողջ բազմազանությունը, ակտիվորեն պաշտպանում այդ բազմազանությունն արտահայտող հասարակական կազմակերպությունների ինքնագործունեությունը: Ավելին, սոցիալիզմը այդպիսի բազմազանության կարիք ունի, դա համարելով մարդկանց ստեղծագործական ակտիվության, նախաձեռնության հետագա բարձրացման, մտքերի ու տաղանդների մրցության անհրաժեշտ պայման, առանց որի առհասարակ աներևակայելի է սոցիալիստական ապրելակերպը, աներևակայելի է առաջընթացը: **(Ծափահարություններ):**

Ընդհանրապես ասած, հարցը դրված է այսպես. եթե մենք չկարողանանք նոր, անհամեմատ ավելի բարձր մակարդակի հասցնել արտադրական, տնտեսական մրցությունը, մրցողականությունը գիտության, գեղարվեստական ստեղծագործության բնագավառում, չենք կարողանա լուծել նաև երկրի սոցիալ-տնտեսական առաջադիմության արագացման խնդիրները: **(Ծափահարություններ):** Սոցիալիստական ապրելակերպի զարգացումը նշանակում է առավելագույն հնարավորությունների ստեղծում կոլեկտիվիզմի հաստատման, հասարակության համախմբվածության, անհատի ակտիվության աճի համար:

Հասարակայնության ուշադրությունը գրավում են **ընտանիքի ամրապնդման պրոբլեմները:** Նոր, սոցիալիստական ընտանիքի ձևավորման գործում մեր նվաճումները անվիճելի են: Սոցիալիզմը կնոջն ազատագրեց տնտեսական ու սոցիալական ճնշումից, նրա համար ստեղծեց տղամարդու հետ հավասար աշխատելու,

Բայց կարևոր է, որ առողջ հետաքրքրությունը այն ամբողջ արժեքավորի նկատմամբ, ինչ կա յուրաքանչյուր ազգային մշակույթի մեջ, չվերածվի ազգային մշակույթների փոխներգործության ու մերձեցման օբյեկտիվ պրոցեսից անջրպետվելու փորձերի: Սա պետք է նկատի ունենալ նաև այն ժամանակ, երբ ազգային ինքնատիպության անվան տակ գրականության և արվեստի որոշ ստեղծագործություններում, գիտական աշխատություններում փորձեր են արվում հովվերգական տոներով ներկայացնել հետադիմական նացիոնալիստական և կրոնական վերապրուկները, որոնք հակասում են մեր գաղափարախոսությանը, սոցիալիստական ապրելակերպին, գիտական աշխարհայացքին: **(Ծափահարություններ):**

Մեր կուսակցության՝ Լենինից եկող ավանդույթն է առանձնակի զգայնությունը և շրջահայացությունը այն ամենի մեջ, ինչը վերաբերում է ազգային քաղաքականությանը, ինչը շոշափում է յուրաքանչյուր ազգի և ազգության շահերը, մարդկանց ազգային զգացումները և միևնույն ժամանակ՝ սկզբունքային պայքարը ազգային սահմանափակվածության ու սնապարծության, նացիոնալիզմի ու շովինիզմի դրսևորումների դեմ, ինչպիսի զգեստ էլ որ դրանք կրեն: Մենք՝ կոմունիստներս, պետք է անշեղորեն հետևենք լենինյան իմաստուն պատգամներին, դրանք ստեղծագործաբար կիրառենք նոր պայմաններում, անսահման ուշադիր, սկզբունքային լինենք ազգային հարաբերություններում՝ հանուն Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության բոլոր ժողովուրդների եղբայրական բարեկամության հետագա ամրապնդման: **(Երկարատև ծափահարություններ):**

Կուսակցության մշակած սոցիալական քաղաքականությունը համակողմանի է և միանգամայն իրագործելի: Բայց հաջողությունը վճռական չափով կախված կլինի կադրերի սոցիալական կողմնորոշվածությունից, մեր պլանների իրականացման գործում ցուցաբերվելիք հաստատակամությունից և նախաձեռնողականությունից: Մարդկանց կոնկրետ կարիքների, շահերի նկատմամբ հոգատարությունը պետք է կուսակցական, սովետական, տնտեսական կազմակերպությունների, արհմիությունների, յուրաքանչյուր ղեկավարի անդուլ ուշադրության առարկան լինի: Կկարողանանք մենք վճռական շրջադարձ կատարել դեպի սոցիալական ոլորտը, այդ դեպքում մեր կյանքի այսօրվա, նաև վաղվա շատ պրոբլեմներ անհամեմատ ավելի արագորեն և ավելի արդյունավետորեն կլուծվեն, քան մինչև օրս: **(Բուռն, երկարատև ծափահարություններ):**

# III.

# ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅԱՆ ՀԵՏԱԳԱ ԴԵՄՈԿՐԱՏԱՑՈՒՄԸ, ԺՈՂՈՎՐԴԻ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԻՆՔՆԱՎԱՐՈՒԹՅԱՆ ԽՈՐԱՑՈՒՄԸ

Ընկերնե՛ր: Վ. Ի. Լենինը նոր կարգերի զարգացման գլխավոր ուժը տեսնում էր դեմոկրատիզմի, աշխատավորների կենդանի ստեղծագործության մեջ: Նա, ինչպես ուրիշ ոչ ոք, հավատում էր ժողովրդին, հոգում մասսաների քաղաքական ակտիվության և կուլտուրայի բարձրացման մասին, ընդգծելով, որ անգրագետ մարդը քաղաքականությունից դուրս է կանգնած: Այդ ժամանակվանից անցել է գրեթե յոթ տասնամյակ: Անչափ բարձրացել է սովետական մարդկանց կրթվածության և կուլտուրայի ընդհանուր մակարդակը, հարստացել նրանց սոցիալ-քաղաքական փորձը: Ուրեմն նաև հսկայական չափով մեծացել են հասարակության ու պետության գործերի կառավարմանը մասնակցելու յուրաքանչյուր քաղաքացու հնարավորություններն ու պահանջմունքները:



Դեմոկրատիան այն առողջ ու մաքուր օդն է, որով միայն լիարյուն կարող է ապրել սոցիալիստական հասարակական օրգանիզմը: Ահա թե ինչու, երբ մենք ասում ենք, որ մեզ մոտ սոցիալիզմի հզոր պոտենցիալը դեռևս լիովին չի օգտագործվում, ապա նկատի ունենք նաև այն, որ **հասարակության զարգացման արագացումը աներևակայելի և անհնար է առանց սոցիալիստական դեմոկրատիայի, նրա բոլոր կողմերի ու դրսևորումների հետագա զարգացման:**

Հաշվի առնելով դա, կուսակցությունը, Կենտրոնական կոմիտեն ձեռնարկում են միջոցներ՝ ուղղված սոցիալիստական կարգերի դեմոկրատիզմի խորացմանը: Դրանց թվում պետք է դասել սովետների, արհմիությունների, կոմերիտմիության, աշխատավորական կոլեկտիվների, ժողովրդական վերահսկողության ակտիվացման, հրապարակայնության ուժեղացման միջոցառումները: Բայց, այնուամենայնիվ, այն, ինչ արվել և արվում է, պետք է գնահատել ոչ թե երեկվա չափանիշներով, այլ նոր խնդիրների մասշտաբով ու բարդությամբ: Այդ խնդիրները, ինչպես ընդգծվում է կուսակցության ծրագրի նոր խմբագրության մեջ, պահանջում են **ժողովրդի սոցիալիստական ինքնավարության** հետևողական և անշեղ զարգացում:

Սոցիալիստական հասարակության մեջ, առանձնապես արդի պայմաններում, կառավարումը պրոֆեսիոնալների նեղ շրջանակի արտոնությունը լինել չի կարող: Ոչ միայն տեսությունից, այլև սեփական բազմամյա պրակտիկայից մենք գիտենք, որ սոցիալիստական կարգերը հաջողությամբ են զարգանում միայն այն ժամանակ, երբ ժողովուրդն ինքն է ռեալ կերպով կառավարում իր գործերը, երբ միլիոնավոր մարդիկ մասնակցում են քաղաքական կյանքին: Հենց սա է աշխատավորների ինքնավարությունը՝ դրա լենինյան ըմբռնմամբ, դա է կազմում սովետական իշխանության էությունը: Ինքնավարական հիմունքները զարգանում են ոչ թե մեր պետականությունից դուրս, այլ նրա ներսում՝ ավելի ու ավելի խոր կերպով թափանցելով պետական ու հասարակական կյանքի բոլոր ծալքերը, հարստացնելով դեմոկրատական ցենտրալիզմի բովանդակությունը, ամրապնդելով դրա սոցիալիստական բնույթը:

Որպես սոցիալիստական ինքնավարության զարգացման առաջատար ուժ և գլխավոր երաշխավոր հանդես է գալիս կուսակցությունը: Կատարելով հասարակության մեջ իր ղեկավար դերը, կուսակցությունն ինքն էլ հասարակական-քաղաքական ինքնակառավարվող կազմակերպության բարձրագույն ձև է: Ծավալելով ներկուսակցական դեմոկրատիան, բարձրացնելով քաղաքական համակարգի բոլոր օղակներում աշխատող կոմունիստների ակտիվությունը, ՍՄԿԿ-ն ճիշտ ուղղություն է տալիս ժողովրդի սոցիալիստական ինքնավարության խորացման, երկրի գործերին մասսաների, յուրաքանչյուր մարդու մասնակցության ընդլայնման պրոցեսին:

Աշխատավորների հեղափոխական ստեղծագործությամբ ծնունդ առած **ժողովրդական դեպուտատների սովետները** բովել են ժամանակի քննությունը, ապացուցել իրենց կենսունակությունը, ժողովրդի լիիրավ իշխանության իրականացման, մասսաների միավորման և մոբիլիզացման գործում իրենց հսկայական հնարավորությունները: Սոցիալիստական դեմոկրատիզմի զարգացման տրամաբանությունն իսկ վկայում է սովետական ներկայացուցչական մարմինների այդ հնարավորությունները առավելագույնս օգտագործելու հրամայական անհրաժեշտությունը:

Կարելի է միայն ողջունել, որ տարեցտարի ավելի ու ավելի գործնական և արդյունավետ է դառնում ՍՍՀՄ Գերագույն սովետի, միութենական և ինքնավար հանրապետությունների գերագույն սովետների գործունեության բնույթը: Նրանք կոչված են հաստատակամորեն կատարելագործելու օրենսդրությունը, վերահսկելու, թե ինչպես են գործում մեր օրենքները, թե ինչպիսի ռեալ հատույց է տալիս յուրաքանչյուր պետական մարմնի ու ղեկավարի աշխատանքը: Հարկավոր է, որ գերագույն սովետների նստաշրջաններում ավելի ակտիվորեն քննարկվեն արհմիությունների, կոմերիտմիության, մյուս հասարակական կազմակերպությունների առաջարկությունները, կառավարման մարմինների հաշվետվությունները, տնտեսության առանձին ճյուղերում տիրող վիճակը, ռեգիոնների զարգացումը:

Կուզենայի համագումարի պատգամավորների հատուկ ուշադրությունը հրավիրել **տեղական սովետների** գործունեության վրա: Այսօր նրանք կարող են ու պետք է դառնան երկրի սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու ուղղությամբ մաս-

սաների մոբիլիզացման առավել արդյունավետ օղակներից մեկը: Իշխանության տեղական մարմինները, մանդատ ստանալով ընտրողներից, պատասխանատվություն են ստանձնում իրենց տերիտորիայում կյանքի բոլոր ոլորտների համար: Գուցե որևէ մեկը կարող է և ասել. սա իմ հարցը չէ, բայց սովետների համար նման մոտեցումը անընդունելի է: Բնակարան և լուսավորություն, առողջապահություն և մասսայական պահանջարկ վայելող ապրանքներ, առևտուր և սպասարկման ոլորտ, հասարակական տրանսպորտ և բնության պահպանություն՝ ահա նրանց անմիջական հոգսը: Իսկ երբ այս հարցերի վերաբերյալ մենք դեռևս լսում ենք աշխատավորների ոչ քիչ կշտամբանքներ, ապա դա նշանակում է, որ սովետներին պակասում են գործարարությունն ու նախաձեռնությունը, թույլ է վերահսկողությունը նրանց կողմից: Բայց, հիմնավոր պահանջներ ներկայացնելով սովետներին, չի կարելի չտեսնել նաև մի ուրիշ բան. տեղական նշանակություն ունեցող հարցերի լուծման գործում նրանց հնարավորությունները առայժմ սահմանափակ են, գոյություն ունի չափից ավելի մեծ կենտրոնացում այնպիսի գործերում, որոնք բնավ միշտ չէ, որ երևում են կենտրոնից և շատ ավելի լավ կարող են լուծվել տեղերում:

Ահա թե ինչու մենք վճռականորեն իշխանության տեղական մարմինների ինքնուրույնությունն ու ակտիվությունը ուժեղացնելու կուրս ենք վերցրել: ՍՄԿԿ Կենտկոմում, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունում և Մինիստրների խորհրդում այժմ առաջարկություններ են մշակվում այդ առթիվ: Դրանց էությունն այն է, որ յուրաքանչյուր սովետ դառնա լիիրավ և պատասխանատու տեր այն ամենում, ինչը վերաբերում է մարդկանց ամենօրյա պահանջմունքների ու կարիքների բավարարմանը, հատկացվող միջոցների, տեղական հնարավորությունների ու ռեզերվների օգտագործմանը, բնակչության սպասարկման բնագավառում բոլոր կազմակերպությունների աշխատանքի կոորդինացմանը և վերահսկողությանը: Այս կապակցությամբ հարկ է հանգամանորեն քննության առնել սովետների տերիտորիայում գտնվող վերադաս ենթակայության ձեռնարկությունների հետ նրանց փոխհարաբերությունների հարցը, բարձրացնել իշխանության տեղական մարմինների շահագրգռությունը այդ ձեռնարկությունների աշխատանքի արդյունքների համար:

Պետք է շատ ավելի արդյունավետորեն անցկացնել սովետների նստաշրջանները, ուժեղացնել մշտական հանձնաժողովների վերլուծական ու վերահսկիչ գործունեությունը, բարելավել դեպուտատական հարցապնդումների պրակտիկան: Հանձնաժողովների հանձնարարականները, դեպուտատների առաջարկություններն ու դիտողությունները պետք է մանրակրկիտ քննարկվեն ու հաշվի առնվեն գործադիր մարմինների կողմից:

Սահմանելով սովետների գործունեության բարելավման հետագա քայլերը, մենք չպիտի մոռանանք, որ դրանցից ոչ մեկը անհրաժեշտ արդյունքը չի տա, եթե չամրապնդվի դեպուտատների նախաձեռնությամբ: Կուսակցությունը այսուհետև էլ հոգ կտանի այն մասին, որ դեպուտատներ ընտրվեն առավել արժանավոր մարդիկ, որոնք կարողանան բարձր մակարդակով վարել պետական գործերը, որ սովետների կազմը սիստեմատիկաբար նորացվի: Ըստ երևույթին ժամանակն է այս իմաստով անհրաժեշտ ճշգրտումներ մտցնել նաև մեր ընտրական պրակտիկայում: Այստեղ կուտակվել են ոչ քիչ հարցեր, որոնք իրենց լուծմանն են սպասում:

Կուսակցությունը իր պարտքն է համարել ու համարում է ամրապնդել ժողովրդի ընտրյալների հեղինակությունը և դրա հետ մեկտեղ ըստ ամենայնի բարձրացնել նրանց պատասխանատվությունը ընտրողների հանդեպ: Դեպուտատի կոչումը ոչ թե պաշտոնի հավելված է, ոչ թե պատվավոր արտոնություն, այլ մեծ և ոչ դյուրին աշխատանք սովետում, բնակչության շրջանում: Եվ հարկավոր է անհրաժեշտ ամեն ինչ անել, որպեսզի դեպուտատների ստատուսի մասին օրենքը անշեղորեն կատարվի, որպեսզի յուրաքանչյուր դեպուտատ բոլոր հնարավորություններն ունենա ռեալ կերպով իրականացնելու իր լիազորությունները: **(Ծափահարություններ):**

Ժողովրդի ինքնավարության զարգացումը պահանջում է **դեմոկրատական հիմունքների հետագա խորացում կառավարման մեջ,** սովետների գործկոմների, նրանց ապարատների, մյուս բոլոր պետական մարմինների գործունեության մեջ: Այստեղ մեծ մասամբ աշխատում են բանիմաց, գործի համար սրտացավ վերաբերմունք ցուցաբերող աշխատողներ: Բայց հարկ է միշտ հիշել, որ ոչ մի ապարատ, եթե նույնիսկ նրա աշխատողները ամենաիմաստունը լինեն, ոչ մի բանի չի հասնի, եթե չի հենվում աշխատավորների շահագրգիռ աջակցության և կառավարմանը նրանց մասնակցության վրա: Ժամանակը ավելի ու ավելի խստագույն պահանջներ է ներկայացնում ապարատի աշխատանքի մակարդակին: Իսկ այստեղ թերությունները քիչ չեն, հաճախ հարկ է լինում բախվել գերատեսչականությանն ու տեղայնությանը, անպատասխանատվությանը, բյուրոկրատիզմին, մարդկանց նկատմամբ ձևականանտարբեր վերաբերմունքին: Այս երևույթների հիմնական պատճառներից մեկը ապարատի աշխատանքի վերահսկողության թուլացումն է աշխատավորների, հենց սովետների, հասարակական կազմակերպությունների կողմից:

Հաշվի առնելով այս, կուսակցությունը խնդիր է դնում աշխատեցնել բոլոր այն գործիքները, որոնք յուրաքանչյուր քաղաքացու ռեալ հնարավորություն են տալիս ակտիվորեն ազդելու կառավարչական որոշումների մշակման վրա, ստուգելու դրանց կատարումը, անհրաժեշտ ինֆորմացիա ստանալու ապարատի գործունեության մասին: Սրան պետք է ենթարկված լինի աշխատավորական կոլեկտիվների և բնակչության ժողովների առջև կառավարման բոլոր մարմինների կանոնավոր հաշվետվությունների համակարգը:

Այստեղ շատ բան կարող են անել ժողովրդական վերահսկողության կոմիտեները, խմբերն ու կետերը, արհմիությունների հասարակական տեսչությունները, մասսայական ինֆորմացիայի միջոցները: Իրենք՝ ընտրովի մարմիններն էլ պետք է ավելի խստապահանջ լինեն իրենց ապարատի նկատմամբ: Չի կարելի չտեսնել, որ ապարատի երկար ժամանակ չփոխվող աշխատողները հաճախ կորցնում են նորի ճաշակը, անջրպետվում մարդկանցից իրենց իսկ հորինած հրահանգներով, իսկ երբեմն էլ արգելակում ընտրովի մարմինների աշխատանքը: Ըստ երևույթին, ժամանակն է մշակել այնպիսի կարգ, որը սովետական, ինչպես նաև բոլոր հասարակական մարմիններին թույլ տար յուրաքանչյուր ընտրությունից հետո անցկացնել իրենց ապարատի համապատասխան աշխատողների ատեստավորում՝ ապարատում կատարելով հասունացած կադրային փոփոխություններ: **(Ծափահարություններ):**

Ժամանակը պահանջում է, որ երկրի կառավարման գործի մեջ ավելի ու ավելի ակտիվորեն ներգրավվեն **հասարակական կազմակերպությունները:** Սակայն եթե այս տեսանկյունից նայենք մեր հասարակական կազմավորումների աշխատանքին, ապա ակներև կդառնա, որ նրանցից շատերի նախաձեռնությունը մնում է անբավարար: Մի շարք դեպքերում նրանք փորձում են գործել նախ և առաջ հաստիքային ապարատի ուժերով, բյուրոկրատաբար, թույլ կերպով հենվելով մասսաների վրա: Այլ խոսքով՝ հասարակական կազմակերպությունների ժողովրդական, ստեղծագործական, ինքնագործ բնույթը դրսևորվում է ամենևին ոչ լրիվ չափով:

Մեզանում ամենամասսայական կազմակերպությունը **արհմիություններն են:** Նրանք ընդհանուր առմամբ քիչ բան չեն անում բանվորների, ծառայողների և կոլտնտեսականների պահանջմունքների բավարարման, մրցության զարգացման, կարգապահության ամրապնդման, աշխատանքի արտադրողականության բարձրացման համար: Եվ, այնուամենայնիվ, խոսքը վերաբերում է աշխատավորների օրինական շահերի պաշտպանությանը, աշխատանքի պահպանությանն ու անվտանգության տեխնիկային, թե առողջարարական, մարզական, ակումբային հիմնարկների շինարարությանն ու աշխատանքին, արհմիութենական կոմիտեներին բնավ միշտ չէ, որ բավականացնում են մարտակյան նպատակասլացությունն ու հաստատակամությունը: Հասկանալի է, որ նման պասսիվությունը ձեռնտու է այն տնտեսավարներին, որոնց համար արտադրությունը երբեմն մոռանալ է տալիս մարդուն: Բայց արհմիությունների համար սոցիալական քաղաքականությունը, աշխատավորների շահերը պետք է մշտապես լինեն առաջին պլանում: **(Ծափահարություններ):** Իսկն ասած, հենց սա է նրանց գործունեության հիմնական իմաստը: ՀԱՄԿԽ-ն, մյուս արհմիութենական մարմինները դրա համար ունեն հսկայական իրավունքներ, պետական, ինչպես նաև սեփական ոչ քիչ միջոցներ: Ուրեմն, հարկավոր է վստահորեն ու լայնորեն օգտագործել դրանք և ոչ թե սպասել, որ ինչ-որ մեկը արհմիությունների փոխարեն լուծի նրանց վրա դրված խնդիրները:

Ապագան շատ բանով որոշվում է նրանով, ընկերներ, թե մենք այսօր ինչպիսի երիտասարդություն ենք դաստիարակում: Դա ամբողջ կուսակցության, ամբողջ ժո-

ղովրդի խնդիրն է: Դա **լենինյան կոմերիտմիության** ամենակարևոր, արմատական խնդիրն է: Մեր երիտասարդությունը աշխատասեր է, պատրաստ է սխրագործության և ինքնազոհողության, նվիրված է սոցիալիզմին: Բայց ավագ սերունդների պարտքն այսպիսին է. ամեն ինչ անել, որպեսզի հերթափոխը լինի ավելի խելացի, ավելի ընդունակ, ավելի կրթված, որպեսզի նա արժանավայել կերպով դեպի ապագան տանի մեծ Հոկտեմբերի պատգամած արդարության և ազատության իդեալների էստաֆետը: **(Ծափահարություններ)**:

Վ. Ի. Լենինը նշել է, որ չի կարելի կոմունիզմ սովորել միայն գրքերից, չի կարելի դաստիարակել պատասխանատվություն՝ չհանձնարարելով պատասխանատու գործեր: 80-ական թվականների երիտասարդներն աչքի են ընկնում լայն մտահորիզոնով, կրթվածությամբ, եռանդով: Նրանք, ես կասեի, լիցքավորված են գործելու համար, փնտրում են հասարակական կյանքի բոլոր բնագավառներում իրենց դրսևորելու հնարավորություններ: Եվ կոմերիտմիությունը պետք է ըստ ամենայնի պաշտպանի այդ ձգտումը ամենուրեք՝ ժողովրդական տնտեսության, գիտության մեջ ու տեխնիկայում, գիտելիքների և մշակույթի տիրապետման գործում, քաղաքական կյանքում և հայրենիքի պաշտպանության գործում: Ընդ որում այդ աշխատանքը, ինչպես ոչ մի այլ աշխատանք, պետք է կրի պրպտող բնույթ, լինի հետաքրքիր ու մոտ պատանեկությանը, ամուր շաղկապված արտադրության, ուսման մեջ ու կենցաղում, ազատ ժամանակի օգտագործման ասպարեզում երիտասարդների պահանջմունքների հետ:

Կուսակցական, սովետական և տնտեսական մարմինները պետք է կոմերիտմիության հետ միասին հետևողականորեն վարեն կառավարման, արտադրության, գիտության, մշակույթի բնագավառում երիտասարդության արժանավոր ներկայացուցիչներին ղեկավար աշխատանքի առաջ քաշելու գիծ: Մենք ասում ենք. մեզ մոտ ամենուրեք երիտասարդների առջև լայն ճանապարհ կա: Դա ճիշտ է: Բայց հարկավոր են մշտական ջանքեր, որ այդ բառերը չխամրեն, իսկ ճանապարհը միշտ իրոք լայն լինի: **(Ծափահարություններ)**:

Ամբողջությամբ վերցված, ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն հարմար է համարում հետագա քայլեր ձեռնարկել ժողովրդի սոցիալիստական ինքնակառավարման համակարգում արհմիությունների և կոմերիտմիության, ստեղծագործական միությունների և կամավոր ընկերությունների դերը բարձրացնելու համար: Մասնավորապես նախատեսվում է ընդլայնել այն հարցերի շրջանակը, որ պետական մարմինները կարող են լուծել միայն համապատասխան արհմիութենական, կոմերիտական, կանանց կազմակերպությունների մասնակցությամբ կամ նրանց նախնական համաձայնությամբ, այդ կազմակերպություններին իրավունք տալ մի շարք դեպքերում կասեցնելու կառավարչական որոշումների իրագործումը:

Մեր կուսակցական ծրագիրը նպատակամղվում է **անմիջական դեմոկրատիայի** բոլոր ձևերի ամենաարդյունավետ օգտագործմանը, ժողովրդական մասսաների ուղղակի մասնակցությանը պետական և մյուս որոշումների մշակմանը, ընդունմանն ու կատարմանը: Այստեղ հսկայական դեր է պատկանում **աշխատավորական կոլեկտիվին,** որը գործում է հասարակական կյանքի բոլոր ոլորտներում և ամենից առաջ՝ էկոնոմիկայում: Ձեռնարկությունների իրավունքների ընդլայնումը, տնտհաշվարկի ներդրումը և սոցիալիստական ձեռներեցության ուժեղացումը ռեալ բովանդակություն են ստանում միայն այն դեպքում, եթե մեծանում է հենց աշխատավոր մարդու ակտիվությունը: Չի կարելի հաշտվել դեռևս հանդիպող այն փաստերի հետ, երբ բանվորները չգիտեն իրենց ձեռնարկության պլանները, երբ նրանց առաջարկությունները մնում են առանց պատշաճ ուշադրության ու հաշվառման: Այս փաստերը վկայում են, որ իներցիայի ուժը ինչ-որ տեղ դեռ եղանակ է ստեղծում, խանգարում կառավարման գործում բանվորների ու ծառայողների ներգրավմանը, նրանց մեջ արտադրության լիիրավ տիրոջ զգացման դաստիարակությանը:

Աշխատավորական կոլեկտիվների մասին երկու տարի առաջ ընդունված օրենքը, անտարակույս, նպաստել է նրանց նախաձեռնության աշխուժացմանը: Սակայն ասել, թե դա տալիս է այն արդյունքները, որ մենք ակնկալում էինք, առայժմ չի կարելի: Դա ցույց տվեց Մինսկի ավտոգործարանում և այլ ձեռնարկություններում օրենքի կիրառման պրակտիկայի հարցի քննարկումը ՍՄԿԿ Կենտկոմում: Հետևու-



թյունը միանշանակ է. հարկավոր է արմատապես բարելավել մեխանիզմը, որը թույլ կտա օրենքի բովանդակած դեմոկրատական սկզբունքներն ու նորմերը դարձնել ամենօրյա աշխատանքի պրակտիկա: Հարկավոր է քայլ առ քայլ ընդլայնել այն պրոբլեմների շրջանակը, որոնց վերաբերյալ աշխատավորական կոլեկտիվի որոշումները վերջնական են, բարձրացնել բանվորների ու ծառայողների ընդհանուր ժողովների դերը, դրանց որոշումների կատարման համար պատասխանատվությունը: Առաջանում է նաև այն հարցը, որ ընդհանուր ժողովների միջև ընկած ժամանակամիջոցում ոչ միայն բրիգադների, այլև ձեռնարկությունների մակարդակով գործի, ասենք, աշխատավորական կոլեկտիվի խորհուրդը, որի կազմում լինեն ադմինիստրացիայի, կուսակցական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպությունների, բրիգադների խորհուրդների ներկայացուցիչներ, բանվորներ, մասնագետներ:

Առաջավոր տնտհաշվարկային բրիգադներն արդեն այժմ դառնում են ինքնավարության՝ իրենց ղեկավարներն ընտրող սկզբնական բջիջներ: Պրակտիկան ցույց է տալիս այդ գործի կենսականությունը: Պրակտիկան հաստատում է, որ, զարգացնելով դեմոկրատական հիմունքները արտադրության կառավարման մեջ, հավանաբար, նպատակահարմար է ընտրովիությունը տարածել բոլոր բրիգադավարների վրա, իսկ հետո աստիճանաբար նաև ձեռնարկությունների ղեկավար աշխատողների մի քանի այլ կատեգորիաների՝ վարպետների, հերթափոխությունների, տեղամասերի, արտադրամասերի պետերի, սովխոզների բաժանմունքների կառավարիչների վրա: Երկարամյա փորձը վկայում է. հենց այս ուղղությամբ պետք է փնտրել ժողովրդական տնտեսության կառավարման մեջ ցենտրալիզմի ու դեմոկրատիայի, միանձնյա ղեկավարման և ընտրովիության զուգակցման արդի պայմաններին համապատասխանող ձևեր: **(Ծափահարություններ)**:

Մշտական հոգածության առարկա է կոլտնտեսությունների և մյուս կոոպերատիվ կազմակերպությունների ղեկավարության կողմից դեմոկրատական սկզբունքների անշեղ կիրառումը, նրանց կանոնադրությունների պահանջների կատարումը: Վերջին ժամանակներս դրա նկատմամբ ուշադրությունը ինչ-որ թուլացել է, կոոպերացիայի կյանքին միջամտում են շատ-շատերը: Կուսակցական և սովետական մարմինները պարտավոր են հետևել այն բանին, որ կոլտնտեսային, կոոպերատիվ ինքնավարությունը գործի անվրեպ, պարտավոր են կասեցնել ճնշման ու վարչարարության ամեն տեսակի փորձերը:

Մեր սահմանադրությունը նախատեսում է երկրի կյանքի խոշոր հարցերի, տեղական սովետների որոշումների նախագծերի համաժողովրդական քննարկումների ու քվեարկությունների անցկացում: Պետք է արագացնել այդ շատ կարևոր հարցի առթիվ օրենքի նախապատրաստումը: Մենք պետք է է՛լ ավելի լավ օգտագործենք ուղղակի դեմոկրատիայի զարգացման այնպիսի հուսալի կանալներ, ինչպիսիք են քաղաքացիների ժողովները, ընտրողների պատվիրանները, աշխատավորների նամակները, մամուլը, ռադիոն, հեռուստատեսությունը, հասարակական կարծիքը բացահայտելու, մասսաների պահանջներին ու տրամադրություններին օպերատիվ կերպով, հատակորեն արձագանքելու բոլոր միջոցները:

Մեզ համար սկզբունքային է **հրապարակայնության ընդլայնման** հարցը: Դա քաղաքական հարց է: Առանց հրապարակայնության չկան ու չեն կարող լինել դեմոկրատիզմ, մասսաների քաղաքական ստեղծագործություն, կառավարմանը նրանց մասնակցություն: Դա, եթե կուզեք, տասնյակ միլիոնավոր բանվորների, կոլտնտեսականների, մտավորականների գործի նկատմամբ պետական պատասխանատվության զգացումով տոգորված վերաբերմունքի գրավականն է, մեր կադրերի հոգեբանական վերակառուցման ելակետը: **(Երկարատև ծափահարություններ)**:

Երբեմն, երբ խոսք է գնում հրապարակայնության մասին, հարկ է լինում լսել կոչեր՝ ավելի զգուշորեն խոսելու մեր թերությունների ու վրիպումների մասին, դժվարությունների մասին, որոնք անխուսափելի են ամեն մի կենդանի աշխատանքում: Այստեղ պատասխանը կարող է լինել մեկը, լենինյան պատասխանը. կոմունիստներին միշտ և բոլոր հանգամանքներում ճշմարտությունն է պետք: **(Երկարատև ծափահարություններ)**: Վերջին տարվա փորձը ցույց տվեց, թե սովետական մարդիկ որքան վճռականորեն են պաշտպանում այն ամենի անզիջում գնահատականը, ինչը մեզ խանգարում է առաջ ընթանալ: Իսկ ահա նրանք, ովքեր սովորել են աշխատել

անիույթ, զբաղվել աչքակապությամբ, իսկապես իրենց հարմարավետ չեն զգում հրապարակայնության լույսի տակ, երբ այն ամենը, ինչ արվում է պետության ու հասարակության մեջ, գտնվում է ժողովրդի վերահսկողության ներքո, ժողովրդի աչքի առաջ: **(Ծափահարություններ):** Ուստի մենք պետք է հրապարակայնությունը դարձնենք անվրեպ գործող համակարգ: Դա հարկավոր է կենտրոնում, բայց ոչ պակաս, գուցեև նույնիսկ ավելի մեծ չափով՝ տեղերում, որտեղ ապրում և աշխատում է մարդը: Նա ուզում է և պետք է իմանա ոչ միայն այն, ինչ վճռվում է պետական մասշտաբով, այլև այն, թե ինչպիսի որոշումներ են ընդունում տեղական կուսակցական ու սովետական մարմինները, ձեռնարկությունների ադմինիստրացիան և արհմիությունները:

Սոցիալիստական դեմոկրատիզմի ընդլայնման ու հետագա զարգացման խնդիրներին պետք է ծառայի **սովետական մարդու սոցիալ-քաղաքական և անձնական իրավունքների ու ազատությունների** ամբողջ զինանոցը: Այդ իրավունքների և ազատությունների խորացումը, դրանց երաշխիքների ամրապնդումը կուսակցությունն ու պետությունը համարում են իրենց առաջնային պարտքը: Բայց սոցիալիզմի էությունն այնպիսին է, որ քաղաքացու իրավունքներ գոյություն չունեն ու չեն կարող ունենալ առանց նրա պարտականությունների, ինչպես որ չկան նաև պարտականություններ առանց իրավունքների:

Անհրաժեշտ է բարձրացնել աշխատավորների՝ բոլորի և յուրաքանչյուրի ակտիվությունը ստեղծարար աշխատանքում, թերությունների, չարաշահումների, ամեն տեսակ հիվանդագին երևույթների, մեր իրավունքի ու բարոյականության նորմերից թույլ տրվող շեղումների հաղթահարման գործում: Դեմոկրատիան եղել է ու մնում է **սոցիալիստական օրինականության ամրապնդման** կարևորագույն լծակը, իսկ ամուր օրինականությունը՝ մեր դեմոկրատիայի անբաժանելի մասը:

Վերջին ժամանակներս քիչ աշխատանք չի տարվել հասարակության կյանքի բոլոր ոլորտներում իրավակարգի ամրապնդման գործում: Բայց այդ ուղղությամբ ջանքերը բնավ չեն կարող թուլացվել: Պետք է այսուհետև էլ բարելավվի սովետական օրենքների որակը: Մեր օրենսդրությունը՝ քաղաքացիական և աշխատանքային, ֆինանսական և վարչական, տնտեսական և քրեական, պետք է ավելի ակտիվորեն օգնի կառավարման տնտեսագիտական մեթոդների ներդրմանը, աշխատանքի և սպառման չափի գործում վերահսկողությանը, սոցիալական արդարության սկզբունքների կենսագործմանը:

Պետք է հաստատակամորեն բարձրացնել իրավապահպան և մյուս մարմինների պատասխանատվությունը, ամրապնդել իրավաբանական ծառայությունը սովետներում ու ժողովրդական տնտեսության մեջ, պետական արբիտրաժը, կատարելագործել բնակչության իրավական դաստիարակությունը: Անփոփոխ խնդիր է մնում սովետական օրենքների ամբողջ ուժի օգտագործումը հանցագործությունների և մյուս իրավախախտումների դեմ մղվող պայքարում, որպեսզի մարդիկ ցանկացած բնակավայրում զգան պետության հոգատարությունն իրենց հանգստի ու անձեռնմխելիության նկատմամբ, վստահ լինեն, որ ոչ մի իրավազանց չի խուսափի արժանի պատժից: **(Ծափահարություններ):**

Պետք է խստագույնս կիրառվեն արդարադատության, օրենքի առջև քաղաքացիների հավասարության դեմոկրատական սկզբունքները, պետության և յուրաքանչյուր քաղաքացու շահերի պաշտպանությունն ապահովող մյուս երաշխիքները: Այս կապակցությամբ անհրաժեշտ է վճռականորեն բարձրացնել դատախազական հսկողության դերը, կատարելագործել դատարանների և դատապաշտպանության աշխատանքը, արդեն մոտ ժամանակներս ավարտել քաղաքացու իրավունքներին դիպչող պաշտոնատար անձանց ապօրինի գործողությունները դատարանում գանգատարկելու կարգի մասին օրենքի նախապատրաստումը, որը նախատեսված է սահմանադրությամբ: Բնական է, որ օրինականության և իրավակարգի ապահովումը այնքան լիակատար կլինի, որքան այդ աշխատանքում ակտիվորեն ներգրավվեն կուսակցական և սովետական մարմինները, արհմիությունները և կոմերիտմիությունը, աշխատավորական կոլեկտիվները և ժողովրդական դրուժինաները, մեր հասարակության բոլոր ուժերը:

Սովետական Միության և մյուս սոցիալիստական երկրների դեմ իմպերիալիզմի



հատուկ ծառայությունների քայքայիչ գործունեության ուժեղացման պայմաններում զգալիորեն մեծանում է **պետական անվտանգության մարմինների** վրա դրված պատասխանատվությունը: Նրանք, կուսակցության ղեկավարությամբ, խստիվ կիրառելով սովետական օրենքները, մեծ աշխատանք են տանում թշնամական դավերը մերկացնելու, ամեն կարգի քայքայիչ գործողությունները խափանելու, մեր հայրենիքի սրբազան սահմանները պահպանելու ուղղությամբ:

Մենք համոզված ենք, որ սովետական չեկիստները, սահմանապահ ռազմիկները միշտ կգտնվեն իրենց ներկայացվող պահանջների բարձրության վրա, զգոնություն, տոկունություն ու հաստատակամություն հանդես կբերեն մեր պետական կարգի ու հասարակական կարգի վրա ամեն տեսակ ոտնձգությունների դեմ մղվող պայքարում: **(Երկարատև ծափահարություններ):**

Հաշվի առնելով միջազգային բարդ իրադրությունը, իմպերիալիստական ռեակցիոն շրջանների անող ագրեսիվությունը, ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն, Կենտկոմի քաղբյուրոն անդուլ ուշադրություն են նվիրում **երկրի պաշտպանունակությանը, ՍՍՀՄ զինված ուժերի մարտական հզորությանը,** զինվորական կարգապահության ամրապնդմանը: Սովետական բանակի, ռազմածովային նավատորմի տրամադրության տակ կան արդիական սպառազինություններ ու տեխնիկա, նրանք ունեն լավ վարժեցված անձնակազմ, պատրաստված, ժողովրդին անսահմանորեն նվիրված հրամանատարական ու քաղաքական կադրեր: Նրանք ըստ արժանվույն են կատարում իրենց պարտքը ամենաբարդ, երբեմն շատ ծանր պայմաններում: **(Երկարատև ծափահարություններ):** Ամենայն պատասխանատվությամբ մենք կարող ենք այսօր հայտարարել. ՍՍՀՄ պաշտպանական հզորությունը պահպանվում է այնպիսի մակարդակի վրա, որը թույլ է տալիս հուսալիորեն պաշտպանել սովետական մարդկանց խաղաղ աշխատանքը, խաղաղ կյանքը: **(Երկարատև ծափահարություններ):**

Կուսակցությունն ու պետությունը ձգտել են և ձգտում են այն բանին, որ սովետական ռազմիկը՝ զինվորն ու սպան, իրենց դժվարին ծառայության ընթացքում միշտ զգան հասարակության հոգատարությունն ու ուշադրությունը, որ մեր բանակը լինի քաղաքացիական պատասխանատվության, խիզախության և հայրենասիրության դաստիարակման դպրոց: **(Ծափահարություններ):**

Հասկանալի է, ընկերներ, որ այստեղ՝ համագումարում, մենք նախանշում ենք մեր դեմոկրատիայի, պետականության, ամբողջ սովետական քաղաքական սիստեմի կատարելագործման միայն ընդհանուր շրջանակները, գլխավոր ուրվագծերը: Համագումարի որոշումների կատարումը, անշուշտ, իր հետ կբերի ժողովրդական նախաձեռնության նոր դրսևորումներ, մասսաների սոցիալ-քաղաքական ստեղծագործության նոր ձևեր: **(Ծափահարություններ):**

# IV.

# ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԱՐՏԱՔԻՆ ՔԱՂԱՔԱԿԱՆ ՍՏՐԱՏԵԳԻԱՅԻ ՀԻՄՆԱԿԱՆ ՆՊԱՏԱԿՆԵՐՆ ՈՒ ՈՒՂՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

Ընկերնե՛ր: Երկրի տնտեսական ու սոցիալական զարգացման հիմնարար խնդիրները կանխորոշում են նաև ՍՄԿԿ-ի միջազգային ստրատեգիան: Նրա գլխավոր նպատակը անչափ պարզ է. սովետական ժողովրդի համար ապահովել կայուն խաղաղության և ազատության պայմաններում աշխատելու հնարավորություն: Ըստ էության, սա է մեր արտաքին քաղաքականության նկատմամբ կուսակցության առաջնահերթ ծրագրային պահանջը: Ներկա իրադրության մեջ դա կատարել՝ նշանակում է նախ և առաջ կասեցնել միջուկային պատերազմի նյութական պատրաստությունը:

Բազմակողմանիորեն կշռադատելով ստեղծված իրավիճակը, ՍՄԿԿ-ն առաջադրեց մինչև ներկա հազարամյակի վերջը մասսայական ոչնչացման զենքը լիովին

**գերազանցության ձգտումը օբյեկտիվորեն ոչ ոքի չեն կարող քաղաքական շահ բերել:**

Այնուհետև, դա նշանակում է գիտակցել, որ հակամարտ կողմերի միջուկային պոտենցիալների հաշվեկշռի ներկա մակարդակը անչափ բարձր է: Առայժմ այն կողմերից յուրաքանչյուրի համար ապահովում է **հավասար վտանգ: Բայց միայն** առայժմ: Միջուկային սպառազինությունների մրցավազքի շարունակումը անխուսափելիորեն կմեծացնի այդ հավասար վտանգը և կարող է այն հասցնել այնպիսի աստիճանի, երբ անգամ զուգակշռությունը կդադարի ռազմաքաղաքական զսպման գործոն լինելուց: Ուրեմն, առաջին հերթին անհրաժեշտ է մեծ չափով նվազեցնել ռազմական դիմակայության մակարդակը: Իսկական հավասար անվտանգությունը մեր դարում երաշխավորվում է ոչ թե ստրատեգիական հաշվեկշռի չափազանց բարձր, այլ չափազանց ցածր մակարդակով, հաշվեկշիռ, որից պետք է լիովին բացառվեն միջուկային և մասսայական ոչնչացման մյուս զինատեսակները: **(Ծափահարություններ):**

Վերջապես, դա նշանակում է գիտակցել, որ արդի իրադրության մեջ բոլոր պետությունների համագործակցությունն ու փոխգործողությունը այլընտրանք չունեն: Այսպիսով, առաջացել են օբյեկտիվ, ընդգծում եմ՝ օբյեկտիվ պայմաններ, երբ կապիտալիզմի ու սոցիալիզմի հակամարտությունը կարող է ընթանալ **միայն և բացառապես խաղաղ մրցության ու խաղաղ մրցակցության ձևերով:**

Մեզ համար խաղաղ գոյակցությունը քաղաքական կուրս է, որին ՍՍՀՄ-ը մտադիր է աներկրորեն հետևել նաև այսուհետև: **(Երկարատև ծափահարություններ):**

Ապահովվելով արտաքին քաղաքական ստրատեգիայի հաջորդայնությունը, ՍՄԿԿ-ն կվարի արդի աշխարհի իրողություններից բխող միջազգային ակտիվ քաղաքականություն: Իհարկե, մեկ-երկու, անգամ շատ ինտենսիվ խաղաղ հարձակումներով անհնար է լուծել միջազգային անվտանգության պրոբլեմները: Հաջողության կարող է հասցնել միայն հետևողական, պլանաչափ ու համառ աշխատանքը:

Արտաքին քաղաքականության մեջ հաջորդայնությունն ընդհանուր ոչինչ չունի անցածի պարզ կրկնության հետ, հատկապես կուտակված պրոբլեմների նկատմամբ մոտեցումների հարցում: Հարկավոր են առանձնակի ճշգրտություն՝ սեփական հնարավորությունները գնահատելիս, զսպվածություն և մեծագույն պատասխանատվություն՝ որոշումներ ընդունելիս: Անհրաժեշտ են հաստատակամություն՝ սկզբունքներն ու դիրքորոշումները պաշտպանելիս, տակտիկական ճկունություն, փոխադարձաբար ընդունելի փոխզիջումների պատրաստակամություն, ոչ թե առճակատման, այլ երկխոսության և փոխըմբռնման նպատակամղվածություն:

Ինչպես դուք գիտեք, մենք ձեռնարկել ենք մի շարք միակողմանի քայլեր՝ մորատորիում ենք սահմանել Եվրոպայում միջին հեռահարության հրթիռների ծավալումների վրա, կրճատել ենք դրանց թիվը, դադարեցրել ենք բոլոր միջուկային պայթյունները: Մոսկվայում և արտասահմանում զրույցներ են անցկացվել աշխարհի շատ պետությունների ղեկավարների կամ կառավարությունների անդամների հետ: Անհրաժեշտ և օգտակար քայլեր եղան սովետա-հնդկական, սովետա-ֆրանսիական և սովետա-ամերիկյան բարձր մակարդակի հանդիպումները:

Սովետական Միությունը ակտիվ ջանքեր է գործադրել, ձգտելով թարմ ազդակ հաղորդել Ժնևի, Ստոկհոլմի, Վիեննայի բանակցություններին, որոնց նպատակն է սահմանափակել սպառազինությունների մրցավազքը, ամրապնդել պետությունների փոխադարձ վստահությունը: Բանակցությունները միշտ էլ նուրբ, ոչ դյուրին գործ են: Այստեղ գլխավորն է՝ գործն ուղղել դեպի շահերի փոխադարձաբար ընդունելի հաշվեկշիռ: Մասսայական ոչնչացման զենքը քաղաքական մեքենայությունների առարկա դարձնելը անվայել անբարոյականություն է, իսկ քաղաքական տեսակետից՝ անպատասխանատվություն:

Վերջապես՝ ս. թ. հունվարի 15-ի մեր հայտարարությունը: Ամբողջությամբ վերցված մեր ծրագիրն ըստ էության միջուկա-տիեզերական դարաշրջանում անվտանգ աշխարհի ձևավորման փիլիսոփայության և կոնկրետ գործողությունների պլատֆորմի մի համաձուլվածք է: Սովետական Միությունը առաջարկում է զինաթափման պրոբլեմներին մոտենալ դրանց ամբողջ կոմպլեքսով, քանի որ անվտանգությանը վերաբերող հարցում մեկը կապված է մյուսի հետ: Խոսքը կոշտ համաձայնեցվածությունների կամ մի ուղղությունում «զիջելու» փորձերի մասին չէ՝ մյուսում



բարիկադ կառուցելու նպատակով: Խոսքը հատկապես կոնկրետ գործողությունների պլանի մասին է, որ ըստ ժամանակի խստորեն հաշվարկված է: ՍՍՀՄ-ը մտադիր է համառորեն ձգտել դրա իրականացմանը, դա համարելով որպես **առաջիկա տարիների իր արտաքին քաղաքականության կենտրոնական ուղղությունը: (Ծափահարություններ):**

Առաջադրված նախաձեռնությունների տառին ու ոգուն լիովին համապատասխան է կառուցվում նաև **սովետական ռազմական դոկտրինան:** Նրա ուղղվածությունը միանշանակ կերպով պաշտպանական է: Ռազմական ոլորտում մենք այսուհետև էլ մտադիր ենք վարվել այնպես, որպեսզի իր անվտանգության համար ոչ մեկի մոտ հիմքեր չառաջանան երկյուղ կրելու՝ թող որ նույնիսկ երևակայական: Բայց թե՛ մենք, թե՛ մեր դաշնակիցները հավասարաչափ ուզում ենք ազատվել մեզ վրա կախված սպառնալիքի զգացողությունից: ՍՍՀՄ-ը պարտավորություն է ստանձնել առաջինը միջուկային զենք չգործադրել և խստագույնս կհետևի դրան: **(Ծափահարություններ):** Բայց գաղտնիք չէ, որ մեզ վրա միջուկային հարձակման սցենարներ գոյություն ունեն: Դրանք հաշվի չառնել մենք իրավունք չունենք: Սովետական Միությունը միջուկային պատերազմի ամեն մի տարբերակի ամենահամոզված հակառակորդն է: Մեր երկիրը հանդես է գալիս հօգուտ այն բանի, որ շրջանառությունից հանվի մասսայական ոչնչացման զենքը, ռազմական պոտենցիալը սահմանափակվի խելամիտ բավարարության շրջանակներում: Բայց այդ շրջանակի բնույթն ու մակարդակը շարունակվում են լիմիտավորվել ԱՄՆ-ի, բլոկների գծով նրա պարտնյորների դիրքորոշումներով ու գործողություններով: Այս պայմաններում մենք նորից ու նորից կրկնում ենք. **Սովետական Միությունը ավելի մեծ անվտանգության չի հավակնում, ավելի պակասի էլ չի համաձայնի: (Երկարատև ծափահարություններ):**

Կցանկանայի ուշադրություն հրավիրել վերահսկողության պրոբլեմի վրա, որին մենք հատուկ նշանակություն ենք տալիս: Մենք մեկ անգամ չէ, որ հայտարարել ենք. ՍՍՀՄ-ը վերահսկողության համար բաց է, մենք դրանով մյուսներից պակաս չենք շահագրգռված:

Համապարփակ, խստագույն ստուգումը, թերևս, զինաթափման պրոցեսի կարևորագույն տարրն է: Գործի էությունը, մեր պատկերացմամբ, հետևյալն է. **զինաթափումն առանց վերահսկողության անհնար է, բայց և վերահսկողությունն առանց զինաթափման անիմաստ է: (Ծափահարություններ):**

Եվ էլի մի սկզբունքային հանգամանք: «Աստղային պատերազմների» նկատմամբ մեր վերաբերմունքը մենք արտահայտել ենք բավական հանգամանորեն: Գործն սպառնում է ընդունել անշրջելի բնույթ: Ծայրահեղորեն անհրաժեշտ է, քանի դեռ ուշ չէ, գտնել այնպիսի ռեալ լուծում, որը **երաշխիք լիներ կասեցնելու սպառազինությունների մրցավազքի փոխադրումը տիեզերք:** Չի կարելի թույլ տալ, որ «աստղային պատերազմների» ծրագիրը օգտագործվի թե՛ որպես խթան սպառազինությունների հետագա մրցավազքի համար, թե՛ որպես արգելապատնեշ արմատական զինաթափման ճանապարհին: Այդ խոչընդոտի հաղթահարմանը լրջորեն կարող է օգնել շոշափելի առաջադիմությունն այն գործում, որը վերաբերում է միջուկային պոտենցիալների խիստ կրճատմանը: Ուստի, Սովետական Միությունը պատրաստ է ռեալ քայլ անել այդ ուղղությամբ, եվրոպական գոտում միջին հեռահարության հրթիռների հարցը լուծել առանձին՝ ստրատեգիական սպառազինությունների և տիեզերքի պրոբլեմների հետ անմիջական կապից դուրս:

Սովետական ծրագիրը հուզեց միլիոնավոր մարդկանց, նրա նկատմամբ քաղաքագետների ու հասարակական գործիչների հետաքրքրությունը շարունակում է մեծանալ: Ժամանակները հիմա այնպիսին են, որ դրանից խույս տալը դժվար է: Արդիականության անհետաձգելի պրոբլեմի լուծումը՝ միջուկային զենքի ոչնչացումն արագացնելու, այն պրակտիկ ռելսերի վրա փոխադրելու հարցում Սովետական Միության գործնական շահագրգռությունը կասկածի տակ դնելու փորձերն ավելի ու ավելի քիչ են համոզիչ դառնում. միջուկային զինաթափումը չի կարող մնալ որպես քաղաքագետների առանձնաշնորհ: Այս մասին այսօր մտորում է ամբողջ աշխարհը, քանի որ խոսքը բուն կյանքի մասին է:

Բայց հարկավոր է հաշվի առնել նաև իշխանության կենտրոնների արձագանքը, որոնք իրենց ձեռքին են պահում զինաթափման բանակցությունների հաջողության կամ անհաջողության բանալիները: Իհարկե, ԱՄՆ-ի կառավարող դասակարգերը, ավելի ճիշտ նրա առավել էգոիստական խմբերը, որոնք կապված են ռազմաարդյունաբերական կոմպլեքսի հետ, ունեն ուրիշ, բացահայտորեն հակադիր նպատակներ, քան մենք: Նրանց համար զինաթափումը շահույթների կորուստ է, քաղաքական ռիսկ, մեզ համար՝ բոլոր առումներով բարիք է՝ տնտեսապես, քաղաքականորեն ու բարոյապես:

Մենք գիտենք մեր հիմնական ընդդիմախոսներին, նրանց հետ հարաբերությունների ու բանակցությունների բարդ և տևական փորձ ենք կուտակել: Նախանցյալ օրը մենք պրեզիդենտ Ռեյգանից ստացանք հունվարի 15-ի մեր հայտարարության պատասխանը: Ամերիկյան կողմն իր նկատառումներն ավելի հանգամանորեն սկսել է շարադրել Ժնևի բանակցություններում: Մենք, անշուշտ, ուշադիր կուսումնասիրենք այն ամենը, ինչ այդ հարցերի վերաբերյալ կներկայացնեն ամերիկացիները: Բայց քանի որ պատասխանն ստացվել է բառացիորեն համագումարի բացման նախօրյակին, ԱՄՆ-ի վարչակազմը, ըստ երևույթին, ակնկալում է, համենայն դեպս մենք այդպես ենք ենթադրում, այն, որ արդեն այս ամբիոնից աշխարհն իմանա մեր վերաբերմունքը ամերիկյան դիրքորոշման նկատմամբ:

Կարող եմ միանգամից ասել, որ պրեզիդենտի նամակը հիմքեր չի տալիս ինչ-որ շտկումներ մտցնելու միջազգային իրադրության այն գնահատականներում, որոնք զեկուցման մեջ դրված էին մինչև ուղերձն ստանալը: Այնտեղ ասվում է, որ միջուկային զենքի վերացումը այն նպատակն է, որին պետք է ձգտեն բոլոր միջուկային տերությունները: Նամակով պրեզիդենտը ընդհանրապես համաձայնում է զինաթափման և անվտանգության հարցերի վերաբերյալ սովետական այս կամ այն դրույթներին ու մտադրություններին: Այլ կերպ ասած, պատասխանի մեջ կարծես թե հուսադրող որոշ դատողություններ ու դրույթներ են արտահայտվում:

Բայց այդ դրական արտահայտությունները սուզվում են զանազան կարգի վերապահումների, «շաղկապումների» և «պայմանների» մեջ, որոնք փաստորեն շրջափակում են զինաթափման արմատական հարցերի լուծումը: Ստրատեգիական միջուկային զինանոցի կրճատումը պայմանավորվում է «աստղային պատերազմների» ծրագրերի հետ, սովետական սովորական զենքի, ի դեպ՝ միակողմանի, կրճատման հետ մեր համաձայնությամբ: Հենց դրա հետ են շաղկապվում նաև ռեգիոնալ կոնֆլիկտների, երկկողմ հարաբերությունների պրոբլեմները: Եվրոպայում միջուկային զենքի վերացումը շրջափակվում է Անգլիայի և Ֆրանսիայի դիրքորոշման վկայակոչումներով, երկրի արևելքում մեր պաշտպանությունը թուլացնելու պահանջով՝ ամերիկյան ռազմական ուժերը այդ ռեգիոնում պահպանելով հանդերձ: Միջուկային փորձարկումները դադարեցնելուց հրաժարվելը արդարացվում է այն դատողություններով, թե միջուկային զենքը ծառայում է որպես «զսպող» գործոն: Սա ուղղակի հակասում է նամակում հավաստված նպատակին՝ միջուկային զենքը վերացնելու անհրաժեշտությանը: Հենց միջուկային պայթեցումների հարցում, որոնց դադարեցումն է պահանջում ամբողջ աշխարհը, առավել մերկապարանոց է դրսևորվում միջուկային զինաթափման ուղու վրա կանգնելու ԱՄՆ-ի և նրա կառավարող ուժերի ցանկության բացակայությունը:

Մի խոսքով, եթե մանրամասների մեջ չմտնենք, հենց նոր մեր ստացած փաստաթղթում դժվար է նկատել գործնականում միջուկային սպառնալիքի վերացման արմատական պրոբլեմների լուծմանը ձեռնամուխ լինելու ամերիկյան ղեկավարության լուրջ պատրաստակամությունը: Ինչպես երևում է, Վաշինգտոնում, և ոչ միայն այնտեղ, վարժվել են միջուկային զենքին, նրա հետ կապելով իրենց պլանները միջազգային ասպարեզում: Եվ այդուհանդերձ, Արևմուտքի քաղաքագետները հարկադրված կլինեն, անկախ նրանից դա ուզում են, թե ոչ, պատասխանել հետևյալ հարցին. նրանք արդյոք պատրա՞ստ են առհասարակ ձեռք քաշել միջուկային զենքից: **(Երկարատև ծափահարություններ):**

Ժնևում ձեռք բերված պայմանավորվածությանը համապատասխան նոր հանդիպում է տեղի ունենալու Միացյալ Նահանգների պրեզիդենտի հետ: Մենք դրա նշանակությունը համարում ենք այն, որ նա գործնական արդյունքներ տա սպառազինությունների սահմանափակման ու կրճատման կարևորագույն ուղղություններում:



Առնվազն երկու հարց կա, որոնց շուրջը կարող է պայմանավորվածություն ձեռք բերվել. միջուկային փորձարկումների դադարեցումը և եվրոպական գոտում միջին հեռահարության ամերիկյան և սովետական հրթիռների վերացումը: Եվ այն ժամանակ, ի դեպ, եթե համաձայնություն որոնելու պատրաստակամություն կա, հանդիպման ժամկետների հարցը ինքնըստինքյան լուծվում է: Մենք կընդունենք այդ առումով արված ամեն մի առաջարկություն: Բայց դատարկ խոսակցություններ վարել միտք չունի: Եվ անտարբեր չենք մնա, եթե սկսված սովետա-ամերիկյան երկխոսությունը, որը դրական փոփոխությունների հնարավորության որոշակի ու ոչ հիմքից զուրկ հույսեր ներշնչեց, օգտագործվի սպառազինությունների մրցավազքի շարունակման և պատերազմի նյութական նախապատրաստության համար: Սովետական Միությունը հաստատ տրամադրված է արդարացնելու մեր երկու երկրների, ամբողջ աշխարհի ժողովուրդների հույսերը, որոնք ՍՍՀՄ-ի ու ԱՄՆ-ի ղեկավարներից սպասում են կոնկրետ քայլեր, պրակտիկ գործողություններ, ռեալ պայմանավորվածություններ այն հարցի շուրջը, թե ինչպես կանգնեցնել սպառազինությունների մրցավազքը: Մենք պատրաստ ենք դրան: **(Երկարատև ծափահարություններ):**

Ինչպես ամեն մի այլ երկիր, մենք, բնականաբար, մեծ նշանակություն ենք տալիս մեր սահմանների՝ թե՛ ցամաքային, թե՛ ծովային սահմանների, անվտանգությանը: Մենք շատ հարևաններ ունենք, և նրանք տարբեր են: Նրանցից ոչ մեկի նկատմամբ մենք տերիտորիալ հավակնություններ չունենք, նրանցից ոչ մեկին մենք չենք սպառնում: Բայց, ինչպես արդեն քանիցս հաստատել է կյանքը, քիչ սիրահարներ չկան, որոնք, հաշվի չառնելով ոչ մեր երկրի, ոչ մեր հարևան պետությունների ազգային շահերը, ձգտում են սրել իրադրությունը Սովետական Միության սահմաններում:

Օրինակ, հակահեղափոխությունն ու իմպերիալիզմը արյունածոր վերքի են վերածել Աֆղանստանը: ՍՍՀՄ-ը պաշտպանում է այդ երկրի ջանքերը, որոնք նպատակամղված են նրա սուվերենության պաշտպանությանը: Մենք կցանկանայինք արդեն ամենամոտ ապագայում հայրենիք վերադարձնել սովետական զորքերը, որոնք Աֆղանստանում են գտնվում նրա կառավարության խնդրանքով: Աֆղանական կողմի հետ համաձայնեցված են նաև դրանց փուլ առ փուլ դուրսբերման ժամկետները, հենց որ քաղաքական կարգավորում ձեռք բերվի, որն ապահովի Աֆղանստանի Դեմոկրատական Հանրապետության ներքին գործերին արտաքին զինված միջամտության ռեալ դադարեցում և հուսալիորեն երաշխավորի, որ այն չի վերսկսվի: **(Ծափահարություններ):** Մեր կենսական, ազգային շահն այն է, որ ՍՍՀՄ-ը բոլոր սահմանակից պետությունների հետ շարունակ ունենա լավ և խաղաղ հարաբերություններ: Դա մեր արտաքին քաղաքականության էականորեն կարևոր նպատակն է: **(Ծափահարություններ):**

ՍՄԿԿ-ն իր միջազգային գործունեության հիմնական ուղղություններից մեկը համարում է **եվրոպականը:** Եվրոպայի պատմական հաջողությունը, նրա ապագան կախված է այդ մայրցամաքի պետությունների խաղաղ համագործակցությունից: Եվ կարևոր է, պահպանելով արդեն կուտակված կապիտալը, առաջ ընթանալ. նախնականից դեպի լիցքաթափման ավելի կայուն փուլ, դեպի հասուն լիցքաթափում, իսկ այնուհետև դեպի հուսալի անվտանգության ստեղծում Հելսինկիի պրոցեսի հիմքի վրա, միջուկային և սովորական սպառազինությունների արմատական կրճատման հիմքի վրա:

Աճում է **ասիական և խաղաղօվկիանոսյան ուղղության** նշանակությունը: Այդ ընդարձակ շրջանում քիչ չեն հակասությունների խճճված հանգույցները, ասենք քաղաքական իրավիճակն էլ առանձին տեղերում անկայուն է: Այստեղ, ընդ որում առանց հետաձգելու, հարկավոր է գտնել յուր լուծումները, յուր ուղիները: Ըստ երևույթին, պետք է սկսել ցավոտ պրոբլեմների քաղաքական կարգավորման նպատակով ջանքերի կոորդինացումից, իսկ ապա նաև միավորումից, որպեսզի այդ հիմքի վրա զուգահեռաբար գոնե վերացվի ռազմական դիմակայության սրությունը Ասիայի տարբեր շրջաններում, այստեղ կայունացվի իրավիճակը:

Դա առավել ևս անհետաձգելի գործ է, քանի որ թե՛ Ասիայում, թե՛ ուրիշ մայրցամաքներում չեն մարում **պատերազմի վտանգի օջախները:** Մենք հանդես ենք գալիս հօգուտ այն բանի, որպեսզի ակտիվացվեն Մերձավոր և Միջին Արևելքում, Կենտրոնական Ամերիկայում, Աֆրիկայի հարավում, մոլորակի բոլոր փոթորկալի

կետերում տիրող կոնֆլիկտային իրավիճակների վերացման ուղիների կոլեկտիվ որոնումները: Այս բանը հրամայաբար պահանջում են համընդհանուր անվտանգության շահերը:

Ճգնաժամերն ու կոնֆլիկտները բարեբեր հող են նաև միջազգային տեռորիզմի համար: Չհայտարարված պատերազմները, հակահեղափոխության ամեն ձևի արտահանումը, քաղաքական սպանությունները, պատանդներ վերցնելը, ինքնաթիռներ հափշտակելը, փողոցներում, օդանավակայաններում և կայարաններում կատարվող պայթեցումները տեռորիզմի արգահատելի դեմքն են, որը նրա ոգեշնչողները ձգտում են քողարկել տարբեր կարգի ցինիկ հնարանքներով: ՍՍՀՄ-ը սկզբունքորեն մերժում է տեռորիզմը և պատրաստ է դա արմատախիլ անելու համար եռանդով համագործակցել մյուս պետությունների հետ: Սովետական Միությունն իր քաղաքացիներին վճռականորեն կպաշտպանի բռնության ակտերից, ամեն բան կանի նրանց կյանքը, պատիվն ու արժանապատվությունը պաշտպանելու համար: **(Երկարատև ծափահարություններ):**

Հետադարձ հայացք գցելով անցած տարվա վրա, չի կարելի չտեսնել. դատելով ըստ ամենայնի, սկսում են ձևավորվել միջազգային իրադրության առողջացման նախադրյալներ: Բայց շրջադարձի նախադրյալները դեռ բուն շրջադարձը չեն: Սպառազինությունների մրցավազքը շարունակվում է, միջուկային պատերազմի սպառնալիքը՝ մնում: Սակայն միջազգային ռեակցիան բնավ էլ ամենակարող չէ: Համաշխարհային հեղափոխական պրոցեսի զարգացումը, մասսայական դեմոկրատական ու հակապատերազմական շարժումների վերելքը զգալիորեն ընդլայնել ու ուժեղացրել են **խաղաղության, բանականության ու բարի կամքի հսկայական պոտենցիալը:** Դա հզոր հակակշիռ է իմպերիալիզմի ագրեսիվ քաղաքականությանը: **(Ծափահարություններ):**

Այսօր խաղաղության և սոցիալական առաջադիմության բախտը, ավելի, քան երբևէ, սերտորեն կապված է **սոցիալիզմի համաշխարհային սիստեմի տնտեսական ու քաղաքական զարգացման** դինամիզմի հետ: Այդպիսի դինամիզմի պահանջը թելադրվում է ժողովուրդների բարեկեցության նկատմամբ հոգատարությամբ: Բայց այն սոցիալիստական աշխարհին անհրաժեշտ է նաև պատերազմի վտանգին հակազդելու տեսակետից: Վերջապես, դա սոցիալիստական ապրելակերպի հնարավորությունների ցուցադրումն է: Մեզ նայում են թե՛ բարեկամները, թե՛ թշնամիները, մեզ նայում է զարգացող երկրների հսկայական, բազմադեմ աշխարհը: Նա փնտրում է իր ընտրությունը, իր ուղին, և սոցիալիզմի հաջողություններից, ժամանակի մարտահրավերներին նրա պատասխանների համոզչությունից է մեծապես կախված, թե ինչպիսին կլինի այդ ընտրությունը:

Մենք համոզված ենք, որ սոցիալիզմն ունակ է լուծելու իր ամենաբարդ խնդիրները: Դրա համար կենսականորեն կարևոր է է՛լ ավելի ակտիվ փոխգործողություն, որը տալիս է ոչ թե պարզապես մեր պոտենցիալների գումարման, այլ բազմապատկման արդյունք, ծառայում որպես ընդհանուր առաջընթացի արագացման խթան: Դա արտացոլված է նաև սոցիալիստական ընկերակցության երկրների համատեղ փաստաթղթերում:

Նրանց **քաղաքական համագործակցության ոգին** մնում է կառավարող կոմունիստական կուսակցությունների փոխգործողությունը: Վերջին տարվա ընթացքում փաստորեն չի եղել այնպիսի մի եղբայրական երկիր, որի ղեկավարության հետ մենք հանդիպումներ ու հանգամանալի զրույցներ ունեցած չլինենք: Նորացվում են նաև այդպիսի համագործակցության բուն ձևերը: Ստեղծվում է դրա նոր, գուցե և ամենակարևոր օղակը՝ եղբայրական երկրների ղեկավարների բազմակողմանի աշխատանքային հանդիպումների ինստիտուտը: Դրանք թույլ են տալիս օպերատիվորեն, ընկերաբար խորհրդակցել սոցիալիստական շինարարության պրոբլեմների ամբողջ կոմպլեքսի, նրա ներքին ու արտաքին հարցերի շուրջ:

Ոչ պարզ միջազգային իրադրության մեջ մեծ նշանակություն ունեցավ **Վարշավայի պայմանագրի** երկարացումը՝ նրա մասնակիցների միահամուռ որոշմամբ: Այդ պայմանագիրը ասես երկրորդ ծնունդն ստացավ. առանց նրա այսօր դժվար է պատկերացնել ամբողջությամբ վերցրած համաշխարհային քաղաքականությունը: Վերջերս պայմանագրի քաղաքական կոնսուլտատիվ կոմիտեի Սոֆիայի խորհրդակցությունը: Այն դարձավ Ժնևի երկխոսության յուրօրինակ նախաշեմ:



**Էկոնոմիկայի** մեջ ընդունվել է գիտատեխնիկական առաջադիմության կոմպլեքսային ծրագիր: Նրա իմաստը ՏՓԽ-ի երկրների անցումն է համաձայնեցված գիտատեխնիկական քաղաքականության: Ծանրության կենտրոնը փոխադրվում է առավելապես առևտրական կապերից արտադրության մասնագիտացման և կոոպերացման վրա, հատկապես մեքենաշինության մեջ: Մեր կարծիքով, փոփոխություններ են պահանջվում նաև սոցիալիստական ինտեգրացման բուն շտաբի՝ Տնտեսական փոխօգնության խորհրդի գործունեության մեջ: Իսկ գլխավորն այն է, որ ծրագրի իրականացման գործում լինեն ավելի քիչ վարչարարություն, ամեն կարգի կոմիտեներ ու հանձնաժողովներ, ավելի մեծ ուշադրություն նվիրվի տնտեսական լծակներին, նախաձեռնությանը, սոցիալիստական ձեռներեցությանը, այդ պրոցեսի մեջ աշխատավորական կոլեկտիվների ներգրավմանը: **(Ծափահարություններ):** Դա էլ հենց կլինի խորապես կուսակցական մոտեցում, որն անհրաժեշտ է այդպիսի ոչ սովորական նախաձեռնության համար: **(Ծափահարություններ):**

Եռանդ, գործարարություն, նախաձեռնություն՝ այս բոլոր հատկանիշները համապատասխանում են ժամանակի պահանջներին, և մենք կձգտենք, որ դրանք տարածվեն եղբայրական կուսակցությունների փոխհարաբերությունների ամբողջ համակարգի վրա: ՍՄԿԿ-ն ավելի ու ավելի մեծ նշանակություն է տալիս սոցիալիստական երկրների քաղաքացիների, տարբեր մասնագիտությունների, տարբեր սերունդների մարդկանց կենդանի, լայն շփմանը: Դա փոխադարձ հոգևոր հարստացման աղբյուր է, մտքերի, գաղափարների, **սոցիալիստական շինարարության փորձի** փոխանակության միջոց: Իսկ այսօր առանձնապես կարևոր է զարգացման հիման վրա, և ոչ թե մեկ, այլ մի շարք երկրների, վերլուծել սոցիալիստական ապրելակերպի բնույթը, իմաստավորել դեմոկրատիայի, կառավարման մեթոդների, կադրային քաղաքականության կատարելագործման պրոցեսները: Միմյանց փորձի նկատմամբ հոգատար, հարգալից վերաբերմունքը, պրակտիկայում դրա կիրառումը սոցիալիստական աշխարհի հսկայական ռեզերվն է: **(Ծափահարություններ):**

Առհասարակ, սոցիալիզմի առավելություններից մեկը՝ սովորելու նրա ընդունակությունն է: Սովորել լուծել այն պրոբլեմները, որ առաջադրում է կյանքը: Սովորել կանխել ճգնաժամային այն իրավիճակները, որոնք ձգտում է ստեղծել և օգտագործել մեր դասակարգային հակառակորդը: Սովորել հակազդել սոցիալիստական աշխարհը շերտավորելու, որոշ երկրներ մյուսներին հակադրելու փորձերին: Սովորել թույլ չտալ տարբեր սոցիալիստական պետությունների շահերի բախումներ, փոխադարձորեն ներդաշնակ դարձնել այդ շահերը, գտնել անգամ ամենաբարդ պրոբլեմների փոխադարձաբար ընդունելի լուծումներ:

Մեզ թվում է, որ արժե ուշի-ուշով նայել նաև ամբողջությամբ վերցրած սոցիալիզմի աշխարհում տիրող փոխհարաբերությունները: Մենք չենք գտնում, թե ընկերակցությունը որևէ արգելապատով բաժանված է սոցիալիզմի մյուս երկրներից: ՍՄԿԿ-ն հանդես է գալիս բոլոր կոմունիստական կուսակցությունների, համաշխարհային սոցիալիստական սիստեմի բոլոր պետությունների հետ ազնիվ, անկեղծ հարաբերությունների օգտին, նրանց հետ կարծիքների ընկերական փոխանակության օգտին: Մենք ձգտում ենք առաջին հերթին տեսնել այն, ինչը միավորում է սոցիալիստական աշխարհը: **(Ծափահարություններ):** Ուստի, սովետական կոմունիստներին ուրախացնում է սոցիալիստական բոլոր պետությունների մերձեցման ճանապարհին կատարված յուրաքանչյուր քայլ, նրանց հարաբերություններում յուրաքանչյուր դրական տեղաշարժ:

Կարելի է գոհունակությամբ խոսել մեծ հարևանի՝ **սոցիալիստական Չինաստանի հետ** Սովետական Միության փոխհարաբերությունների որոշակի բարելավման մասին: **(Ծափահարություններ):** Մոտեցումների տարբերությունները, մասնավորապես մի շարք միջազգային պրոբլեմների նկատմամբ, պահպանվում են: Բայց մենք նշում ենք նաև մեկ այլ հանգամանք՝ շատ դեպքերում համատեղ աշխատելու, իրավահավասար ու սկզբունքային հիմքի վրա, ոչ ի վնաս երրորդ երկրների, փոխգործակցելու հնարավորությունը:

Դրա նշանակությունը պարզաբանելու անհրաժեշտություն չկա: Չին կոմունիստները երկրորդ համաշխարհային պատերազմում ՍՍՀՄ-ի և առաջադիմության ուժերի հաղթանակներն անվանում էին Չինաստանում ժողովրդական հեղափոխության հաղթանակի նախերգանք: Իր հերթին ժողովրդական Չինաստանի կազմավորումը

նպաստեց սոցիալիզմի համաշխարհային դիրքերի ամրապնդմանը, ետպատերազմյան դժվարագույն տարիներին իմպերիալիզմի շատ դիտավորությունների ու ակտերի ձախողմանը: Խորհելով ապագայի շուրջ՝ կարելի է ասել, որ ՍՍՀՄ-ի և Չինաստանի համագործակցության ռեզերվները հսկայական են: Դրանք մեծ են, որովհետև այդպիսի համագործակցությունը համապատասխանում է երկու երկրների շահերին, որովհետև անբաժանելի է մեր ժողովուրդների համար ամենաթանկը՝ սոցիալիզմն ու խաղաղությունը: **(Ծափահարություններ):**

**ՍՄԿԿ-ն միջազգային կոմունիստական շարժման անկապտելի մասն է:** Մենք՝ սովետական կոմունիստներս, լավ ենք հասկանում. սոցիալիստական շինարարության ասպարեզում մեր յուրաքանչյուր հաղթանակ նաև ամբողջ շարժման հաղթանակն է: Ուստի, ՍՄԿԿ-ն իր գլխավոր ինտերնացիոնալ պարտքը տեսնում է Հոկտեմբերի բացած ու հարթած ուղիով մեր երկրի հաջող առաջընթացի մեջ:

Կոմունիստական շարժումը աշխարհի ոչ սոցիալիստական մասում մնում է որպես բուրժուազիայի հետադիմական շրջանների կողմից քաղաքական ճնշման ու հետապնդումների գլխավոր օբյեկտ: Բոլոր եղբայրական կուսակցությունները գտնըվում են հակակոմունիստական պրոպագանդայի մշտական կրակի տակ, որը չի խորշում ամենաստոր միջոցներից ու հնարքներից: Շատ կուսակցություններ գործում են ընդհատակում, իսկական հալածանքների ու բռնությունների պայմաններում: Կոմունիստները ոչ մի բանի չեն հասնում առանց պայքարի, որը պահանջում է նաև անձնական խիզախություն: Թույլ տվեք, ընկերներ, XXVII համագումարի անունից, սովետական կոմունիստների անունից անկեղծ հիացմունքի զգացումներ արտահայտել մեր ընկերների անձնվեր պայքարին, եղբայրական խոր համերաշխություն հայտնել նրանց հետ: **(Բուռն ծափահարություններ):**

Վերջին տարիներս կոմունիստական շարժումը բախվել է բազմաթիվ նոր իրողությունների, խնդիրների, պրոբլեմների: Ամեն ինչ վկայում է, որ այն թևակոխել է զարգացման որակապես այլ փուլ: Արագորեն և խորապես փոխվում են կոմունիստների աշխատանքի միջազգային պայմանները: Էական վերակառուցում է տեղի ունենում բուրժուական հասարակության սոցիալական կառուցվածքում, այդ թվում նաև՝ բանվոր դասակարգի կազմում: Ոչ հասարակ պրոբլեմներ են ծառանում երիտասարդ ինքնուրույն պետություններում մեր բարեկամների առջև: Ոչ սոցիալիստական աշխարհում աշխատավորների նյութական դրության և գիտակցության վրա հակասական ազդեցություն է գործում գիտատեխնիկական հեղափոխությունը: Այս ամենը պահանջում է շատ բան վերաիմաստավորելու կարողություն, պահանջում է համարձակ, ստեղծագործական մոտեցում նոր իրողությունների նկատմամբ՝ Մարքսի, Էնգելսի, Լենինի անմահ ուսմունքի հիման վրա: ՍՄԿԿ-ն դա լավ գիտի սեփական փորձով:

Կոմունիստական շարժման, նրա առջև ծառացող խնդիրների հսկայական բազմազանությունը նույնպես իրողություն է: Երբեմն դա հանգեցնում է տարաձայնությունների ու հակասությունների: ՍՄԿԿ-ն դրամատիզմի չի վերածում այն, որ կոմունիստական կուսակցությունների միջև միշտ և ամեն ինչում չէ, որ լիակատար միահամուռություն կա: Առանց բացառության բոլոր հարցերում հայացքների նույնություն, ըստ երևույթին, առհասարակ լինել չի կարող: Կոմունիստական շարժումը ձևավորվեց այն ժամանակ, երբ բանվոր դասակարգը միջազգային ասպարեզ դուրս եկավ որպես ինքնուրույն ու հզոր քաղաքական ուժ: Այդ շարժումը կազմող կուսակցությունները, որոնք աճել են ազգային հողի վրա, հետապնդում են ընդհանուր վերջնական նպատակներ՝ խաղաղություն և սոցիալիզմ: Սա էլ այն գլխավորն է, որոշիչը, որ նրանց միավորում է: **(Ծափահարություններ):**

Մենք գտնում ենք, որ մեր շարժման բազմազանությունը տարանջատվածության հոմանիշ չէ, ճիշտ այնպես, ինչպես միասնությունը ընդհանուր ոչինչ չունի միօրինակության հետ, հիերարխիայի հետ, մի կուսակցության կողմից մյուսների գործերին միջամտելու հետ, որևէ կուսակցության կողմից ճշմարտության մենաշնորհի ձգտելու հետ: Կոմունիստական շարժումը կարող է և պետք է ուժեղ լինի իր դասակարգային համերաշխությամբ, ընդհանուր նպատակների պայքարում բոլոր եղբայրական կուսակցությունների իրավահավասար համագործակցությամբ: ՍՄԿԿ-ն այսպես է հասկանում միասնությունը և մտադիր է ըստ ամենայնի նպաստել դրան: **(Ծափահարություններ):**



Խաղաղության, բանականության և բարի կամքի պոտենցիալի ամրապնդման միտումն անխախտ է և սկզբունքորեն անշրջելի: Դրանում է արտահայտվում մարդկանց, բոլոր ժողովուրդների ձգտումը՝ ապրելու համաձայնության ու համագործակցության պայմաններում: Հարկավոր է, սակայն, սթափ նայել իրերին. պատերազմի դեմ մղվող պայքարում ուժերի հարաբերակցությունը ստեղծվում է առաջադիմության ու հետադիմության միջև սուր և դինամիկ հակամարտության ընթացքում: Անփոփոխ են մնում ազգային և սոցիալական ազատագրության ուժերի հետ ՍՄԿԿ-ի համերաշխությունը, սոցիալիստական կողմնորոշման երկրների, հեղափոխական-դեմոկրատական կուսակցությունների, չմիանալու շարժման հետ սերտ փոխգործողության մեր գիծը: Սովետական հասարակայնությունը պատրաստ է այսուհետև նույնպես զարգացնել կապերը ոչ կոմունիստական հոսանքների ու կազմակերպությունների, այդ թվում կրոնական կազմակերպությունների հետ, որոնք հանդես են գալիս ընդդեմ պատերազմի:

Այս տեսանկյունից էլ ՍՄԿԿ-ն դիտում է իր հարաբերությունները **սոցիալ-դեմոկրատիայի հետ:** Խոսք չկա, կոմունիստների և սոցիալ-դեմոկրատների միջև գաղափարախոսական տարաձայնությունները խորն են, փորձն ու նվաճումները՝ տարբեր ու անհամարժեք: Սակայն միմյանց դիրքերին ու հայացքներին անկանխակալ կերպով ծանոթանալը, անկասկած, օգտակար է թե՛ կոմունիստների համար, թե՛ սոցիալ-դեմոկրատների համար: Օգտակար է նախ և առաջ խաղաղության և միջազգային անվտանգության համար պայքարն ակտիվացնելու նպատակով:

Մենք ապրում ենք ռեալ աշխարհում և մեր միջազգային քաղաքականությունը կառուցում ենք՝ հաշվի առնելով միջազգային զարգացման ներկա փուլի կոնկրետ առանձնահատկությունները: Դրա ստեղծագործական վերլուծությունը, հեռանկարները տեսնելը մեզ հանգեցրել են մի հետևության և շատ կարևոր հետևության: Այսօր, ինչպես երբեք, կարևոր է գտնել աշխարհի խաղաղության բախտով իրոք մտահոգված այն կառավարությունների, կուսակցությունների, հասարակական կազմակերպությունների ու շարժումների հետ, բոլոր ժողովուրդների հետ ավելի սերտ ու արգասավոր համագործակցության ուղիներ՝ **հանուն միջազգային անվտանգության համապարփակ համակարգի ստեղծման: (Երկարատև ծափահարություններ):**

Այսպիսի համակարգի սկզբունքային **հիմունքները** պատկերացվում են հետևյալ կերպ.

### 1. Ռազմական բնագավառում

— միմյանց դեմ միջուկային տերությունների կամ երրորդ պետությունների դեմ ինչպես միջուկային, այնպես էլ սովորական պատերազմից հրաժարում.

— սպառազինությունների մրցավազքի կանխում տիեզերքում, միջուկային զենքի բոլոր փորձարկումների դադարեցում և դրա լրիվ վերացում, քիմիական զենքի արգելում և ոչնչացում, մասսայական բնաջնջման մյուս միջոցների ստեղծումից հրաժարում.

— պետությունների ռազմական պոտենցիալների մակարդակների խիստ վերահսկելի իջեցում՝ մինչև խելամիտ բավարարության սահմանների.

— ռազմական խմբավորումների արձակում, և որպես դեպի այդ տանող մեկ աստիճան՝ դրանց ընդլայնումից և նորերի ստեղծումից հրաժարում.

— ռազմական բյուջեների համամասնական և համաչափ կրճատում:

### 2. Քաղաքական բնագավառում

— միջազգային պրակտիկայում իր զարգացման ուղիներն ու ձևերը ասվերեն կերպով ընտրելու յուրաքանչյուր ժողովրդի իրավունքի անվերապահ հարգում.

— միջազգային ճգնաժամերի ու ռեգիոնալ կոնֆլիկտների արդարացի քաղաքական կարգավորում.

— այնպիսի միջոցառումների կոմպլեքսի մշակում, որոնք նպատակամղված լինեն պետությունների միջև վստահության ամրապնդմանը, նրանց վրա արտաքին հարձակումից գործուն երաշխիքների ստեղծմանը, նրանց սահմանների անձեռնմխելիությանը.

— միջազգային տեռորիզմի կանխման արդյունավետ մեթոդների մշակում, նե-

բաղյալ միջազգային ցամաքային, օդային և ծովային կոմունիկացիաներից օգտվելու անվտանգությունը:

#### 3. Տնտեսական բնագավառում

— միջազգային պրակտիկայից խտրականության բոլոր ձևերի բացառում, տնտեսական շրջափակումների և սանկցիաների քաղաքականությունից հրաժարում, եթե դա ուղղակիորեն չի նախատեսվում համաշխարհային հանրության հանձնարարականներով.

— պարտքերի պրոբլեմի արդարացի կարգավորման ուղիների համատեղ որոնում.

— համաշխարհային այնպիսի նոր տնտեսական կարգի սահմանում, որը երաշխավորի բոլոր պետությունների հավասար տնտեսական անվտանգությունը.

— հանրության, հասարակայնության, նախ և առաջ զարգացող երկրների բարօրության համար այն միջոցների մի մասի օգտագործման սկզբունքների մշակում, որոնք կազատվեն ռազմական բյուջեների կրճատման շնորհիվ.

— տիեզերքի հետազոտման և խաղաղ օգտագործման, այնպիսի համընդհանուր պրոբլեմների լուծման գործում ջանքերի միավորում, որոնցից կախված է քաղաքակրթության բախտը:

#### 4. Հումանիտար բնագավառում

— համագործակցություն խաղաղության, զինաթափման, միջազգային անվտանգության գաղափարների տարածման ասպարեզում. ընդհանուր օբյեկտիվ իրազեկության, միմյանց կյանքին ժողովուրդների փոխադարձ ծանոթացման մակարդակի բարձրացում, նրանց հարաբերություններում փոխըմբռնման ու համաձայնության ոգու ամրապնդում.

— ցեղասպանության, ապարտեիդի վերացում, ֆաշիզմի և ամեն տեսակ այլ ռասայական, ազգային կամ կրոնական բացառիկության քարոզի, ինչպես նաև այդ հիմքի վրա մարդկանց խտրականության վերացում.

— յուրաքանչյուր երկրի օրենքները հարգելու հիման վրա մարդու քաղաքական, սոցիալական և անձնական իրավունքների իրականացման գործում միջազգային համագործակցության ընդլայնում.

— մարդասիրական և դրական ոգով ընտանիքների վերամիավորման, ամուսնության հարցերի լուծում, մարդկանց, կազմակերպությունների միջև կոնտակտների զարգացում.

— մշակույթի, արվեստի, գիտության, կրթության և բժշկության ոլորտում համագործակցության ամրապնդում և դրա նոր ձևերի որոնում:

Այս հիմունքները տրամաբանորեն բխում են ՍՄԿԿ ծրագրի դրույթներից: Դրանք լիովին համապատասխանում են մեր կոնկրետ արտաքին քաղաքական նախաձեռնություններին: Առաջնորդվելով դրանցով, կարելի էր հասնել այն բանին, որ խաղաղ գոյակցությունը դառնար միջպետական հարաբերությունների բարձրագույն ունիվերսալ սկզբունքը: **(Երկարատև ծափահարություններ):** Մեր կարծիքով, հիմունքները կարող էին դառնալ համաշխարհային հանրության, երկրների ղեկավարների թե՛ երկկողմ, թե՛ բազմակողմ ուղղակի, սիստեմատիկ երկխոսության ելակետն ու յուրօրինակ շրջանակները:

Եվ քանի որ խոսքը աշխարհի բախտի մասին է, ապա նման երկխոսությունն առանձնապես կարևոր է անվտանգության խորհրդի մշտական անդամների՝ **միջուկային հինգ** տերությունների միջև: Նրանց վրա է ընկած մարդկության բախտի համար պատասխանատվության գլխավոր ծանրությունը: Ընդգծում եմ՝ ոչ թե արտոնություն, ոչ թե համաշխարհային գործերում «ղեկավարման» հավակնությունների հիմք, այլ պատասխանատվություն, որը ոչ ոք իրավունք չունի մոռանալ: Իսկ ինչո՞ւ այդ դեպքում նրանց ղեկավարները չհավաքվեն **կլոր սեղանի** շուրջը և չքննարկեն, թե ինչ կարելի է և պետք է անել խաղաղության ամրապնդման համար: **(Ծափահարություններ):**

Մեր կարծիքով, լիակատար հաստույցով պետք է սկսի գործել նաև սպառազինությունների սահմանափակման բանակցությունների ստեղծված ամբողջ մեխանիզմը: Մի՞թե կարելի է «ընտելանալ» նրան, երբ ասես զուգահեռ ուղղություններով



տարիներով շարունակվում են նման բանակցությունները և միաժամանակ մեծացվում են սպառազինությունները:

ՍՍՀՄ-ը մեծ ուշադրություն է դարձնում համաշխարհային էկոնոմիկայի, զինաթափման ու զարգացման փոխադարձ կապի, առևտրի և գիտատեխնիկական համագործակցության ընդլայնման պրոբլեմների ու հեռանկարների համատեղ քննարկմանը միջազգային համաժողովներում, այդ թվում՝ Հելսինկիի պրոցեսի շրջանակներում: Ապագայում մենք կարևոր գործ կհամարեինք **տնտեսական անվտանգության պրոբլեմներին նվիրված համաշխարհային կոնգրեսի** գումարումը, որտեղ հնարավոր կլիներ կոմպլեքսայնորեն քննարկել այն ամենը, ինչը ծանրացնում է համաշխարհային տնտեսական կապերը:

Մենք պատրաստ ենք լրջորեն քննության առնել նաև այդ նույն ուղղությամբ ընթացող ցանկացած այլ առաջարկություններ:

Պատերազմի դեմ մղվող ճակատամարտում պետք է անպայման հաջողության հասնել: Հաջողություն, որը կդառնա բովանդակ մարդկության պատմական հաղթանակը, երկրագնդի յուրաքանչյուր մարդու հաղթանակը: Այդ ճակատամարտին ակտիվորեն մասնակցելը ՍՄԿԿ-ն համարում է իր արտաքին քաղաքական ստրատեգիայի բուն էությունը: **(Երկարատև ծափահարություններ):**

## V.

## Կ Ո Ւ Ս Ա Կ Ց Ո Ւ Թ Յ Ո Ւ Ն Ը

Ընկերնե՛ր: Առաջիկա անելիքների մասշտաբներն ու նորությունը բացառիկ բարձր պահանջներ են ներկայացնում ՍՄԿԿ-ի քաղաքական, գաղափարախոսական և կազմակերպչական գործունեության բնույթին, որն այսօր միավորում է նպատակի, կամքի ու կարգապահության միասնությամբ զոդված ավելի քան 19 միլիոն կոմունիստների: **(Ծափահարություններ):**

Կուսակցության ուժն այն է, որ նա զգում է ժամանակը, կյանքի զարկերակը, մշտապես գործում է մասսաների խորքում: Եվ ամեն անգամ, երբ երկրի առջև նոր խնդիրներ են ծառանում, կուսակցությունը գտնում է դրանց լուծման ուղիները, վերակառուցում, ձևափոխում է ղեկավարման մեթոդները, ցուցադրելով երկրի ճակատագրի, սոցիալիզմի և կոմունիզմի գործի համար պատմական պատասխանատվության բարձրության վրա գտնվելու ընդունակությունը:

Կյանքն ինքն է մշտապես ստուգում մեր հնարավորությունները: Այդ տեսակետից վերջին տարին առանձնահատուկ էր: Ավելի քան երբևէ պահանջվում էին կուսակցական շարքերի համախմբվածություն, Կենտկոմի միասնություն: Մենք լավ էինք հասկանում, որ այլևս չի կարելի խույս տալ հասարակության զարգացման հասունացած պրոբլեմներից, հաշտվել անպատասխանատվության, անպահանջկոտության, անտարբերության հետ: Այդ պայմաններում Կենտկոմի քաղբյուրոն, քարտուղարությունը, Կենտրոնական կոմիտեն դիմեցին ժամանակի կողմից թելադրվող արմատական հարցերի լուծմանը: Այդ ճանապարհին կարևորագույն ուղենիշ դարձավ Կենտկոմի ապրիլյան պլենումը: Մենք ժողովրդին ազնվորեն ասացինք մեր աշխատանքում եղած դժվարությունների ու վրիպումների, ամենամոտ ժամանակի և հեռանկարային պլանների մասին: Այսօր համագումարում կարելի է վստահորեն հայտարարել, որ ապրիլյան պլենումի գիծը արժանացել է կոմունիստների, միլիոնավոր աշխատավորների ակտիվ պաշտպանությանը: **(Ծափահարություններ):**

Ներկա փուլը՝ հասարակության որակական վերափոխման փուլը, կուսակցությունից, նրա յուրաքանչյուր կազմակերպությունից պահանջում է նոր ջանքեր, սեփական գործունեության գնահատականների սկզբունքայնություն, գործարարություն և անձնվիրություն: Համագումարին ներկայացված կուսակցական ծրագրի նոր խմբագրության և ՍՄԿԿ կանոնադրության փոփոխությունների նախագծերը ելնում են այն բանից, որ արագացման բոլոր գործոնների մոբիլիզացման խնդիրը ընդունակ է լուծելու միայն ժողովրդի շահերով ապրող կուսակցությունը, գիտականորեն հիմնավորված հեռանկար ունեցող կուսակցությունը, որն իր աշխատանքով ամրապնդում

է այն վստահությունը, որ առաջադրված նպատակները կիրագործվեն: **(Ծափահարություններ):**

Կուսակցությունը կարող է հաջողությամբ լուծել նոր խնդիրներ, եթե ինքը գտնըվում է անընդհատ զարգացման մեջ, զերծ է «անսխալականության» կոմպլեքսից, քննադատաբար է գնահատում ձեռք բերած արդյունքները, պարզորոշ տեսնում անելիքները: Պրոբլեմների մասշտաբայնություն ու բարդություն, անցյալից լրիվ չափով անզիջում դասեր քաղելու անհրաժեշտություն՝ հենց սրանցով են թելադրվում կադրերին, աշխատանքի ամբողջ ոճին, նրա մեթոդներին ու բնույթին ներկայացվող նոր պահանջները:

Այսօր, ընկերնե՛ր, մենք պետք է կենտրոնանանք աշխատանքի գործնական կազմակերպման, կադրերի, կուսակցական ակտիվի տեղաբաշխման ու դաստիարակման վրա, նայենք մեր ամբողջ գործունեությանը կուսակցական նորովի հայացքով՝ բոլոր մակարդակներով, բոլոր տեղամասերում: Այդ առնչությամբ ուզում եմ հիշեցնել լենինյան խոսքերը. «Երբ իրադրությունը փոխվել է, և մենք պետք է այլ բնույթի խնդիրներ լուծենք, ապա այստեղ չի կարելի ետ նայել և փորձել երեկվա եղանակով լուծել: Մի փորձեք՝ չեք լուծի»: **(Ծափահարություններ):**

## 1. Աշխատել նորովի, բարձրացնել կուսկազմակերպությունների դերն ու պատասխանատվությունը

Կուսակցական աշխատանքի վերակառուցման էությունն այն է, որ յուրաքանչյուր կուսակցական կազմակերպություն՝ հանրապետականից մինչև սկզբնականը, ակտիվորեն պայքարի ապրիլյան պլենումի գծի կենսագործման համար, ապրի որոշումների, իր գործունեության ձևերի ու մեթոդների նորացման մթնոլորտում: Եվ դա կարելի է անել միայն բոլոր կոմունիստների ջանքերով, բուն կուսակցության ներսում դեմոկրատիայի ըստ ամենայնի զարգացման, բոլոր մակարդակներով կոլեկտիվ ղեկավարման սկզբունքի իրականացման, քննադատության ու ինքնաքննադատության, վերահսկողության ծավալման, գործի նկատմամբ պատասխանատու վերաբերմունքի միջոցով: Միայն այդ դեպքում է ծնվում նորության ոգին, անհանդուրժելի են դառնում քարացածությունն ու լճացումը:

Մենք արդարացիորեն վրդովվում ենք ամեն կարգի թերություններից, դրանց կոնկրետ կրողներից՝ իրենց պարտականությունները քամահրող, հասարակական շահերի նկատմամբ անտարբեր մարդկանցից՝ խոտանարարից ու անբանից, գոփողից ու անստորագիր նամակներ գրողից, բյուրոկրատից ու կաշառակերից: Բայց դրանք ապրում և աշխատում են կոնկրետ կոլեկտիվում, քաղաքում, գյուղում, տվյալ կազմակերպության մեջ, այլ ոչ թե մեզանից անջատ, ինչ-որ տեղ: Ուրեմն էլ ով, եթե ոչ կոլեկտիվը, եթե ոչ կոմունիստները պետք է ամբողջ ձայնով հայտարարեն, որ մեր աշխատավոր հասարակության մեջ յուրաքանչյուր ոք պարտավոր է աշխատել խղճի մտոք, ապրել՝ անշեղորեն պահպանելով սոցիալիստական համակեցության նորմերը, որոնք միատեսակ են բոլորի համար: **(Ծափահարություններ):** Ի՞նչը և ո՞վ է խանգարում դրան:

Ահա այստեղ էլ ամբողջ հասակով մեկ ծառանում է կուսակցական կազմակերպության դերն ըստ ամենայնի բարձրացնելու խնդիրը: Մեզ՝ կոմունիստներիս, վայել չէ մեղքը գցել ուրիշի վրա: Եթե կուսակցական կազմակերպությունն ապրում է սկզբունքային հարաբերությունների վրա հիմնված լիարժեք կյանքով, եթե կոմունիստները զբաղված են կոնկրետ գործերով, այլ ոչ թե ընդհանուր թեմաներով ջուր ծեծելով, ապա հաջողությունն ապահովված է: **(Ծափահարություններ):** Թերությունները և արատները տեսնելը, դրանք նշավակելը քիչ է, պետք է ամեն ինչ անել, որ դրանք չլինեն: **Չի լինում կոմունիստի ավանգարդային դեր առհասարակ, այն արտահայտվում է պրակտիկ գործերով: (Ծափահարություններ):**

Առողջ, գործարար, իր կոնկրետ դրսևորումներով ու հոգսերով բազմակողմանի,



անկեղծությամբ, պլանների ու որոշումների հրապարակայնությամբ, կոմունիստների մարդկայնությամբ, համեստությամբ բնորոշ կուսակցական կյանք՝ ահա թե ինչ է այսօր հարկավոր մեզ: Մեզ՝ կոմունիստներիս, ամեն ինչում նայում են որպես օրինակի՝ աշխատանքում ու վարքագծով: Պետք է ապրել ու աշխատել այնպես, որ աշխատավոր մարդը կարողանա ասել. «Այո, դա իսկական կոմունիստ է»: Եվ ինչքան լուսավոր ու մաքուր լինի կյանքը կուսակցական տանը, այնքան արագ կիրագործենք այն բոլոր ոչ դյուրին խնդիրները, որ բնորոշ են ներկայիս բեկումնային ժամանակաշրջանում:

Առաջնորդվելով Կենտկոմի ապրիլյան և հետագա պլենումների հիմնադրույթներով, աշխատելով համարձակ ու հաստատակամորեն, կուսակցական շատ կազմակերպություններ լավ արդյունքների են հասնում: Սահմանելով առաջընթացի ուղիները, ՍՄԿԿ Կենտկոմը հենվում է նախ և առաջ այդ փորձի վրա, ձգտում է, որ այն դառնա ընդհանուր սեփականություն: Այսպես, գիտատեխնիկական առաջադիմությունը արագացնելու որոշումները ոչ քիչ չափով խարսխված են Լենինգրադի կուսակցական կազմակերպությունում այդ հարցերի նկատմամբ ցուցաբերվող նախաձեռնողական մոտեցման վրա, ինտենսիվացման, գիտության և արտադրության ինտեգրացման, սոցիալ-տնտեսական պլանավորման ծրագրերի մշակման նրա փորձի վրա: Ուկրաինայի կուսակցական կազմակերպության ծառայությունն է գիտատեխնիկական համալիրների և ինժեներական կենտրոնների ստեղծումը, երկրորդային ռեսուրսները արդյունավետորեն օգտագործելու արգասավոր աշխատանքը: Երկրում միասնական ագրոարդյունաբերական համալիրի ձևավորման միջոցառումները նախնական ստուգում անցան Վրաստանում և Էստոնիայում:

Գործի նկատմամբ արդիական մոտեցման օրինակներ շատ կարելի է բերել: Նորի զգացողությունը, փոփոխված պայմաններին համապատասխան ակտիվ վերակառուցումը բնորոշ են Բելոռուսիայի և Լատվիայի, Սվերդլովսկի, Չելյաբինսկի, Կրասնոդարի, Օմսկի, Ուլյանովսկի և այլ կազմակերպությունների: Այդ են վկայում նաև բազմաթիվ հաշվետու-ընտրական ժողովները, կոնֆերանսները, հանրապետական համագումարները: Դրանք աչքի էին ընկնում գործարար հարցադրումներով, մեր առաջընթացի արագացման ռեզերվների և ուղիների որոնմամբ, կոմունիստների շահագրգռվածությամբ, ընտրովի մարմինների գործունեության գնահատականների նկատմամբ ցուցաբերվող պահանջկոտությամբ:

Բայց վերակառուցման անհրաժեշտությունը գիտակցել են բնավ էլ ոչ բոլորը և բնավ էլ ոչ ամենուրեք: Դեռևս քիչ չեն այն կազմակերպությունները, և դա նույնպես հաստատեց հաշվետու-ընտրական կամպանիան, որտեղ առայժմ չի զգացվում լուրջ, ինքնաքննադատական վերլուծման, գործնական հետևություններ անելու պատշաճ տրամադրվածություն: Զգալ են տալիս հակվածությունը հնին, ժամանակի զգացողության բացակայությունը, կազմակերպամոլության հակումը, խուսափողաբար խոսելու սովորությունը, գործերի իսկական վիճակը բացահայտելու վախը:

Մենք չենք կարող ոչ մի քայլ առաջ շարժվել, եթե չսովորենք աշխատել նորովի: Չենք կարող հաղթահարել քարացածությունն ու պահպանողականությունը՝ իրենց բոլոր դրսևորումներով, եթե կորցնենք իրադրությունը սթափ գնահատելու, այն ինչպիսին որ կա, այդպիսին տեսնելու արիությունը: Որպեսզի անպատասխանատվությունը անցյալ դառնա, պետք է կանոն դարձնել իրերն իրենց անուններով կոչելը, ամեն ինչի մասին շիտակ դատելը: Ժամանակն է դադարեցնել անհարկի նրբանկատության վարժանքներն այնտեղ, որտեղ պետք է դրսևորվեն պահանջկոտություն ու ազնվություն, կուսակցական խիղճ: Ոչ ոք իրավունք չունի մոռանալու լենինյան խտիվ նախազգուշացումը. «Կեղծ փրազը, կեղծ պարծենկոտությունը բարոյական կործանում է, քաղաքական կործանման հաստատ երաշխիքը»:

Յուրաքանչյուր կուսակցական կազմակերպության առողջ կյանքի կարևորագույն նախադրյալը **կոլեկտիվության սկզբունքի** հետևողական իրագործումն է: Սակայն այնպես է ստացվել, որ որոշ կազմակերպություններում պլենումների և բյուրոների՝ որպես կոլեգիալ մարմինների, դերը նվազեցվել է, որոշումների համատեղ մշակումը փոխարինվել է միանձնյա կարգադրություններով, որը հաճախ կոպիտ սխալների է հանգեցրել: Կուսակցական կյանքի նորմերից նման ընկրկումներ են թույլ տրվել Կիրգիզիայի կոմկուսի Կենտկոմում: Հանրապետության կոմկուսի համագումարում սկզբունքային գնահատական ստացավ ոչ միայն նախկին առաջին քարտուղարի,

զակետում է գտնվում պրոբլեմների մի բարդ կոմպլեքս, որոնք բխում են մեր հասարակության, ամբողջությամբ վերցրած, աշխարհի զարգացման ժամանակակից, բեկումնային բնույթից: Արագացման բազմազան խնդիրները, նրա փոխկապակցված ասպեկտները՝ քաղաքական, տնտեսական, գիտատեխնիկական, սոցիալական, կուլտուր-հոգևոր և հոգեբանական, կարիք ունեն հետագա խոր և համապարփակ վերլուծության: Մենք փիլիսոփայական լուրջ ընդհանրացումների, տնտեսագիտական ու սոցիալական հիմնավորված կանխատեսումների, պատմագիտական խոր հետազոտությունների հրամայական պահանջ ենք զգում:

Չի կարելի խույս տալ այն փաստից, որ մեր փիլիսոփայական ու տնտեսագիտական ճակատը և առհասարակ հասարակագիտությունը, ես կասեի, որոշակիորեն հեռու են կանգնած կյանքի պահանջներից: Բացի դրանից, մեր պլանային-տնտեսական մարմինները ու մյուս գերատեսչությունները ևս պատշաճ հետաքրքրություն չեն ցուցաբերում հասարակագետ գիտնականների ռացիոնալ առաջարկությունների իրագործման նկատմամբ:

Ժամանակն առաջադրում է հասարակական գիտությունները պրակտիկայի կոնկրետ կարիքներին լայնորեն նպատամղելու հարցը, պահանջում, որ հասարակագետ գիտնականները զգայուն կերպով արձագանքեն կյանքում տեղի ունեցող վերափոխումներին, իրենց տեսադաշտում պահեն նոր երևույթները, անեն այնպիսի հետևություններ, որոնք կարողանան ճիշտ կողմնորոշել պրակտիկան: Կենսունակ են լոկ այն գիտական ուղղությունները, որոնք գալիս են պրակտիկայից և այնտեղ են վերադառնում խոր ընդհանրացումներով և օգտակար հանձնարարականներով հարստացած: Սխոլաստիկան, տիրացությունը և դոգմատիզմը միշտ էլ կապանքներ են եղել գիտելիքների իրական աճի համար: Դրանք տանում են դեպի մտքի քարացում, գիտությունը մեռյալ պարսպով անջրպետում կյանքից, արգելակում նրա զարգացումը: Ճշմարտությունը ի հայտ է գալիս ոչ թե դեկլարացիաներում և կարգադրագրերում, այն ծնվում է գիտական դիսկուսիաներում ու բանավեճերում, ստուգվում է գործողության մեջ: Կենտրոնական կոմիտեն կողմնակից է մեր հասարակագիտության զարգացման այնպիսի ուղուն, որը հնարավորություն է ընձեռում հասնելու տեսական ու գործնական ծանրակշիռ արդյունքների: **(Ծափահարություններ):**

Ստեղծագործական մթնոլորտը, որը կուսակցությունը հաստատում է կյանքի բոլոր բնագավառներում, առանձնապես արգասավոր է հասարակական գիտությունների համար: Մենք հուսով ենք, որ մեր տնտեսագետներն ու փիլիսոփաները, իրավաբաններն ու սոցիոլոգները, պատմաբաններն ու գրականագետները այդ մթնոլորտը ակտիվորեն կօգտագործեն նոր պրոբլեմների համարձակ, նախաձեռնողական առաջադրման համար, դրանց տեսական ստեղծագործական մշակման համար:

Բայց գաղափարները, որքան էլ հրապուրիչ լինեն, ինքնին ավտոմատ կերպով ամբողջական ու ակտիվ աշխարհայացք դեռևս չեն ձևավորում, եթե շաղկապված չեն մասսաների սոցիալ-քաղաքական փորձի հետ: **Առաջավոր գաղափարների և նոր հասարակության կառուցման պրակտիկայի փոխադարձ կապից է եռանդ ու գործունություն քաղում սոցիալիստական գաղափարախոսությունը:**

Կուսակցության գաղափարախոսական գործունեության հիմնական ուղղությունները սահմանված են ՍՄԿԿ ծրագրի նոր խմբագրության մեջ: Դրանք քննարկվել են ՍՄԿԿ Կենտկոմի պլենումներում, 1984 թվականի դեկտեմբերին տեղի ունեցած համամիութենական գիտագործնական կոնֆերանսում: Կանգ առնեմ դրանցից միայն մի քանիսի վրա:

Անվիճելի է այն փաստը, որ խելացի և ճշմարտացի խոսքը ներգործության ներգործության ամբողջ ուժը, այն բանին հասնելն է, որ յուրաքանչյուր մարդ ըմբռնի ներկա մոմենտի սրությունը, նրա բեկումնային բնույթը: Մեր ամեն մի պլան օդում կախված կմնա, եթե այն անտարբեր թողնի մարդկանց, եթե մենք չկարողանանք արթնացնել մասսաների աշխատանքային ու հասարակական ակտիվությունը, նրանց եռանդն ու նախաձեռնությունը: **Հասարակությունը շրջել դեպի նոր խնդիրները, դրանց լուծմանը նպատակամղել ժողովրդի, յուրաքանչյուր աշխատավորական կոլեկտիվի ստեղծագործական պոտենցիալը՝ այսպիսին է երկրի սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու ամենաառաջին պայմանը: (Ծափահարություններ):**

Ամենաէականը, որի վրա այսօր անհրաժեշտ է կենտրոնացնել կուսակցական հսկայական ուժ ունի: Բայց նրա նշանակությունը հարյուրապատկվում է, եթե միացվում է քաղաքական, տնտեսական ու սոցիալական քայլերի հետ: Միայն այդպես կարելի է արմատախիլ անել տաղտկալի խրատատվությունը, կենդանի կյանքի շնչով տոգորել կոչերն ու լոզունգները:

Երկրային հիմքից խոսքի խզումը լրջորեն արժեզրկում է գաղափարախոսական ջանքերը: Ինչքան էլ դասախոսություններ կարդանք զգայուն վերաբերմունքի մասին, պարսավելով անհոգիությունն ու բյուրոկրատիզմը, դրանք հօդս կցնդեն, եթե մարդը կոպտության է հանդիպում հիմնարկներում, փողոցում, խանութում: Որքան էլ զրույցներ անցկացնենք վարքի կուլտուրայի մասին, դրանք օգուտ չեն տա, եթե չհիմնավորվեն արտադրության, համակեցության, մարդկային հարաբերությունների բարձր կուլտուրայի համար գործնական պայքարով: Որքան էլ հոդվածներ գրենք սոցիալական արդարության, կարգուկանոնի և կարգապահության մասին, դրանք անպտուղ կմնան, եթե չուղեկցվեն աշխատավորական կոլեկտիվի ակտիվ գործողություններով, օրենքի հետևողական կիրառումով:

Մարդիկ պետք է մշտապես տեսնեն, զգան մեր գաղափարախոսության մեծ ճշմարտությունը, քաղաքականության սկզբունքայնությունը: Պահանջվում է աշխատանքը և բարիքների բաշխումը այնպես կազմակերպել, օրենքները և սոցիալիստական համակեցության սկզբունքները այնպիսի մանրակրկիտությամբ կիրառել, որ յուրաքանչյուր սովետական մարդ անսասան հավատ ունենա մեր իդեալների ու արժեքների նկատմամբ: **(Ծափահարություններ):** Բնակարանը, պարենային մատակարարումը, ժողովրդական սպառման ապրանքների որակը, առողջապահության մակարդակը՝ այս բոլորը ամենաանմիջական կերպով ազդում են մարդկանց գիտակցության և տրամադրության վրա: Մենք հենց այս դիրքերից պետք է մոտենանք կուսակցական, սովետական և հասարակական կազմակերպությունների դաստիարակչական գործունեության հետ կապված հարցերի ամբողջ կոմպլեքսին:

Սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու պայքարում բացառիկ բարենպաստ հասարակական պայմաններ են ստեղծվում գաղափարախոսական աշխատանքի արդյունավետության բարձրացման համար: Բայց չպետք է ակնկալել, թե գաղափարաքաղաքական, աշխատանքային ու բարոյական դաստիարակությունը դրանով իսկ պարզեցվում է: Պետք է մշտապես ի նկատի ունենալ, որ այսօրվա իրադրությունը, որքան էլ բարենպաստ լինի, ունի իր հակասություններն ու դժվարությունները: Գնահատումներում ոչ մի մեղմացում չի կարելի թույլ տալ:

Հասարակական գիտակցության զարգացումը միշտ էլ բարդ պրոցես է, բայց ներկա փուլի յուրօրինակությունը առանձնահատուկ սրություն է հաղորդել չլուծված շատ պրոբլեմների: Նախ՝ արագացման խնդրի հենց մասշտաբայնությունն է որոշում հասարակական մթնոլորտը, նրա բնույթն ու առանձնահատկությունները: Դեռևս ոչ բոլորը պատրաստ գտնվեցին ըմբռնելու և ընդունելու տեղի ունեցողը: Երկրորդ, և սա կարևոր է շեշտել՝ սոցիալ-տնտեսական զարգացման դանդաղումը ոչ միայն տնտեսական ղեկավարման, այլև գաղափարախոսական աշխատանքի բնագավառում եղած լուրջ վրիպումների հետևանք էր:

Չի կարելի ասել, թե այս մասին խոսքեր, այն էլ ճիշտ խոսքեր, քիչ են եղել, իսկ գործնականում նպատակամետ դաստիարակչական աշխատանքը հաճախ փոխարկվել է մտացածին կամպանիաներով, որոնք պրոպագանդան հեռացնում էին կյանքից, ինչը բացասաբար էր անդրադառնում հասարակական մթնոլորտի վրա: Կենսական հակասությունների սրությունը հաճախ անտեսվել է, բացակայել է ռեալիզմը էկոնոմիկայի ասպարեզում, սոցիալական բնագավառում, նաև մյուս ոլորտներում իսկական իրավիճակը գնահատելիս: Անցյալի շերտանստվածքները անհետք չեն մնում: Դրանք իրենց զգալ են տալիս՝ դրսևորվելով մարդկանց գիտակցության մեջ, նրանց գործողությունների և վարքի մեջ: Կյանքի ոճը անկարելի է փոխել միանգամից: Իսկ մտածողության մեջ իներցիայի հաղթահարումը է՛լ ավելի բարդ է: Այստեղ անհրաժեշտ են եռանդագին ջանքեր:

Քաղաքականությունը տալիս է պահանջվող արդյունքները, երբ այն կառուցվում է՝ ճշտորեն հաշվի առնելով դասակարգերի, սոցիալական խմբերի, անհատի շահերը: Եթե սա ճիշտ է հասարակության կառավարման տեսակետից, ապա առավել ևս ճիշտ է գաղափարախոսական-դաստիարակչական առումով: Հասարակությունը կոնկրետ մարդիկ են, որոնք ունեն կոնկրետ շահեր, իրենց ուրախությունները

ու ապրումները, կյանքի մասին, նրա իսկական և կարծեցյալ արժույթների մասին իրենց պատկերացումները:

Այս կապակցությամբ ես կցանկանայի կանգ առնել **անհատական աշխատանքի՝ որպես դաստիարակության կարևորագույն ձևի վրա:** Չի կարելի ասել, թե դրան ուշադրություն չի նվիրվում, բայց նաև գաղափարախոսական ոլորտում լրջորեն խանգարում է սովորական «համախառն» մոտեցումը: Այստեղ թվերը իրոք տպավորություն են գործում: Տասնյակ ու հարյուր հազարավոր պրոպագանդիստներ, ագիտատորներ, քաղինֆորմատորներ, խմբակներ ու սեմինարներ, թերթերի ու ամսագրերի միլիոնանոց տպաքանակներ, դասախոսությունների միլիոնանոց լսարաններ: Այս ամենը լավ է: Բայց թվերի և «ընդգրկումների» այսպիսի խայտաբղետության մեջ արդյոք չի՞ կորչում կենդանի մարդը: Գաղափարախոսական վիճակագրությունը մեզանից արդյոք չի՞ վարագուրում մի կողմից անձնվեր աշխատավորներին, որոնք հասարակական մեծ ճանաչման են արժանի, իսկ մյուս կողմից՝ հակասոցիալիստական բարոյականություն կրողներին: Ուստի և այնքան կարևոր է առավելագույն կոնկրետությունը դաստիարակության գործում:

Գաղափարախոսական աշխատանքի էական առանձնահատկությունը նաև այն է, որ այդ աշխատանքը կատարվում է սոցիալիստական ու բուրժուական գաղափարախոսությունների սուր հակամարտության պայմաններում: Բուրժուական գաղափարախոսությունը կապիտալի սպասարկման և մոնոպոլիաների շահույթների, արկածախնդրության ու սոցիալական ռևանշի գաղափարախոսություն է, ապագա չունեցող հասարակության գաղափարախոսություն: Նրա հիմնադրույթները ակնբախ են՝ ամեն ձևով գունազարդել կապիտալիզմը, սքողել նրան ներհատուկ հակամարդկայնությունն ու անարդարությունը, պարտադրել կյանքի ու մշակույթի իր ստանդարտները, բոլոր միջոցներով սևացնել սոցիալիզմը, խեղաթյուրել այնպիսի արժեքների իմաստը, ինչպիսիք են դեմոկրատիան, ազատությունը, հավասարությունը, սոցիալական առաջադիմությունը:

Իմպերիալիզմի սանձազերծած «հոգեբանական պատերազմը» չի կարող որակվել այլ կերպ, քան որպես ագրեսիայի, ինֆորմացիոն իմպերիալիզմի հատուկ ձև, որը ոտնահարում է ժողովուրդների սուվերենությունը, պատմությունը, մշակույթը: Դա նաև պատերազմի քաղաքական-հոգեբանական ուղղակի նախապատրաստություն է, որը, բնականաբար, ոչ մի ընդհանուր բան չունի հայացքների իսկական համադրման, գաղափարների ազատ փոխանակման հետ, որի շուրջը փարիսեցիություն են անում Արևմուտքում: Այլ կերպ չեն էլ կարող գնահատվել այնպիսի գործողությունները, երբ մարդկանց սովորեցնում են իմպերիալիզմին ոչ հաճելի ամեն մի հասարակության նայել նշանառության ճեղքի միջով:

Իհարկե, բուրժուական պրոպագանդայի ազդեցությունը գերագնահատելու հիմքեր չկան: Սովետական մարդիկ բավականաչափ լավ գիտեն զանազան մարգարեների ու մարգարեությունների ստույգ գինը, լավ են հասկանում կառավարող մոնոպոլիստական ուժերի քայքայիչ գործողությունների իսկական նպատակները: Բայց մոռանալ, որ «հոգեբանական պատերազմը» պայքար է մարդկանց մտքերի, նրանց աշխարհըմբռնման, նրանց կենսական, սոցիալական ու հոգևոր կողմնորոշիչների համար, իրավունք չունենք: **(Ծափահարություններ):** Մենք գործ ունենք դասակարգային հնարամիտ հակառակորդի հետ, որի քաղաքական փորձը բազմազան է, ժամանակի առումով՝ դարավոր: Նա ստեղծել է զանգվածային պրոպագանդայի մի վիթխարի մեքենա, որը հանդերձավորված է արդիական տեխնիկական միջոցներով, ունի սոցիալիզմն ատողների մի հսկայական վարժեցված ապարատ:

Բուրժուական պրոպագանդիստների հնարագիտությանն ու անսկզբունքայնությանը պետք է հակադրվեն մեր գաղափարախոսական աշխատողների բարձր պրոֆեսիոնալիզմը, սոցիալիստական հասարակության բարոյականությունը, նրա մշակույթը, ինֆորմացիայի բացահայտ լինելը, մեր պրոպագանդայի համարձակ և ստեղծագործական բնույթը: Հարկավոր է հարձակողականություն թե այն բանում, ինչը վերաբերում է գաղափարախոսական դիվերսիաների մերկացմանը, և թե սոցիալիզմի ռեալ նվաճումների, սոցիալիստական ապրելակերպի մասին ճշմարտացի ինֆորմացիան տեղ հասցնելուն: **(Ծափահարություններ):**

Մենք կառուցել ենք ճնշումից ու շահագործումից ազատ աշխարհ, ստեղծել սոցիալական համախմբվածության ու վստահության հասարակություն: Մենք՝ մեր



երկրի հայրենասերներս, այսուհետև էլ այն կպաշտպանենք բոլոր ուժերով, կբազմապատկենք հայրենիքի հարստությունները, կամրապնդենք նրա տնտեսական հզորությունն ու բարոյական ուժը: **(Երկարատև ծափահարություններ):** Սովետական հայրենասիրության խոր ակունքները գտնվում են հասարակարգի մեջ, մեր հումանիստական գաղափարախոսության մեջ: Իսկական հայրենասիրությունը քաղաքացիական գործուն կենսադիրքն է: Սոցիալիզմը բարձր բարոյականության հասարակություն է: Անկարելի է լինել գաղափարական մարդ՝ չլինելով ազնիվ, խղճով, օրինավոր, իր նկատմամբ պահանջկոտ: Որքան եռանդագին հաստատվեն մեր իդեալները, նոր հասարակության սկզբունքներն ու արժեքները, այնքան արդյունավետ կլինի մեր դաստիարակությունը: Պայքարը կյանքի անաղարտության համար գաղափարադաստիարակչական աշխատանքի արդյունավետության, նրա սոցիալական հատույցի բարձրացման, անառողջ երևույթների առաջացումից ապահովվելու ամենագործուն եղանակն է:

Մի խոսքով, ընկերներ, գաղափարախոսական աշխատանքի ինչ բնագավառ էլ վերցնելու լինենք, ամեն ինչում պետք է ելնել կյանքից: Լճացումը պարզապես անհանդուրժելի է մի այնպիսի կենդանի, դինամիկ, բազմակողմանի գործում, ինչպիսիք են ինֆորմացիան, պրոպագանդան, գեղարվեստական ստեղծագործությունը և գեղարվեստական ինքնագործունեությունը, ակումբների և թատրոնների, գրադարանների ու թանգարանների աշխատանքը, գաղափարաքաղաքական ու աշխատանքային, բարոյական ու աթեիստական դաստիարակության ամբողջ ոլորտի աշխատանքը:

Դինամիզմով և վերափոխումներով հարուստ մեր ժամանակներում էապես աճում է **մասսայական ինֆորմացիայի միջոցների դերը:** Կենտկոմի ապրիլյան պլենումից հետո անցած ժամանակաշրջանը լուրջ քննություն եղավ ամբողջ կուսակցական ժուռնալիստիկայի համար:

Խմբագրական կոլեկտիվները համարձակորեն ձեռնամուխ եղան բարդ, շատ բանում նոր հարցերի: Թերթերի ու ամսագրերի էջերում, հեռուստատեսային ծրագրերում սկսեց բաբախել բուն կյանքը իր նվաճումներով ու հակասություններով, ավելի շատացան վերլուծականությունն ու քաղաքացիականությունը, պրոբլեմների առաջադրման սրությունը և թերությունների ու վրիպումների կոնկրետ քննադատությունը: Արվել են տնտեսական, սոցիալական և գաղափարախոսական հրատապ հարցերի վերաբերյալ ոչ քիչ թվով կոնստրուկտիվ առաջարկություններ:

Այժմ էլ ավելի մեծ նշանակություն է ձեռք բերում մասսայական ինֆորմացիայի միջոցների գործունեությունը: Կենտրոնական կոմիտեն հանձինս նրանց տեսնում է արարման գործիքի, համակուսակցական տեսակետ արտահայտողի, տեսակետ, որն անհամատեղելի է գերատեսչականության ու տեղայնության հետ: Եվ այն ամենը, ինչ թելադրված է սկզբունքային նկատառումներով, բխում է գործի բարելավման շահերից, այսուհետև էլ կարժանանա կուսակցության պաշտպանությանը: Մասսայական ինֆորմացիայի միջոցների աշխատանքում որքան շատ լինեն լրջախոհությունը, օպերատիվությունը, և որքան քիչ լինի պատահականի, սենսացիոնի ետևից վազելը, այնքան այն արգասավոր կլինի: **(Ծափահարություններ):**

Ձեռք բերելով արդիական տեխնիկական մակարդակ՝ մեզանում արագ զարգանում են հեռուստատեսությունը և ռադիոն: Դրանք ամուր մտել են կյանքի ոլորտը՝ որպես ինֆորմացիայի ու պրոպագանդայի և մեր բարոյական արժեքների ու մշակույթի հաստատման համապարփակ միջոցներ: Այստեղ պարզորոշ նկատելի են դրական տեղաշարժերը: Ավելի բազմազան ու կենդանի են դարձել հեռուստատեսային ու ռադիոհաղորդումները, զգալի է ստեղծված կաղապարները հաղթահարելու, հեռուստադիտողների ու ռադիոլսողների շահերի բազմազանությունը ավելի լրիվ հաշվի առնելու ձգտումը:

Բայց արդյոք կարելի՞ է ասել, թե ինֆորմացիայի ու պրոպագանդայի մեր միջոցները լիովին իրացնում են իրենց հնարավորությունները: Առայժմ ոչ: Դեռևս քիչ չէ գորշությունը, հաղթահարված չէ իներտությունը, բուժված չէ խլությունը նորի նկատմամբ: Մարդիկ գոհ չեն մնում իրադարձությունների լուսաբանման անբավարար օպերատիվության պատճառով, պրակտիկա մուտք գործող առաջավորի համար պայքարը մակերեսորեն ցույց տալու պատճառով:

Արդարացի կշտամբանքներ է հարուցում որոշ գրական ստեղծագործություն-

Ծրագրի նոր խմբագրությունը կենդանի արձագանք առաջացրեց նաև արտասահմանում: Առաջադեմ հասարակայնությունը նշում է ծրագրի խորապես հումանիստական բնույթը, նրա միտվածությունը մարդուն, ժողովուրդների փոխըմբռնմանը, մարդկության խաղաղ ապագայի ապահովման նրա կրքոտ կոչը: Մեր արտասահմանցի բարեկամներին ոգեշնչում են համաշխարհային սոցիալիստական սիստեմի, բոլոր պետությունների հետ ընկերական կայուն հարաբերությունների և բազմակողմանի համագործակցության ՍՍՀՄ-ի անսասան ձգտումը, խաղաղության, դեմոկրատիայի, սոցիալական առաջընթացի համար, անկախության ամրապնդման համար ժողովուրդների կողմից մղվող հակաիմպերիալիստական պայքարի վճռական պաշտպանությունը: Բուրժուական լագերի ողջախոհ շատ գործիչներ նշում են մեր ծրագրի խաղաղասիրական ուղղվածությունը, զինաթափմանը, բոլոր պետությունների հետ նորմալ, առողջ հարաբերությունների հաստատման ՍՄԿԿ-ի կուրսը:

Նախահամագումարյան փաստաթղթերի նախապատրաստումն ու քննարկումը աշխուժացրին կուսակցության գաղափարաքաղաքական աշխատանքը, նպաստեցին աշխատավորական միլիոնավոր զանգվածների հասարակական ակտիվության անին:

Ծրագրի նոր խմբագրության և կանոնադրության նախագծերը լայնորեն քննարկվեցին սկզբնական կուսկազմակերպությունների ժողովներում, շրջանային, քաղաքային, օկրուգային, մարզային, երկրամասային հաշվետու-ընտրական կոնֆերանսներում, միութենական հանրապետությունների կոմունիստական կուսակցությունների համագումարներում: Քննարկման սկզբից հենց միայն ծրագրի նախագծի առթիվ ստացվել է ավելի քան 6 միլիոն արձագանք: Դրանց հեղինակները՝ բանվորներն ու կոլտնտեսականները, գիտնականները, ուսուցիչները, ինժեներները, բժիշկները, սովետական բանակի և նավատորմի ռազմիկները, կոմունիստներն ու անկուսակցականները, վետերաններն ու երիտասարդները, ծրագրի նոր խմբագրությունը գնահատելով որպես սովետական ժողովրդի կենսական շահերին համապատասխանող փաստաթուղթ, արել են բազմաթիվ առաջարկություններ, լրացումներ և խմբագրական ճշգրտումներ:

Դրանցից մի քանիսի վրա նպատակահարմար ենք համարում կանգ առնել:

Մի շարք նամակների հեղինակներ, նշելով քննարկվող նախագծի նոր լինելը, արտահայտվում են այն բանի օգտին, որ նախագիծը համագումարում ընդունվի որպես կուսակցության չորրորդ ծրագիր: Հայտնի է, որ կուսակցական նոր ծրագրերի ընդունումը՝ սկզբում երկրորդ, իսկ ապա և երրորդ, պայմանավորված էր այնպիսի բնագծերի նվաճումով, որոնք նախատեսվում էին նախորդ ծրագրով: Տվյալ դեպքում իրավիճակն այլ է:

Ուժի մեջ են մնում կուսակցության՝ սոցիալիզմի զարգացման և ամրապնդման, դրա պլանաչափ ու համակողմանի կատարելագործման, դեպի կոմունիզմ սովետական հասարակության հետագա առաջընթացի հիմնական խնդիրները: Ներկայացված փաստաթղթում վերարտադրվում են ժամանակի քննությունը բռնած տեսական ու քաղաքական գլխավոր հիմնադրույթները:

Սրա հետ մեկտեղ, երրորդ կուսակցական ծրագրի ընդունումից հետո անցած քառորդ դարի ընթացքում կյանքում շատ բան փոխվել է: Կուտակվել է պատմական նոր փորձ: Ոչ բոլոր գնահատականներն ու հետևություններն են գտել իրենց հաստատումը: Վաղաժամ դուրս եկավ կոմունիզմի ծավալուն շինարարության խնդիրների փոխադրումը անմիջական պրակտիկ գործողությունների բնագավառ: Որոշակի սխալներ էին թույլ տրվել նաև մի շարք կոնկրետ հարցերի լուծման ժամկետների առումով: Օրակարգի հարց են դարձել և սրություն ստացել սոցիալիզմը կատարելագործելու, նրա զարգացումն արագացնելու, միջազգային քաղաքականության նոր պրոբլեմները: Հարկ եղավ այս ամենը արտացոլել կուսակցության ծրագրային փաստաթղթում:

Այսպիսով, ներկայացված փաստաթուղթը որպես կուսակցության երրորդ ծրագրի նոր խմբագրություն գնահատելը իրապես հիմնավորված է և սկզբունքային նշանակություն ունի: Նոր խմբագրությունը հաստատում է ՍՄԿԿ-ի գլխավոր նպատակները, կոմունիստական շինարարության հիմնական օրինաչափությունները և, սրա հետ մեկտեղ, վկայում է կուտակված պատմական փորձի ստեղծագործական իմաստավորման մասին, ներկայիս բեկումնային պահի առանձնահատկությունների համեմատ ստրատեգիայի և տակտիկայի մշակման մասին:



Հասարակայնության մեծ ուշադրությունը գրավեցին ծրագրի այն դրույթները, որտեղ տրվում է հասարակական զարգացման՝ երկրի հասած փուլի և այն բնագծերի բնութագրումը, որ պետք է նվաճվեն ծրագրի իրագործման շնորհիվ: Այս կապակցությամբ արտահայտվել են զանազան կարծիքներ: Ոմանք առաջարկում են ծրագրից ամբողջովին հանել զարգացած սոցիալիզմին վերաբերող դրույթները, մյուսները, ընդհակառակը, գտնում են, որ այդ մասին հարկավոր է ասել ավելի ծավալուն:

Նախագծում շարադրված է տվյալ հարցի վերաբերյալ կշռադատված և իրատեսական դիրքորոշում: Արդի սոցիալիստական հասարակության վերաբերյալ հիմնական դրույթներում հավաստվում է, որ մեր երկիրը թևակոխել է զարգացած սոցիալիզմի փուլը: Մենք նաև ըմբռնումով ենք վերաբերվում սոցիալիստական երկրների եղբայրական կուսակցությունների ծրագրային փաստաթղթերում զարգացած սոցիալիզմի կառուցման խնդրի առաջադրմանը:

Սրա հետ միասին տեղին է հիշեցնել, որ զարգացած սոցիալիզմի մասին թեզիսը մեզանում տարածում ստացավ որպես հակազդում կոմունիստական շինարարության խնդիրների լուծման ուղիների և ժամկետների վերաբերյալ դյուրացված պատկերացումների: Բայց զարգացած սոցիալիզմի բնութագրման մեջ շեշտերը հետագայում աստիճանաբար տեղաշարժվում էին: Հաճախ բանը հանգեցվում էր միայն հաջողությունների արձանագրմանը, մինչդեռ կենսահույզ շատ պրոբլեմներ, որոնք կապված էին էկոնոմիկան ինտենսիվացման ուղու վրա փոխադրելու, աշխատանքի արտադրողականության աճի, բնակչության մատակարարումը բարելավելու, բացասական երևույթները հաղթահարելու հետ, շրջանցվում էին, մնում առանց պատշաճ ուշադրության: Կամա թե ակամա, դա ծառայում էր որպես հասունացած խնդիրների լուծման գործում եղած դանդաղկոտության յուրօրինակ արդարացում: Այսօր, երբ կուսակցությունը հռչակել և իրագործում է սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու կուրսը, նման կարգի մոտեցումը անընդունելի է:

Ստեղծված պայմանները մեզանից պահանջում են տեսական ու քաղաքական միտքը նպատակամղել ոչ թե ձեռք բերվածի վավերացմանը, այլ սոցիալ-տնտեսական առաջադիմության արագացման ուղիների ու մեթոդների հիմնավորմանը, առաջադիմություն, որի հետ կապված են որակական փոփոխությունները կյանքի զանազան ոլորտներում: Խոսքը վերաբերում է հասարակական առաջադիմության արմատական խնդիրների լուծման նկատմամբ անչափ ավելի խոր մոտեցմանը: Վերափոխումների, հասարակության զարգացման դինամիզմի ուժեղացման անհրաժեշտության մեջ է ծրագրի նոր խմբագրությունում շարադրված ՍՄԿԿ-ի ստրատեգիայի իմաստը: Հենց սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու հիման վրա պետք է մեր հասարակությունը դուրս գա նոր բնագծեր, երբ առավել լրիվ կբացահայտվեն սոցիալիստական կարգերի առավելությունները, կլուծվեն նախորդ փուլերից ժառանգություն մնացած պրոբլեմները:

Տարբեր կարծիքներ են արտահայտվել նաև ծրագրային դրույթները մանրամասնելու պրոբլեմի առթիվ: Ոմանք գտնում են, որ ծրագիրը պետք է լինի է՛լ ավելի սեղմ փաստաթուղթ՝ յուրօրինակ հակիրճ դեկլարացիա կուսակցության մտադրությունների մասին: Ոմանք էլ արտահայտվում են տնտեսական ու սոցիալական զարգացման պարամետրերն ավելի մանրամասն շարադրելու օգտին: Մի շարք նամակներում առաջարկվում է ավելի ստույգ սահմանել այն փուլերի ժամանակագրությունը, որ սովետական հասարակությունը անցնելու է դեպի կոմունիզմ իր շարժման ընթացքում:

Ծրագրային փաստաթղթերի կառուցման լենինյան սկզբունքների, հաստատված ավանդույթների համաձայն, ծրագիրը պետք է տա ժամանակակից աշխարհի, նրա զարգացման հիմնական միտումների և օրինաչափությունների ծավալուն պատկերը, փաստարկված շարադրանքը, որ կուսակցությունը այն նպատակների պարզ ու հստակ կոչով նա դիմում է մասսաներին: Սրա հետ դնում է իր առջև և որոնց հասնելու կոչով նա դիմում է մասսաներին: Սրա հետ մեկտեղ Լենինն ընդգծում էր, որ ծրագիրը պետք է լինի խիստ գիտական, ելնի բացարձակորեն պարզված ու հաստատված փաստերից, աչքի ընկնի տնտեսագիտական ճշտությամբ և ավելորդ բաներ չխոստանա: Նա կոչ էր անում առավելագույն իրատեսություն հանդես բերել ապագա հասարակությունը և առաջադրվող խնդիրները բնութագրելիս: «Պետք է,— գրել է Լենինը,— որքան կարելի է զգույշ և ստույգ լինել... Իսկ եթե մենք ամենափոքր հավակնությունները հայտնենք այն

մասին, ինչ որ մենք չենք կարող տալ, դա կթուլացնի մեր ծրագրի ուժը: Նրանք (աշխատավորները) կասկածանք կհայտնեն, որ մեր ծրագիրը լոկ երևակայություն է»:

Կարծում ենք, որ ծրագրի առաջարկվող խմբագրությունը համապատասխանում է այդ պահանջներին: Ինչ վերաբերում է ծրագրային բնագծերին հասնելու ժամանակագրական շրջանակներին, ապա դրանց սահմանումը արդարացված չէ: Անցյալի սխալները դաս են մեզ համար: Այսօր կարելի է որոշակիորեն ասել լոկ այն, որ սույն ծրագրի կատարումը անցնում է ընթացիկ հարյուրամյակի սահմաններից:

Այն խնդիրները, որ պետք է լուծել առաջիկա 15 տարում, ենթարկվում են ավելի կոնկրետ սահմանման, և դրանք շարադրված են ծրագրի նոր խմբագրության մեջ, ավելի մանրամասնորեն՝ երկրի տնտեսական ու սոցիալական զարգացման մինչև 2000 թվականն ընկած ժամանակաշրջանի հիմնական ուղղություններում: Եվ, իհարկե, ծրագրային նպատակների իրագործման մեջ կարևոր տեղ կգրավի տասներկուերորդ հնգամյակը, որը կոչված է խոշոր քայլ լինելու ժողովրդական տնտեսությունը գիտատեխնիկական առաջադիմության արագացման հիման վրա ինտենսիվ զարգացման ուղի փոխադրելու գործում:

ՍՄԿԿ Կենտկոմի՝ ՍՄԿԿ ծրագրի նոր խմբագրության նախապատրաստման համաժողովում ստացված արձագանքների ու նամակների մի զգալի մասը նվիրված է սոցիալական քաղաքականության հարցերին: Սովետական մարդիկ հավանություն են տալիս և պաշտպանում ժողովրդի բարեկեցության բարձրացման, ամենուրեք սոցիալական արդարության հաստատման, մեր կյանքը այն ամենից մաքրելու միջոցառումներին, ինչը հակասում է սոցիալիզմի սկզբունքներին: Նրանք անում են այնպիսի առաջարկություններ, որոնց նպատակն է է՛լ ավելի լրիվ և խստորեն իրագործել բարիքներն ըստ աշխատանքի քանակի ու որակի բաշխելու սկզբունքը և կատարելագործել սպառման հանրային ֆոնդերը, ուժեղացնել վերահսկողությունը աշխատանքի չափի և սպառման չափի նկատմամբ, վճռականորեն վերջ դնել անաշխատ եկամուտներին և շահադիտական նպատակներով հանրային սեփականության օգտագործման փորձերին, վերացնել տարբեր ճյուղերի աշխատողների հավասար աշխատանքի լրացուցիչ նյութական վարձատրության չհիմնավորված տարբերությունները, հաղթահարել համահարթումը վճարման գործում և այլն: Այս առաջարկություններից մի քանիսը արտացոլում են գտել նախագծի մեջ:

Մյուսները պետք է հանգամանորեն քննության առնվեն կուսակցական, սովետական, տնտեսական մարմինների կողմից, հաշվի առնվեն օրենսդրական ակտերում ու որոշումներում, պրակտիկ աշխատանքում: Համաժողովրդական քննարկման ընթացքում մեծ հետաքրքրություն առաջացրին ժողովրդի սոցիալիստական ինքնակառավարումը զարգացնելու ծրագրային հիմնադրույթները: Միահամուռ պաշտպանության է արժանանում սոցիալիստական հասարակության համակողմանի դեմոկրատացման, տնտեսական, սոցիալական ու քաղաքական պրոցեսների կառավարման գործում բոլոր աշխատավորներին առավելագույն չափով և արդյունավետորեն ներգրավելու գիծը: Հավանություն է տրվում այդ բնագավառի նաև կոնկրետ քայլերին, նկատառումներ են հայտնվում այն մասին, որ հասարակության ու պետության գործերի կառավարումը կատարելագործելու պրոբլեմները բացահայտելիս ավելի լայնորեն ցուցադրվեն աշխատավորական կոլեկտիվների՝ որպես անմիջական, ուղղակի դեմոկրատիայի սկզբնական բջջի, հնարավորությունները: Դրանք հաշվի են առնված:

Մեր հասարակության հոգևոր վեհացման նկատմամբ հոգատարությամբ են թելադրված կոմունիստական իդեալների ու բարոյական նորմերի ոգով, դրանց հակոտնյաների դեմ պայքարելու ոգով սովետական մարդկանց դաստիարակությունն ուժեղացնելու ցանկությունները: Ծրագրի համաժողովը նպատակահարմար գտավ ընդունել այդ առաջարկությունները, որպեսզի կուսակցական ծրագրի պահանջների բովանդակությունը ավելի լրիվ ներթափանցված լինի բարձր գաղափարայնության ու բարոյականության սկզբունքներով:

ՍՄԿԿ կանոնադրության առթիվ նկատառումներ է հայտնել շուրջ երկու միլիոն մարդ: Հաշվի առնելով քննարկման արդյունքները, կուսակցության Կենտրոնական կոմիտեն անհրաժեշտ համարեց կանոնադրության նախագծի մեջ մտցնել մի շարք էական լրացումներ ու ճշգրտումներ, որոնք նպատակամղված են կոմունիստների ավանգարդային դերի, սկզբնական կուսկազմակերպությունների մարտունակության



բարձրացմանը, ներկուսակցական դեմոկրատիայի զարգացմանը, յուրաքանչյուր կուսկազմակերպության, յուրաքանչյուր աշխատողի գործունեության մշտական վերահսկողության ապահովմանը:

Որոշ ընկերներ, պաշտպանելով կոմունիստների նկատմամբ պահանջկոտությունը բարձրացնելու թեզիսը, առաջարկում են այդ նպատակով անցկացնել կուսակցության զտում, որպեսզի կուսակցությունն ազատվի այնպիսիներից, ում վարքն ու ապրելակերպը ներհակ են մեր նորմերին ու իդեալներին: Կարծում ենք՝ ՍՄԿԿ-ի շարքերի զտման հատուկ կամպանիա անցկացնելու անհրաժեշտություն չկա: Մեր կուսակցությունը առողջ օրգանիզմ է, նա կատարելագործում է իր գործունեության ոճն ու մեթոդները, պրմատախիլ է անում ձևամոլությունը, բյուրոկրատիզմն ու կազմակերպչինան, կտրում-դեն է գցում այն ամբողջ լճացածը, պահպանողականը, ինչը խանգարում է մեր առաջընթացին, ազատվելով նրանցից, ովքեր իրենց վարկաբեկել են վատ աշխատանքով և անվայել վարքով: Կուսակցական կազմակերպությունները այսուհետև էլ պետք է այդ աշխատանքը կատարեն հետևողականորեն, սիստեմատիկորեն և անշեղորեն:

Ծրագրի նոր խմբագրությունը, ինչպես նաև կուսակցության կանոնադրության առաջարկվող փոփոխությունները վավերագրում և զարգացնում են կուսակցական շինարարության, կուսակցական աշխատանքի ոճի ու մեթոդների Լենինի մշակած և պրակտիկայում ստուգված բոլշևիկյան սկզբունքները, կոմունիստների վարքի բարոյական նորմերը:

ՍՄԿԿ ծրագրի և կանոնադրության քննարկման արդյունքները ամբողջությամբ վերցրած, ընկերներ, բացառիկորեն արգասավոր են: Դրանք հնարավորություն ընձեռեցին զարգացնել շատ գաղափարներ ու դրույթներ, ճշգրտել ձևակերպումներ, բարելավել խմբագրումը: Թույլ տվեք մեր համագումարի անունից կոմունիստներին, բոլոր սովետական մարդկանց խորին շնորհակալություն հայտնել նախահամագումարյան փաստաթղթերի քննարկմանը գործուն, շահագրգիռ մասնակցության համար: **(Երկարատև ծափահարություններ):**

Կուսակցության Կենտրոնական կոմիտեի կարծիքով՝ ներկայացված փաստաթղթերի նախագծերը, որոնք հաստատված են կուսակցության փորձով, ժողովրդի փորձով, համապատասխանում են ժամանակի ոգուն, ներկա պատմական ժամանակաշրջանի պահանջներին: Դրանք հաղորդում են մեր կուսակցության հավատարմությունը մարքս-լենինյան մեծ ուսմունքին, գիտականորեն հիմնավորված պատասխաններ են տալիս ներքին ու միջազգային կյանքի արմատական հարցերին, աշխատավորներին զինում հստակ հեռանկարով: **(Բուռն ծափահարություններ):**

***

Ընկերնե՛ր: Այսպիսիք են մեր հետագա զարգացման այն ծրագրային խնդիրները, որ դրվում են XXVII համագումարի քննարկմանը:

Մենք ինչի՞ մեջ ենք տեսնում նախանշված պլանների ռեալությունը: Ո՞րն է այն բանի երաշխիքը, որ սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու կուրսը ճիշտ է և կիրագործվի:

Առաջին հերթին այն, որ մեր պլանները խարսխվում են մարքս-լենինյան գիտության ամրակուռ հիմքի վրա, հենվում Վլադիմիր Իլյիչ Լենինի գաղափարների անսպառ հարստության վրա:

ՍՄԿԿ-ն ուժ է առնում սոցիալիզմի հսկայական հնարավորություններից, մասսաների կենդանի ստեղծագործությունից: Պատմական բարդ շրջադարձերում լենինյան կուսակցությունը մեկ անգամ չէ, որ ցուցադրել է առաջընթացի ճիշտ ուղիներ գտնելու, աշխատավորների միլիոնավոր զանգվածներին ոգեշնչելու, համախմբելու և կազմակերպելու ընդունակություն: Այդպես է եղել հեղափոխության, խաղաղ շինարարության, պատերազմական փորձությունների տարիներին, ետպատերազմյան դժվարին ժամանակաշրջանում: Մենք վստահ ենք, որ այդպես կլինի նաև առաջիկայում: **(Երկարատև ծափահարություններ):**

Մենք ակնկալում ենք բանվոր դասակարգի աջակցությունը, քանզի կուսակցու-

թյան քաղաքականությունը նրա քաղաքականությունն է: **(Երկարատև ծափահարու-**
**թյուններ):**

Մենք ակնկալում ենք գյուղացիության աջակցությունը, քանզի կուսակցության
քաղաքականությունը նրա քաղաքականությունն է: **(Երկարատև ծափահարություն-**
**ներ):**

Մենք ակնկալում ենք ժողովրդական մտավորականության աջակցությունը, քան-
զի կուսակցության քաղաքականությունը նրա քաղաքականությունն է: **(Երկարատև**
**ծափահարություններ):**

Մենք ակնկալում ենք կանանց, մեր երիտասարդների, վետերանների, բոլոր
սոցիալական խմբերի, սովետական հայրենիքի բոլոր ազգերի ու ազգությունների
աջակցությունը, քանզի կուսակցության քաղաքականությունը բովանդակ ժողովրդի
հույսերի, շահերի ու իղձերի արտահայտությունն է: **(Երկարատև ծափահարություն-**
**ներ):**

Մենք համոզված ենք, որ բոլոր գիտակից, ազնիվ մարդիկ, ամեն մի սովետա-
կան հայրենասեր կպաշտպանեն կուսակցության ստրատեգիական կուրսը, որը նպա-
տակամղված է այն բանին, որպեսզի ամրապնդվի մեր տերության հզորությունը,
որպեսզի մեր կյանքը դառնա ավելի լավ, ավելի անաղարտ, ավելի արդարացի:
**(Երկարատև ծափահարություններ):**

Այսպիսիք են հասարակական այն հզոր ուժերը, որ կանգնած են ՍՄԿԿ-ի թի-
կունքին: Նրանք գնում են կոմունիստների կուսակցության ետևից, հավատում նրան:
**(Բուռն ծափահարություններ):**

Պատմության անզուսպ հոսքը արդեն ուղղվել է դեպի երկրորդ և երրորդ հա-
զարամյակների սահմանագիծը: Ի՞նչ է լինելու այնտեղ՝ այդ սահմանագծի մյուս
կողմում: Մարգարեություն չանենք: Բայց գիտենք, որ այն պլանները, որ մենք այսօր
առաջադրում ենք, ոչ թե սովորական պլաններ են, այլ հանդուգն պլաններ, և որ
մեր առօրյա գործերը տոգորված են սոցիալիստական բարոյականության ու արդա-
րության պաթոսով: **(Երկարատև ծափահարություններ):** Այս տագնապալի դարում
մեր սոցիալական և, ես կասեի՝ կենսական ստրատեգիան նպատակամղված է նրան,
որ մարդիկ պահպանեն մոլորակը, երկնային ու տիեզերական տարածությունը, այն
յուրացնեն որպես **խաղաղ** քաղաքակրթության նորաբնակներ, կյանքը մաքրելով
միջուկային մղձավանջներից, արարման, և միայն արարման, նպատակների համար
մինչև վերջ ձերբազատելով Տիեզերքի մի այնպիսի եզակի բնակչի բոլոր լավագույն
հատկանիշները, ինչպիսին է Մարդը: **(Երկարատև ծափահարություններ):**

Սովետական ժողովուրդը կարող է վստահ լինել, որ կուսակցությունը խորապես
գիտակցում է իր պատասխանատվությունը երկրի ապագայի և երկրագնդի կայուն
խաղաղության համար, ծրագրված կուրսի ճշտության համար: Գլխավորը, որ հար-
կավոր է դրա պրակտիկ կենսագործման համար, համառ աշխատանքն է, կուսակ-
ցության ու ժողովրդի միասնությունը, բոլոր աշխատավորների համախմբված գոր-
ծողությունները: **(Բուռն ծափահարություններ):**

Այդպես և միայն այդպես մենք կկարողանանք կատարել մեծ Լենինի պատգա-
մը՝ եռանդով, կամքի միասնությամբ բարձրանալ ավելի վեր, ընթանալ առաջ: Պատ-
մությունը մեզ ուրիշ ճանապարհ չի տվել: Բայց դա, ընկերներ, ի՜նչ հիանալի
ճանապարհ է: **(Բուռն, երկարատև ծափահարություններ: Բոլորը ոտքի են կանգ-**
**նում):**

---

# ՍՄԿԿ XXVII ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ՈՐՈՇՈՒՄԸ

## ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԾՐԱԳՐԻ ՆՈՐ ԽՄԲԱԳՐՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

**Հաստատել Սովետական Միության կոմունիստական կուսակցության ծրագրի նոր խմբագրությունը:**

# ՍՄԿԿ XXVII ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ՈՐՈՇՈՒՄԸ

## ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԱՆՈՆԱԴՐՈՒԹՅԱՆ ՓՈՓՈԽՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՄԱՍԻՆ

**Հաստատել Սովետական Միության կոմունիստական կուսակցության կանոնադրության տեքստը՝ նրա մեջ մտցված փոփոխություններով:**

# ՍՄԿԿ XXVII ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ՈՐՈՇՈՒՄԸ

## ՍՄԿԿ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ՎԵՐՍՏՈՒԳԻՉ ՀԱՆՁՆԱԺՈՂՈՎԻ ԿԱՆՈՆԱԴՐՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

**1. Հաստատել ՍՄԿԿ Կենտրոնական վերստուգիչ հանձնաժողովի կանոնադրությունը:**

**2. ՍՄԿԿ Կենտկոմին հանձնարարել ՍՄԿԿ Կենտրոնական վերստուգիչ հանձնաժողովի հետ համատեղ այդ կանոնադրության հիման վրա մշակել հանրապետական, երկրամասային, մարզային, օկրուգային, քաղաքային ու շրջանային կուսակցական կազմակերպությունների վերստուգիչ հանձնաժողովների համապատասխան կանոնադրությունը:**

# ՍՄԿԿ XXVII ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ՈՐՈՇՈՒՄԸ

## ՍՄԿԿ XXVII ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻՆ ՀԱՍՑԵԱԳՐՎԱԾ ՆԱՄԱԿՆԵՐԻ ՈՒ ԲՈՂՈՔԱՐԿՈՒՄՆԵՐԻ ՄԱՍԻՆ

**1. Ի գիտություն ընդունել համագումարի քարտուղարության հաղորդումը ՍՄԿԿ XXVII համագումարի հասցեով ստացված նամակների ու բողոքարկումների քննության՝ իր կատարած աշխատանքի մասին:**

**2. ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեին հանձնարարել ավարտել ՍՄԿԿ XXVII համագումարին հասցեագրված նամակների ու բողոքարկումների քննության աշխատանքը, անհրաժեշտ միջոցներ ձեռնարկել իրագործելու քաղաքացիների դիմումների պարունակած խնդրանքները, առաջարկություններն ու դիտողությունները:**

# ԻՆՖՈՐՄԱՑԻՈՆ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆ

## ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՊԼԵՆՈՒՄԻ ՄԱՍԻՆ

**1986 թվականի մարտի 6-ին տեղի ունեցավ Սովետական Միության կոմունիստական կուսակցության XXVII համագումարի ընտրած ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի պլենումը:**

**Պլենումը ընկեր Մ. Ս. Գորբաչովին միաձայն ընտրեց ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար:**

**Պլենումն ընտրեց ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրո հետևյալ կազմով.**

**Քաղբյուրոյի անդամներ՝ ընկերներ Մ. Ս. Գորբաչով, Հ. Ա. Ալիև, Ա. Ա. Գրոմիկո, Լ. Ն. Զայկով, Ե. Կ. Լիգաչով, Դ. Ա. Կունաև, Է. Ա. Շևարդնաձե, Վ. Վ. Շչերբիցկի, Վ. Մ. Չեբրիկով, Ն. Ի. Ռիժկով, Մ. Ս. Սոլոմենցև, Վ. Ի. Վորոտնիկով:**

**Քաղբյուրոյի անդամության թեկնածուներ՝ ընկերներ Պ. Ն. Դեմիչև, Վ. Ի. Դոլգիխ, Բ. Ն. Ելցին, Ն. Ն. Սլյունկով, Յու. Ֆ. Սոլովյով, Ս. Լ. Սոկոլով, Ն. Վ. Տալիզին:**

**ՍՄԿԿ Կենտկոմի քարտուղարներ ընտրվեցին ընկեր Մ. Ս. Գորբաչովը՝ գլխավոր քարտուղար, ընկերներ Ա. Պ. Բիրյուկովան, Ա. Ֆ. Դոբրինինը, Վ. Ի. Դոլգիխը, Լ. Ն. Զայկովը, Մ. Վ. Զիմյանինը, Ե. Կ. Լիգաչովը, Վ. Ա. Մեդվեդևը, Ա. Ն. Յակովլևը, Վ. Պ. Նիկոնովը, Գ. Պ. Ռազումովսկին:**

**Պլենումը ՍՄԿԿ Կենտկոմին առընթեր կուսակցական վերահսկողության կոմիտեի նախագահ հաստատեց ընկեր Մ. Ս. Սոլոմենցևին:**



# Ընկեր Մ. Ս. ԳՈՐԲԱՉՈՎԻ ճառը համագումարի փակման ժամանակ

Թանկագին ընկերնե՛ր:

XXVII համագումարը ավարտում է իր աշխատանքը:

Նրա նշանակության օբյեկտիվ գնահատականը տալը պատմության գործն է: Բայց արդեն այսօր կարելի է ասել. համագումարն անցավ կուսակցական սկզբունքայնության ու միասնության, պահանջկոտության և բոլշևիկյան ճշմարտության, թերությունների և բացթողումների բացեիբաց ի հայտ բերման, մեր հասարակության զարգացման ներքին ու արտաքին պայմանների խոր վերլուծության մթնոլորտում: Այն բարոյական, հոգևոր բարձր տոն հաղորդեց կուսակցության գործունեությանը, ամբողջ երկրի կյանքին: **(Ծափահարություններ):**

Պատգամավորները, այս ամբիոն բարձրանալով, հարցերն առաջադրում էին անկեղծորեն, սրությամբ բացահայտելով այն, ինչ խանգարում է մեր ընդհանուր գործին, ինչը ձգում է ետ: Քննադատական քիչ դիտողություններ չարվեցին կուսակցության բոլոր օղակների, թե՛ կենտրոնական և թե տեղական պետական ու տնտեսական կազմակերպությունների աշխատանքի մասին: Ըստ էության, քննադատական վերլուծությունից դուրս չմնաց մեր կյանքի ոչ մի ոլորտ: Այդ ամենը, ընկերնե՛ր, կուսակցական լավագույն ավանդույթների ոգով է, բոլշևիզմի ոգով: **(Ծափահարություններ):**

Ավելի քան վեց տասնամյակ առաջ XI համագումարում եզրափակելով ՌԿ(բ)Կ Կենտկոմի քաղաքական հաշվետվության շուրջը ծավալված դիսկուսիան, Վ. Ի. Լենինը սկզբունքային կարևորության միտք է հայտնել. «Մինչև այժմ կործանված բոլոր հեղափոխական կուսակցությունները կործանվել են այն բանից, որ մեծամտել են և չեն կարողացել տեսնել, թե ինչում է իրենց ուժը և վախեցել են խոսել իրենց թուլությունների մասին: Իսկ մենք չենք կործանվի, որովհետև չենք վախենում խոսել մեր թուլությունների մասին, և կսովորենք հաղթահարել թուլությունները»: **(Երկարատև ծափահարություններ):**

Հենց այդպես լենինաբար էլ մենք գործում էինք մեր համագումարում: Հենց այդպես էլ մենք կգործենք այսուհետև: **(Ծափահարություններ):**

Համագումարը պատասխանեց կուսակցության առջև, հասարակության առջև կյանքի դրած արմատական հարցերին, յուրաքանչյուր կոմունիստի, յուրաքանչյուր սովետական մարդու զինեց առաջիկա խնդիրների պարզ պատկերացմամբ: Նա ցույց տվեց, թե մենք որքան ճիշտ վարվեցինք, ապրիլյան պլենումում առաջ քաշելով սոցիալ-տնտեսական արագացման կոնցեպցիան: Արագացման գաղափարով էր տոգորված մեր ամբողջ նախահամագումարյան գործունեությունը, այն գտնվում էր համագումարի ուշադրության կենտրոնում, իր մարմնավորումն ստացավ Կենտկոմի Քաղաքական զեկուցման, կուսակցության ծրագրի նոր խմբագրության մեջ և նրա կանոնադրության փոփոխություններում, երկրի տնտեսական ու սոցիալական զարգացման տասներկուերորդ հնգամյակի և մինչև 2000 թվականի հիմնական ուղղություններում: Այդ փաստաթղթերը լիովին արժանացան համագումարի պատգամավորների պաշտպանությանն ու հավանությանը: **(Ծափահարություններ):**

Բայց, ցավոք, միջազգային հանրության մեջ դեռևս չեն վերացել առանձնա-
հատուկ, միայն իրենց հարմարեցված անվտանգության հավակնորդները: Այս են
վկայում Վաշինգտոնի մտայնությունները: Այնտեղ առաջվա պես հարգի են ուժի
դիմելու կոչերը, որը շարունակում են դիտել որպես համաշխարհային քաղաքակա-
նության ամենահամոզիչ փաստարկը: Ըստ երևույթին, ոմանք պարզապես վախենում
են սովետա-ամերիկյան հարաբերությունների, ամբողջությամբ վերցված միջազ-
գային իրադրության լուրջ, տևական ջերմացման երևան եկած հնարավորությունից:

Այսպիսի իրավիճակի մենք բախվում ենք ոչ առաջին անգամ: Ռազմամոլական,
ագրեսիվ ուժերը, իհարկե, այժմ էլ կնախընտրեին սառեցնել, հավերժացնել առճա-
կատումը: Իսկ ի՞նչ անենք մենք, ընկերներ: Դուռը շրխկացնե՞նք: Բացառված չէ,
որ մեզ հենց դրան են դրդում: Բայց մենք հիանալի ենք գիտակցում մեր պատաս-
խանատվությունը երկրի բախտի համար, աշխարհի բախտի համար: Ուստի և մտա-
դիր չենք ամեն ինչում համաձայնվել նրանց հետ, ովքեր կուզենային մարդկությանն
ստիպել համակերպվելու միջուկային ապառնալիքին, սպառազինությունների մրցա-
վազքին: (Ծափահարություններ):

Սովետական արտաքին քաղաքականությունը կողմնորոշված է փոխըմբռնման
որոնումներին, երկխոսությանը, խաղաղ գոյակցության հաստատմանը որպես պե-
տությունների հարաբերությունների ունիվերսալ նորմ: Մենք ունենք թե՛ դրան
հասնելու միջոցների պարզ պատկերացում և թե աշխատանքի կոնկրետ ծրագիր
հանուն խաղաղության պահպանման ու ամրապնդման: (Ծափահարություններ):

Սովետական Միությունը համաշխարհային ասպարեզում գործում է և կգործի
լրջորեն և անկեղծորեն, ակտիվորեն և ազնվորեն: Մենք մտադիր ենք հաստատա-
կամորեն, նախաձեռնողաբար հասնել միջուկային զենքի վերացման, սպառազինու-
թյունների մրցավազքի արմատական սահմանափակման, հուսալի, բոլոր պետու-
թյունների համար միատեսակ միջազգային անվտանգության կառուցման: Խաղա-
ղությունը պահպանելու, սպառազինությունների մրցավազքը սանձահարելու պատ-
վիրանը ուժգին և կրքոտ կերպով հնչեց մեր համագումարի պատգամավորների
ելույթներում: Կուսակցությունն այդ պատվիրանին կհետևի անշեղորեն: (Երկարատև
ծափահարություններ):

Մենք կոչ ենք անում սոցիալական ուրիշ սիստեմի պատկանող պետություն-
ների ղեկավարներին պատասխանատվությամբ մոտենալ համաշխարհային քաղա-
քականության այսօրվա հանգուցային պրոբլեմին՝ պատերազմի և խաղաղության
պրոբլեմին:

ՍՄԿԿ-ի և սովետական պետության ղեկավարությունը ամեն ինչ կանի, որպես-
զի մեր ժողովրդի համար հնարավորություն ապահովի աշխատելու կայուն խաղա-
ղության և ազատության պայմաններում: (Երկարատև ծափահարություններ): Մեր
կուսակցությունը, սովետների երկիրը, ինչպես կրկին հաստատեց համագումարը,
արտասահմանում ունեն շատ դաշնակիցներ, կողմնակիցներ, խաղաղության, ազա-
տության, մարդկության առաջադիմության պայքարի պարտնյորներ:

Մենք անկեղծորեն ուրախ ենք՝ այստեղ տեսնելով սոցիալիստական պետություն-
ների ղեկավարներին: Թույլ տվեք համագումարի անունից այդ երկրների կոմու-
նիստական կուսակցություններին և ժողովուրդներին սրտագին երախտագիտություն
հայտնել ՍՄԿԿ-ի հետ, Սովետական Միության հետ իրենց համերաշխության հա-
մար: (Երկարատև ծափահարություններ):

Սոցիալիստական պետությունների մի շարք եղբայրական կուսակցությունների
համար այս տարին նույնպես համագումարների տարի է: Մեծապես նման են այն
պրոբլեմներն ու խնդիրները, որ կառավարող կոմունիստական կուսակցությունների
առջև դնում է պատմության բուն զարգացումը: Եվ ի պատասխան դրանց, յուրա-
քանչյուրն իր ավանդն է ներդնում համաշխարհային սոցիալիզմի համամիասնական
փորձի ընդհանուր գանձարանում: Հաջողություններ ձեզ, թանկագին բարեկամներ:
(Երկարատև ծափահարություններ):

ՍՄԿԿ-ն շնորհակալ է իր հացեհին կոմունիստական, հեղափոխական-դեմոկրա-
տական, սոցիալիստական և սոցիալ-դեմոկրատական կուսակցությունների, դեմոկրա-



տական, ազատագրական, հակապատերազմական ուժերի և շարժումների ներկա-
յացուցիչների սաստ ջերմ խոսքերի համար: Մենք բարձր ենք գնահատում համա-
գումարի առաջ քաշած՝ միջազգային անվտանգության համապարփակ համակարգ
ստեղծելու գաղափարի, մինչև ընթացիկ հարյուրամյակի վերջը միջուկային զենքը
վերացնելու պլանի ըմբռնումն ու պաշտպանությունը նրանց կողմից: ՍՄԿԿ-ն հա-
մոզված է, որ դրանք բխում են բոլոր ժողովուրդների, բոլոր երկրների, համայն
մարդկության իսկական շահերից: (Երկարատև ծափահարություններ):

Ընկերնե՛ր: Մեր համագումարը ցույց տվեց, որ հասարակական զարգացման
ներկա՝ բեկումնային փուլում, լենինյան կուսակցությունը գտնվում է պատմական
խնդիրների բարձրության վրա: (Ծափահարություններ): Այս ամբիոնից ուզում եմ
մեր ամբողջ կուսակցությունը ներկայացնող պատգամավորների անունից ասել.
մենք՝ կոմունիստներս, թանկ ենք գնահատում բանվոր դասակարգի, գյուղացիու-
թյան, մտավորականության, բոլոր սովետական մարդկանց վստահությունը: (Երկա-
րատև ծափահարություններ): Մեզ համար ժողովրդի, հայրենիքի, սոցիալիզմի և
խաղաղության շահերը վեր են ամեն ինչից: (Երկարատև ծափահարություններ):
Մենք ուժ ու եռանդ չենք խնայի, որպեսզի կենսագործենք Սովետական Միության
կոմունիստական կուսակցության XXVII համագումարի որոշումները: (Բուռն, եր-
կարատև ծափահարություններ: Բոլորը ոտքի են կանգնում):

Մենք շատ անելիքներ ունենք գաղափարախոսական ու քաղդաստիարակչական աշխատանքի հետագա կատարելագործման ուղղությամբ ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թվականի հունիսյան պլենումի որոշումների կատարման վերաբերյալ մեր հաշվետվության առթիվ ՍՄԿԿ Կենտկոմի ընդունած որոշման մեջ նշված թերությունների վերացման ուղղությամբ: Սա առավել ևս կարևոր է, որովհետև այդ աշխատանքը կյանքի հետ առայժմ այնպես սերտորեն չի շաղկապված, ինչպես այսօր պահանջվում է: Կուսակցական շատ կոմիտեների կողմից այդ աշխատանքը առաջվա պես կատարվում է ընդհանրապես և նպատակամղված չէ կոնկրետ խնդիրների լուծմանը, չի հասնում կոնկրետ մարդուն: Մարդկանց հետ, կադրերի հետ չի կատարվում այնպիսի համապատասխան անհատական աշխատանք, որ նրանք ակտիվորեն ընկալեն սկզբունքորեն նոր մոտեցումները և գործեն մեր հասարակության զարգացումը գիտատեխնիկական առաջադիմության հիման վրա արագացնելու ուղղությամբ:

Բարելավման կարիք ունի բարոյական դաստիարակությունը, հետագա ուժեղացման՝ բյուրոկրատիզմի դեմ, պաշտոնական դիրքի չարաշահումների դեմ, ժողովրդական բարիքի նկատմամբ ոտնձգության, պորտաբուծության, սպառողական հոգեբանության, գռփողության և մակաբուծության դեմ մղվող պայքարը:

Մեզ մոտ վերակառուցման պրոցեսը դանդաղ է ընթանում նաև այն պատճառով, որ դեռևս կուսակցական շատ կոմիտեների և կազմակերպությունների, ինչպես ցույց տվեց հաշվետու-ընտրական կամպանիան, չեն բավականացնում քաղաքական կամքն ու արությունը, թերությունները գնահատելու կուսակցական սկզբունքայնությունը, հաստատակամությունն ու համառությունը՝ դժվարությունները հաղթահարելիս, համարձակությունն ու հետևողականությունը՝ առաջադրված նպատակներն իրագործելիս:

Մենք կոնկրետ միջոցներ ենք մշակել թերությունները վերացնելու, աշխատանքի ոճն ու մեթոդները նորացնելու ուղղությամբ: Մեր խնդիրը մենք համարում ենք այն, որ կարողանանք ոչ միայն լավ նպատակներ նախատեսել, այլև, որ, գլխավորն է, կոմունիստներին, բոլոր աշխատավորներին մոբիլիզացնել դրանք ամբողջովին իրականացնելու համար, վճռականորեն ուժեղացնել էկոնոմիկայի, նրա ինտենսիվացման պրոցեսի կուսակցական ղեկավարումը, ընդմին հատուկ ուշադրություն նվիրելով թողարկվող արտադրանքի որակի արմատական բարելավմանը և աշխատանքի արտադրողականության բարձրացմանը:

Մենք ՍՄԿԿ Կենտկոմի Քաղաքական զեկուցման պահանջների ոգով կկատարելագործենք կոմունիստական դաստիարակության ամբողջ գործը, ավելի ակտիվորեն կվերապատրաստենք կադրերին, կօգնենք նրանց վերակառուցվելու, ամենուրեք կամրապնդենք կազմակերպվածությունը, կարգուկանոնն ու կարգապահությունը, կուժեղացնենք պահանջկոտությունն ու վերահսկողությունը, կբարձրացնենք կուսակցական կազմակերպությունների դերն ու պատասխանատվությունը ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թվականի ապրիլյան պլենումի գծի, ներկա համագումարի որոշումների իրականացման ասպարեզում, կձգտենք հասնել այն բանին, որ նրանցից յուրաքանչյուրը լինի ակտիվ, մարտական, ապրի պրպտումների մթնոլորտում:

Ընկերնե՛ր: Զարգացման տեմպերն արագացնելու նոր պայմաններում կատարվող աշխատանքի մեջ կուսակցական կազմակերպությունները հանդիպում են նաև որոշակի դժվարությունների: Դրանք տարբեր բնույթի են: Դրանցից են և՛ անցյալ թերությունների բեռը, և՛ առանձին մարմինների անտարբերությունը, անբավարար օգնությունը, և՛ տնտեսական մեխանիզմի պլանավորման անկատարությունը:

Բոլոր մինիստրություններն ու գերատեսչությունները չէ, որ ինչպես հարկն է օգնում են աշխատավորական կոլեկտիվներին լուծելու եղած պրոբլեմները: Գիտատեխնիկական առաջադիմության արագացման, արտադրության վերակառուցման և տեխնիկական վերազինման նպատակով նրանցից շատերի կազմած միջոցառումները դեռևս չեն ամրապնդվում նյութատեխնիկական և ֆինանսական անհրաժեշտ ռեսուրսներով:

Այսպես, հանրապետության տարածքում գտնվող հաստոցաշինական ձեռնարկությունների հաստոցային հավաքակազմի նորացումը ՍՍՀՄ հաստոցաշինական և գործիքաշինական արդյունաբերության մինիստրության կողմից 1986 թվականի համար ավելի ցածր է նախատեսված, քան անցյալ տարի, իսկ ՍՍՀՄ էլեկտրատեխնիկական արդյունաբերության մինիստրության ձեռնարկություններում՝ գրեթե 1985 թվականի մակարդակով:



Ավտոմոբիլային արդյունաբերության մինիստրության կողմից անհրաժեշտ կապիտալ ներդրումների ոչ լրիվ հատկացման պատճառով չի կատարվել ավտոբեռնիչների թողարկման կարողություններ ստեղծելու՝ կուսակցության XXVI համագումարի նախատեսած առաջադրանքը: Մինիստրությունը պատշաճ ուշադրություն չի դարձնում նաև արտադրության սոցիալական կողմի վրա: Արդեն այժմ լուրջ մտահոգություն են պատճառում թողարկվող բենզինաշարժիչներով ավտոբեռնիչների տեխնիկատնտեսական որոշ բնութագրեր, որոնց էկոլոգիական անվտանգության աստիճանը նեղացնում է դրանց կիրառման հնարավորությունները: Դիզելային, դիզելաէլեկտրական ավտոբեռնիչների և կաբելային էլեկտրասնուցմամբ բեռնիչների մշակման ու թողարկման մեր բազմակի առաջարկությունները մնում են առանց պատշաճ քննարկման ու լուծման:

Հանրապետությունում գյուղատնտեսական արտադրության հետագա ինտենսիվացումը կախված է գլխավորապես հողերի ոռոգումից: Սակայն Արարատյան դաշտի հողերի մելիորացման, Թալինի և ոռոգման մյուս համակարգերի կառուցման աշխատանքների տեմպերը անբավարար են: Գործի շահերը պահանջում են, որ ՍՍՀՄ պետագրոարդը և ՍՍՀՄ մելիորացիայի ու ջրատնտեսության մինիստրությունը միջոցներ ձեռնարկեն դրանք արագացնելու համար:

Ընկերնե՛ր: Մենք լիովին պաշտպանում ենք տնտեսական կառավարման և պլանավորման բարելավման արմատական ռեֆորմի անհրաժեշտության մասին Միխայիլ Սերգեևիչ Գորբաչովի զեկուցման բովանդակած դրույթները:

Կուսակցական կազմակերպությունները աշխատանք են տանում տնտեսավարման ստերեոտիպները արմատախիլ անելու, կադրերին նորովի դաստիարակելու համար, հաշվի առնելով ինտենսիվ զարգացման գործոնները: Սակայն տնտեսական գործունեությունից հնացած ստերեոտիպները լիովին դուրս մղելու համար կադրերի գիտակցության մեջ միայն փոփոխությունը քիչ է: Նրանց տնտեսական վարքագիծը խստիվ ճշգրտվում է արտադրության օբյեկտիվ իրողություններով, այն գնահատման ցուցանիշներով, նորմատիվներով, կանոնադրություններով, հրահանգներով, որոնք ռեալ գործում են: Այդ պատճառով դրանց ոչ թե մասնակի, այլ կոմպլեքսային վերանայումը, առավել խոր շերտերի, արտադրական և տնտեսական գործունեությունը կարգավորող հիմունքների փոփոխումը, տնտեսավարման նոր մեթոդների հիմքում համապատասխան գնահատման ցուցանիշների, նորմատիվաիրավական բազայի ստեղծումը հների փոխարեն, որոնք կազմվել էին տնտեսական այնպիսի իրադրության մեջ, երբ գերակշռում էին տնտեսավարման էքստենսիվ մեթոդները, մեր կարծիքով, հետաձգում չեն հանդուրժում:

Ընկերնե՛ր: Մեր կուսակցության համագումարը կսահմանի սովետական հասարակության զարգացման գլխավոր բնագծերը մինչև այս հարյուրամյակի վերջը, այն դարի, որի սկզբին կատարվեց Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը: Նրա դրոշով, կուսակցության ղեկավարությամբ կենսագործելով մեծ Լենինի պատգամներն ու գաղափարները, սովետական ժողովուրդը համակողմանի առաջադիմության աննախադեպ բարձունքների է հասել:

Սոցիալիստական ազգերի և ազգությունների հետագա բարգավաճումն ու մերձեցումը մեր կուսակցության ծրագրային նպատակն է: Այդ մասին խորն ու տարողունակ ասվեց նաև ՍՄԿԿ Կենտկոմի Քաղաքական զեկուցման մեջ: Մեր սոցիալիստական հայրենիքի յուրաքանչյուր ժողովուրդ պրակտիկայում ավելի ու ավելի է համոզվում կուսակցության գլխավոր կուրսի, նրա իմաստուն ազգային քաղաքականության ճշմարտացիության ու արդյունավետության մեջ, այն բանի մեջ, թե առաջադիմության ու բարգավաճման ի՜նչ հզոր ու ներգործուն աղբյուր են ժողովուրդների ինտերնացիոնալ բարեկամությունն ու եղբայրությունը, արտադրական կոոպերացումը, հանրապետությունների համագործակցությունն ու փոխօգնությունը, նրանց համատեղ աշխատանքը, որոնք բազմապատկում են նրանցից յուրաքանչյուրի, մեր ամբողջ հասարակության ստեղծարար հնարավորությունները:

Ռուս մեծ ժողովրդի, մեր հայրենիքի եղբայրական բոլոր ժողովուրդների հետ բարեկամությունը եղել է, կա և մշտապես կլինի սրբություն հայ ժողովրդի համար, նրա կյանքի հզոր շարժիչ ուժը, նրա բոլոր հաջողությունների երաշխիքը: **(Ծափահարություններ):** Եվ այդ բարեկամության, ժողովուրդների ինտերնացիոնալ եղբայրության հետագա ամրապնդումը, երկրի ժողովրդատնտեսական միասնական համալիրի զարգացման գործում հանրապետության ավանդի մեծացումը Հայաստանի կուսակցական կազմակերպությունը համարում է իր կենսական գործն ու մեծագույն պարտքը:

Ընկերնե՛ր: Մեր համագումարում հնչում է լենինյան կուսակցության թարմաշունչ ու հպարտ խոսքը, որը նոր մեծագործությունների է կոչում: ՍՄԿԿ Կենտկոմի Քաղաքական զեկուցումը, համագումարի որոշումները կոմունիստներին, սովետական բոլոր մարդկանց կզինեն կուսակցության վսեմ նպատակների հստակ ըմբռնումով և դրանց հասնելու միջոցներով, նրանց կմղեն ակտիվ ու լայն, նախաձեռնող ու ստեղծագործ, անձնվեր ու համախմբված գործունեության:

Թույլ տվեք համագումարին հավաստիացնել, որ Հայաստանի հանրապետական կուսակցական կազմակերպությունը համառորեն կաշխատի, որպեսզի կուսակցության խոսքը վերածի գործի, ամեն ջանք կգործադրի կոմունիստներին, բոլոր աշխատավորներին մոբիլիզացնելու կուսակցության XXVII համագումարի որոշումների կատարման, կոմունիստական արարման նոր, հոյակապ խնդիրների իրականացման համար: **(Ծափահարություններ):**

---

Հանձնված է շարվածքի՝ 27.02.86 թ.: Ստորագրված է տպագրության՝ 21.03.86 թ.: ՎՖ 05370: Ֆորմատ՝ 70×108 1/16: Տպագրություն՝ բարձր, 8,4 պայմանական տպ. մամ., 9,4 հրատ. մամ.: Տպաքանակը՝ 18.232: Պատվեր՝ 404:

ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Երևան—23, Օրջոնիկիձեի պողոտա № 2: